ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

2

ՓԵՏՐՎԱՐ

ԵՐԵՎԱՆ • 1970

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2

ՓԵՏՐՎԱՐ 1970

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


Բովանդակություն

### Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



### ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ՄԵՐ ԿԵՆՍԱԿԱՆ ՀԱՐՑԸ



### ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 50-ԱՄՅԱԿԸ



### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ



### ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ



### ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՐԵՆ

# Содержание










# ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՀԱՍԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ


Լ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ


*Շահագործող հասարակարգերում իշխանությունը երբեք ժողովրդին չի պատկանել, սակայն կառավարողները և նրանց գաղափարախոսները չեն դադարել հանդես գալ դեմոկրատիայի, ժողովրդի անունից։*

*Դա առանձնապես դրսևորվեց բուրժուազիայի իշխանության գլուխն անցնելու ժամանակաշրջանում։ Նա պրոպագանդիստական ողջ ապարատը գործի դրեց ապացուցելու, որ բուրժուական դեմոկրատիան հավասարապես տարածվում է հասարակության բոլոր անդամների վրա, արտահայտում ժողովրդի շահերը։*

*Վ. Ի. Լենինը, քննադատելով դեմոկրատիայի բուրժուական ըմբռնումը, բացահայտեց վերջինիս հակագիտական էությունը։ Նա ցույց տվեց, որ դեմոկրատիան, լինելով դասակարգային իշխանության քաղաքական ձև, ժամանակի ընթացքում փոփոխվել է, քանի որ մի տիրապետող դասակարգ հերթափոխել է մյուսին։*

*Քաղաքական թատերաբեմ ելնելով, բուրժուազիան ստեղծեց իր օրենսդրությունը, պառլամենտը, հռչակեց «համընդհանուր ընտրական իրավունք» և այլն։ Բուրժուական դեմոկրատիան համապատասխանում էր դասական կապիտալիզմի ազատ մրցակցությանը, որն աշխատավորին ազատեց ֆեոդալական կախվածությունից և տվեց իրավունքների նվազագույնը՝ շուկայում հանդես գալու որպես ազատ բանվորական ուժ։ Կապիտալիզմի զարգացման իմպերիալիստական փուլում տնտեսական ու քաղաքական կյանքում տեղի են ունենում էական փոփոխություններ։ Այդ շրջանում ազատ մրցակցության փոխարեն էկոնոմիկայում հաստատվում է մոնոպոլիաների նեղ խմբի իշխանությունը։ Նրանց ձեռքում է կենտրոնանում նաև քաղաքական իշխանությունը։ Մոնոպոլիստական կապիտալն արդեն չէր կարող հաշտվել պառլամենտում տարբեր օպոզիցիաների, աշխատավորների քաղաքական կուսակցությունների,*

արհմիությունների առկայության հետ։ Դրա համար նա ձգտում է վերացնել կամ սահմանափակել նրանց գործունեության ոլորտը։

Իմպերիալիզմի շրջանում մոնոպոլիստական կապիտալը հատկապես հանդես է գալիս ֆաշիզմի տիրապետության ժամանակաշրջանում։ Ֆաշիզմը, լինելով իմպերիալիզմի ռեակցիոն ուժերի դիկտատուրան, բացասում է դեմոկրատիան։ Գերմանիայում, Իտալիայում, Ճապոնիայում ֆաշիզմի տիրապետության օրոք անդամալույծ էին արված դեմոկրատական հաստատությունները։ Չնայած երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիզմը խայտառակ պարտություն կրեց, սակայն, չանհետացավ իմպերիալիստական աշխարհի քաղաքական թատերաբեմից։ Ավելին, վերջին տասնամյակում ֆաշիստական ռեժիմը մոլեգնում է Իսպանիայում, Պորտուգալիայում, Հունաստանում։ Արևմտյան Գերմանիայի քաղաքական մթնոլորտը դեռ չի ախտահանված ֆաշիստական վարակից։

Իմպերիալիստական երկրներում իրադարձությունների զարգացումն ամբողջությամբ հաստատում է Լենինի դրույթն այն մասին, որ բոլոր ուղղություններով բուրժուական դեմոկրատիայի վերացումը և ռեակցիայի ուժեղացումը կապիտալիզմի համընդհանուր ճգնաժամի գլխավոր գծերից է։

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի միջազգային խորհրդակցությունում ընկ. Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ ժողովուրդների համար հսկայական վտանգ է նաև իմպերիալիզմի հատուկ միտումը՝ վերացնել դեմոկրատական ազատությունները, ֆաշիզացնել հասարակական-քաղաքական կյանքը։

Այնտեղ, որտեղ շահագործողներն ի վիճակի չեն ապահովել իրենց հարկավոր «կարգ»՝ բուրժուական դեմոկրատիայի շրջանակներում, իշխանությունը հանձնում են ֆաշիստական տիպի բացահայտ տեռորիստական վարչարարների ձեռքը (տե՛ս Լ. Ի. Բրեժնև, Հանուն կոմունիստների համախմբվածության ամրապնդման, հանուն հակաիմպերիալիստական պայքարի նոր վերելքի, Երևան, 1969, էջ 10)։

Կապիտալիստական երկրներում բուրժուական դեմոկրատիայի վերացման, հասարակական-քաղաքական կյանքի ֆաշիզացման պրոցեսը տեղի է ունենում տարբեր ձևերով ու մեթոդներով։ Ընտրական սիստեմում մտցվում են սահմանափակումներ, որպեսզի ներկայացուցչական օրգանների ընտրություններում նվազեցվեն մասսաների հնարավորությունները, սահմանափակվում է պառլամենտի դերը և այլն։ Կապիտալիզմի ջատագովները ճգնում են տեսականորեն հիմնավորել իշխանությունը մոնոպոլիստների ձեռքում կենտրոնացնելու և բյուրոկրատիզմի ուժեղացման անհրաժեշտությունը։ Նրանք գրում են, թե, իբր, ժամանակակից բուրժուական հասարակությունը «շահագրգռված անձանց» կամ «համագործակցող խմբերի» հանրություն է, որ այդտեղ իշխանությունը պատկանում է ինչպես կապիտալիստներին, այնպես էլ աշխատավորներին։

«Եթե չծաղրենք առողջ դատողությունը և պատմությունը,— գրել է Լենինը,— ապա պարզ է, որ չի կարելի խոսել «զուտ դեմոկրատիայի» մասին, քանի գոյություն ունեն տարբեր դասակարգեր, այլ կարելի է խոսել միայն դասակարգային դեմոկրատիայի մասին» (Երկեր, հ. 28, էջ 302)։ Անտագոնիստական աշխարհում վերդասակարգային դեմոկրատիա չի կարող լինել։ Բուրժուական դեմոկրատիան արտահայտում է տիրող դասակարգի դիկտատուրան։



Դասակարգային պայքարի դիալեկտիկան նշանակալիորեն բարդ է, քան այդ կարծում են ձախ դոկտրինյորները։ Այդ դիալեկտիկան գիտականորեն արտացոլված է բուրժուական դեմոկրատիայի լենինյան գնահատականի մեջ և նրա այն հանճարեղ դրույթում, որ պայքարը դեմոկրատիայի համար, դա հանուն սոցիալիզմի պայքարի բաղկացուցիչ մասն է։ «Ինչպես անհնար է հաղթական սոցիալիզմ, գրել է Լենինը, որը չի իրագործում լիակատար դեմոկրատիա, նույնպես էլ չի կարող բուրժուազիայի հաղթելու նախապատրաստվել այն պրոլետարիատը, որը համակողմանի, հետևողական և հեղափոխական պայքար չի մղի հանուն դեմոկրատիայի» (Երկեր, հ. 22, էջ 184)։

Պարզ է, որ աշխատավոր զանգվածները կապիտալիստական երկրներում չեն կարող բավարարվել միայն որոշ դեմոկրատական իրավունքների պահպանմամբ և ընդարձակմամբ։ Նրանք հանդես են գալիս դեմոկրատիայի վերականգնման համար, պաշտպանում են «դեմոկրատական կառավարության» ստեղծման լոզունգը։

Սոցիալիստական հեղափոխությունից անմիջապես հետո դեմոկրատիան չի դառնում «լրիվ» և չի կարող հավասարապես տարածվել հասարակության բոլոր անդամների վրա, ինչպես պատկերացնում են ռևիզիոնիստները։

Հայտնի է, որ նման տեսություն էին քարոզում լասալականները, որոնք առաջ քաշեցին ազատ պետության, համընդհանուր դեմոկրատիայի օպորտունիստական դրույթը։ Մարքսը քննադատեց այն և ցույց տվեց, որ պրոլետարիատն անցման ժամանակաշրջանում կհաստատի իր դիկտատուրան, որը կհանդիսանա դեմոկրատիա ոչ թե բոլորի, այլ աշխատավոր զանգվածների համար։ Մարքսիզմի այս գիտական հետևությունը օպորտունիստները վերանայեցին և հանդես եկան պրոլետարական դիկտատուրայի պատմական անհրաժեշտության դեմ։

Հավատարիմ իրենց նախորդներին, ժամանակակից ռևիզիոնիստները պրոլետարիատի դիկտատուրան հակադրում են դեմոկրատիային, հանգեցնում մերկ ճնշման, անտեսում բուրժուական և պրոլետարական դիկտատուրայի արմատական տարբերությունը։ Բացահայտելով ռևիզիոնիստական տեսությունների արատները, Լենինը գրել է. «Հարցի նման արտադասակարգային կամ վերդասակարգային, իբր թե համաժողովրդական դրումը ուղղակի ծաղրանք է սոցիալիզմի հիմնական ուսմունքի վերաբերմամբ, այսինքն՝ դասակարգային պայքարի ուսմունքի վերաբերմամբ, որ խոսքով ընդունում, իսկ գործով մոռանում են բուրժուազիայի կողմն անցած սոցիալիստները» (Երկեր, հ. 28, էջ 594)։

Լենինը աշխատավոր զանգվածներին սովորեցնում էր մեծամասնության դիկտատուրան տարբերել մի խումբ շահագործողների դիկտատուրայից։ «...Կապիտալիստական դեմոկրատիայի առաջընթաց զարգացումը պարզ, ուղիղ ու հարթ չի ընթանում «դեպի մի ավելի ու ավելի լայն դեմոկրատիա», ինչպես գործը պատկերացնում են լիբերալ պրոֆեսորներն ու մանրբուրժուական օպորտունիստները։ Ո՛չ։ Առաջընթաց զարգացումը, այսինքն՝ զարգացումը դեպի կոմունիզմ, ընթանում է պրոլետարիատի դիկտատուրայի միջոցով, և այլ կերպ ընթանալ չի կարող, որովհետև շահագործող կապիտալիստների դիմադրությունը խորտակող մի այլ ուժ չկա և այն ուրիշ կերպ խորտակել չի կարելի։

Իսկ պրոլետարիատի դիկտատուրան, այսինքն՝ ճնշվածների ավանգարդի

կազմակերպությունն իբրև տիրող դասակարգ՝ ճնշողներին ճնշելու համար, չի կարող պարզապես միմիայն դեմոկրատիայի ընդարձակում առաջացնել։ Դեմոկրատիզմի հսկայական ընդլայնման հետ միասին, որն առաջին անգամ դեմոկրատիզմ է դառնում չքավորների համար, դեմոկրատիզմ՝ ժողովրդի համար, և ոչ թե դեմոկրատիզմ հարուստների համար,— պրոլետարիատի դիկտատուրան ազատությունից մի շարք բացառումներ է անում ճնշողների, շահագործողների, կապիտալիստների վերաբերմամբ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 600)։

Պատմական փորձը ցույց տվեց, որ դեմոկրատական իրավունքների և ազատությունների հարցի նման լուծումը կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանում ընդհանուր օրինաչափություն է։ Իհարկե, յուրաքանչյուր երկրում, որը կանգնած է սոցիալիստական զարգացման ուղու վրա, այդ օրինաչափությունն ի հայտ է գալիս յուրահատուկ ձևով։ Այսպես, եվրոպական սոցիալիստական մի շարք երկրներում բուրժուազիան հիմնականում զրկված չէր համընդհանուր ընտրական իրավունքից։ Սակայն դեմոկրատիան ամենից առաջ տարածվում է բանվոր դասակարգի, աշխատավոր զանգվածների վրա։ Այստեղ միջոցներ են ձեռնարկվում, որպեսզի դեմոկրատական նվաճումները չօգտագործվեն աշխատավոր մասսաների շահերի և սոցիալիզմի դեմ։

Բնութագրելով Չեխոսլովակիայում տեղի ունեցած իրադրությունների պատճառները, ընկ. Գ. Գուսակը ՉԿԿ-ի համապետական ակտիվի ժողովում ասաց. «...Երկրի քաղաքական կյանքում բթանում և անհետանում էր դասակարգային մոտեցումը քաղաքական-տնտեսական և հասարակական պրոբլեմների լուծման նկատմամբ։ Անտեսվում էին այն տարրական ճշմարտությունները, որ աշխարհը բաժանված է դասակարգերի, որ մեր արևմտյան սահմաններից այն կողմ սկսվում է կապիտալիստական աշխարհը, որ մեր հասարակության մեջ մարդկանց մտքերում դեռ չի ավարտվել դասակարգային քաղաքական պայքարը» («Սովետական Հայաստան», 22 օգոստոսի, 1969 թ.)։

Իսկական պրոլետարիատի դիկտատուրան չի կարող հակադրվել բանվորների և գյուղացիների իշխանությանը, այն ապահովում է ժողովրդապետություն, իրավահավասարություն, անձի ազատություն և դեմոկրատական այլ ազատություններ։

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակի շնորհիվ մեր երկրում իրականացվեցին դեմոկրատական իդեալները։ Սովետական մարդիկ խոր գիտակցում են իրենց համար ապահովված ու երաշխավորված դեմոկրատական իրավունքների և ազատությունների մեծ նշանակությունը։ Բայց երբեմն լինում են մարդիկ, որոնք չըմբռնելով հասարակության զարգացման օրենքների էությունը, ոչ ճիշտ կամ պրիմիտիվ ձևով են պատկերացնում դեմոկրատիան։ Նրանք գտնում են, որ դեմոկրատիան միայն այն է, երբ ամեն ինչ թույլատրվում է, իսկ եթե որևէ բան արգելվում է, ապա դա դեմոկրատիայի խախտում է։ Այդպիսի մարդիկ չեն գիտակցում, որ սոցիալիստական դեմոկրատիան ընդհանուր ոչինչ չունի մանրբուրժուական տարերայնության, անկազմակերպվածության և անարխիստական տրամադրությունների հետ։ Այն իրենից ներկայացնում է իսկական ազատություն, երաշխավորում քաղաքացիների իրավունքները, բայց միաժամանակ նրանց վրա դնում որոշակի պարտականություններ, սահմանում հակահասարակական գործունեության նկատմամբ կոնկրետ պատասխանատվություն։ Սոցիալիստական պետությունը երբեք թույլ չի տա գործողությունների այնպիսի ազատություն,



որն ուղղված է մեր հասարակարգի տնտեսական ու քաղաքական հիմքերի քայքայմանը։ Սոցիալիստական հասարակարգում արգելված են բռնությունը, մարդասպանությունը, խուլիգանությունը, նացիոնալիզմը, շովինիզմը, սոցիալիստական սեփականության հափշտակումը, պատերազմի պրոպագանդան և այնպիսի գործողություններ, որոնք ուղղված են մեր կուսակցության և կառավարության քաղաքականության դեմ։ Այդպիսի գործողությունների համար մեր երկրում մարդիկ ենթարկվում են քրեական պատասխանատվության։ Հասկանալի է, որ նման գործողությունների և արարքների արգելումը ոչ մի դեպքում չի հակասում ազատությանը և դեմոկատիայի սկզբունքներին։

Սոցիալիստական հասարակարգում դեմոկրատիայի բոլոր իդեալների իրականացումն ակնհայտորեն երևում է պետության կառավարմանը աշխատավորական մասսաների փաստացի մասնակցության մեջ։ Բուրժուական գաղափարախոսները մեծ ջանքեր են թափում ապացուցելու, որ աշխատավոր զանգվածներն անկարող են կառավարել երկիրը։ Նրանք սխալվում են, քանի որ, ինչպես նշել է Լենինը, «Եթե իսկապես բոլորը մասնակցում են պետության կառավարմանը, այդտեղ կապիտալիզմն արդեն չի կարող դիմանալ» (Երկեր, հ. 25, էջ 616)։

Սոցիալիզմն արմատապես մերժեց բուրժուական գաղափարախոսների պնդումը, որ աշխատավոր մասսաները չեն կարող պետություն կառավարել։ Այդ է վկայում Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների պատմական փորձը։ Հայտնի է, որ մեր երկրում պետական իշխանության հիմքը հենց սկզբից էլ հանդիսացել են սովետները։ «Սովետները,— ասել է Լենինը,— բոլորի համար բաց իշխանություն է, որ ամեն ինչ անում է մասսայի աչքի առաջ, մատչելի է մասսային, ելնում է անմիջականորեն մասսայից, ժողովրդական մասսայի և նրա կամքի ուղղակի և անմիջական օրգանն է» (Երկեր, հ. 31, էջ 436)։

Բուրժուական գաղափարախոսները շաղակրատում են դեմոկրատիայի և կոմունիստական կուսակցության ղեկավարման անհամատեղելիության մասին։ Նրանք աչքերը փակում և չեն նկատում, որ մարքսիստները միայն մեկ կուսակցությունը չեն համարում սոցիալիզմի կառուցման միակ պայմանը։ Եվ, ամենակարևորը, նրանք չեն ուզում հասկանալ, որ կոմունիստական կուսակցությունը սոցիալիստական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժն է։ Հասարակության սոցիալիստական վերափոխման պրոցեսում կոմունիստները հանդես եկան որպես աշխատավորների շահերի ամենաակտիվ և հետևողական պաշտպաններ։ Կապիտալիստական տնտեսաձևից կոմունիստականին անցնելու ժամանակաշրջանում կոմունիստական կուսակցության կողմից հասարակության կյանքի ղեկավարումը օբյեկտիվ օրինաչափություն է։

Սոցիալիզմի թշնամիներն այս լավ են հասկանում։ Ուստի պատահական չէ, որ հիմնական հարվածը նրանք ուղղում են մեր կուսակցության դեմ, բացասում նրա ղեկավար դերը սոցիալիստական հասարակության կյանքում։ Չեխոսլովակիայում հակահեղափոխական ուժերը փորձում էին ժխտել կոմունիստական կուսակցության ղեկավար դերը։ Նրանք սկզբում քողարկվում էին մի քանի սխալների քննադատությամբ, իսկ հետո սկսեցին ՉԿԿ-ի հասցեին տարածել նողկալի հերյուրանքներ, վերջինիս վերացման պահանջներ ներկայացնել։ Եվ այդ անում էին իրենց բուրժուական և մանրբուրժուական կուսակցությունների իշխանություն հաստատելու նպատակով։ Այդ դեպքերը ջրի երես հանեցին սոցիալիստական հասարակարգում կոմունիստական կուսակ-

ցության դեմ հանդես եկող ռևիզիոնիստներին և նրանց հետևում կանգնած սոցիալիզմի թշնամիներին։

Պատմական փորձը ցույց է տալիս, որ կոմունիստական կուսակցությունը միակ հուսալի ուժն է՝ հեղափոխական նվաճումների պաշտպանման, հասարակության առջև ծառացած հարցերի լուծման և սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման համար։ Կուսակցությունը համախմբում և կոորդինացնում է պետական մարմինների և հասարակական կազմակերպությունների գործունեությունը, ռեալ պայմաններ ստեղծում ժողովրդին երկրի կառավարման գործում ընդգրկելու համար։ ՍՄԿԿ ծրագրում ասված է. «Կուսակցությունը ելնում է մարքս-լենինյան այն դրույթից, որ ժողովուրդը պատմության կերտողն է, կոմունիզմի կառուցումը ժողովրդի ձեռքի, նրա էներգիայի և բանականության գործն է» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութեր, էջ 421)։

Հետագայում սոցիալիզմի կառուցման շնորհիվ մեր երկրում հասարակական կյանքի բոլոր բնագավառներում տեղի ունեցան խոշոր փոփոխություններ, վերացան շահագործող դասակարգերի մնացորդները, հաստատվեցին նոր հարաբերություններ դասակարգերի և ազգերի միջև, հիմնականում ամրացավ հասարակության սոցիալական համասեռությունը։ Միջազգային ասպարեզում համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորումը մեծապես նեղացրեց իմպերիալիզմի ազդեցության շրջանակները։

Այս օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնները բարերար ներգործություն ունեն սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման վրա։ Սովետական սոցիալիստական դեմոկրատիան, որպես պրոլետարական դեմոկրատիա, վերափոխվել է համաժողովրդականի։

Սոցիալիստական հասարակարգում դեմոկրատիան մշտապես զարգանում է, կատարելագործվում։ Այդ պրոցեսը կոմունիզմի կառուցման շրջանում ուրույն նշանակություն ունի։ Դրա համար մեր կուսակցությունն իր ծրագրում և XXIII համագումարի որոշումներում գրել է. կոմունիզմի կառուցման շրջանում սոցիալիստական պետության զարգացման գլխավոր ուղղությունը դեմոկրատիայի բազմակողմանի ընդլայնումն ու խորացումն է։ «Որքան մեծ է պատմական գործողությունների թափը,— նշել է Լենինը,— որքան լայն է նրանց ծավալը, այնքան ավելի շատ է այդ գործողություններին մասնակցող մարդկանց թիվը, և, ընդհակառակը, որքան ավելի խոր է բարեփոխությունը, որ մենք ուզում ենք իրագործել, այնքան ավելի շատ հետաքրքրություն և գիտակցական վերաբերմունք պետք է առաջ բերել դեպի այն, նորանոր միլիոնների և տասնյակ միլիոնների համոզել դրա անհրաժեշտության մեջ» (Երկեր, հ. 31, էջ 630)։

Միանգամայն պարզ է, որ այժմ պատմական վերափոխումների չափերը անհամեմատ ավելի մեծ են, քան երբևէ։ Լենինն ասում էր, որ նախորդ ֆորմացիաների ստեղծմանը մասնակցել են հարյուրներ ու հազարներ, իսկ սոցիալիզմ և կոմունիզմ կարելի է կառուցել միայն միլիոնների ակտիվ մասնակցությամբ։

Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումը ենթադրում է բոլոր աշխատավորների ունակությունների բազմակողմանի զարգացում, նրանց կոմունիստական գիտակցության ձևավորում։

Զարգացման ներկա փուլում անհրաժեշտ է զուգակցել յուրաքանչյուրի մասնակցությունը նյութական ու հոգևոր արժեքների ստեղծմանը, երկրի կառավարմանը։ Այդ նպատակը բխում է հասարակական առաջընթացի պա-



հանջներից։ Այս առումով կարևոր նշանակություն ունի երկրում իրականացվող տնտեսական ռեֆորմը, արտադրության կառավարման հետագա դեմոկրատացումը։ Հայտնի է, որ ռեֆորմի գլխավոր նպատակը սոցիալիզմի տնտեսական օրենքների ամենաճիշտ օգտագործման ապահովումն է։

Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումը շատ է անհանգստացնում բուրժուական գաղափարախոսներին և ռևիզիոնիստներին։ Նրանք դեռևս երազում են, որ սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումն ի վերջո կընթանա բուրժուական հունով։ Այդ նպատակով նրանք լայնորեն պրոպագանդում են, այսպես կոչված՝ «կոնվերգենցիայի», «ինտեգրալ դեմոկրատիայի», «էթիկական սոցիալիզմի», «դեմոկրատական սոցիալիզմի» և նման այլ տեսություններ։ Սոցիալիստական և բուրժուական ապրելակերպերի նույնացումը, հաշտեցումը եղել և մնում են լոկ ցանկություններ։ Նման տեսությունները հեռու են իրականությունից, ռեալ իրավիճակից։ Բուրժուական դեմոկրատիայի զարգացումն ընթանում է դեմոկրատական իրավունքների սահմանափակման ու վերացման ուղիով։ Ի հակադրություն դրան, սոցիալիզմի ժամանակ դեմոկրատական իրավունքները զարգանում և ընդլայնվում են։

Սովետական սոցիալիստական դեմոկրատիայի բազմակողմանի զարգացումն իր արտահայտությունն է գտել սովետական ընտրական սիստեմի դեմոկրատական սկզբունքների և ժողովրդական ներկայացուցչության ձևերի հետագա կատարելագործման մեջ։ Մեծացել է սովետների և տեղական օրգանների դերը, կատարելագործվում է պետական ապարատը, ընդլայնվում են միութենական հանրապետությունների իրավունքները և այլն։

Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը նպատակ ունի բավարարելու մարդկանց կենսական պահանջները, առավել նպաստելու նրանց ինքնուրույնության և նախաձեռնության բազմակողմանի ծաղկմանը։ Դրա շնորհիվ ապահովվում է յուրաքանչյուրի ակտիվ մասնակցությունը նոր հասարակարգի բարգավաճմանը, մի հասարակարգ, ուր վերջնականապես կհաստատվեն կոմունիստական հումանիզմի և դեմոկրատիայի բարձրագույն գաղափարները՝ խաղաղություն, աշխատանք, հավասարություն, երջանկություն և բոլոր ժողովուրդների եղբայրություն։

* * *

Սոցիալիզմի ժամանակ դեմոկրատիայի լենինյան ուսմունքի իրականացումն ունի միջազգային նշանակություն։ Այդ են վկայում շատ ժողովուրդների կյանքում տեղի ունեցած արմատական փոփոխությունները։

Նոր հասարակարգի ծննդյան առաջին տարիներին, կապիտալիստական երկրների աշխատավորները, ոգևորված հոկտեմբերի գաղափարներով, ուժեղացրին դասակարգային պայքարը և ձեռք բերեցին դեմոկրատական որոշ իրավունքներ։ Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքների հաստատումն է՛լ ավելի ուժեղացրեց դրա ազդեցությունը միջազգային կյանքում։ Ընդլայնվեցին ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները, որոնք հանգեցրին գաղութարարության փլուզման։ Առաջացան ազգային դեմոկրատական պետություններ։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ազդեցության տակ, միջազգային իրավաբանական ակտերում, լայն ճանաչում գտան խաղաղության ու դեմոկրատիայի մեծագույն սկզբունքները։

Ժամանակակից դարաշրջանում սոցիալ-քաղաքական կյանքի զարգացումը ամբողջովին ապացուցում է դեմոկրատիայի, նրա դասակարգային էության լենինյան ուսմունքի գիտականությունը և ճշմարտացիությունը։

# ԼԵՆԻՆԻ ԳԵՂԱԳԻՏԱԿԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐԻ ԱՌԹԻՎ

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

*Վ. Ի. Լենինի էսթետիկան, նրա գեղագիտական սկզբունքները մշակվել ու ձևավորվել են հեղափոխական պայքարում, աշխարհը կոմունիստաբար վերափոխելու պրոցեսում։ Նրա էսթետիկան մարքսիստական ուսմունքի բաղկացուցիչ մասն է, դրա գեղագիտության զարգացումը, որը ընդգրկելով սոցիալական իրականության գեղագիտական յուրացման բոլոր կողմերը չի սահմանափակվում միայն գեղարվեստի ոլորտով։ Լենինը գեղագիտությունը դիտում էր որպես գաղափարական պայքարի հզոր միջոց, սոցիալական հարաբերությունների վերափոխման յուրօրինակ ազդակ։*

*Զարգացնելով Մարքսի ու Էնգելսի հեղափոխական ուսմունքը նաև այս բնագավառում, նա ընդհանրացրեց իր ժամանակվա գիտական ու գեղարվեստական մտքի նորագույն նվաճումները, վերջինների կապը՝ հասարակական կյանքում տեղի ունեցող իրադարձությունների, տեղաշարժերի հետ։ Նրա գեղագիտությանը խորթ են վերացական անպտուղ պրպտումները, մոդայիկ ուղղություններով հրապուրվելը։ Լենինի մոտ գեղագիտական վերլուծությունները հիմնված են գեղարվեստական կայուն արժեքների ուսումնասիրության, սոցիալական երևույթների մատերիալիստական ըմբռնման վրա։ Լենինյան գեղագիտությունը իր մեջ ներառնում է դասական էսթետիկայի բոլոր պրոբլեմները, հարակից գիտությունների նվաճումները, ինչպես նաև անձնավորության բարոյա-հոգեբանական առաջադիմությունը։*

*Մեր հակառակորդներից ոմանք ճգնում են հիմնավորել, թե իբր արվեստի մասին մարքսիզմի կլասիկների ասույթները պարզապես մասնավոր կարծիքներ են և չունեն ընդհանուր կոնցեպցիա։*

*Կյանքը, արվեստի ու գիտությունների զարգացումը վաղուց են ապացուցել, որ գիտական կոմունիզմի հիմնադիրների էսթետիկական հայացքները հիմնված են իրականության, գեղարվեստական կոնկրետ նյութի խոր իմացության վրա։ Լենինի աշխատություններում արտահայտված գաղափարները մեր էսթետիկայի հիմնարար սկզբունքներն են, անցյալի գեղարվեստական ժառանգության քննադատական յուրացման, սոցիալիստական արվեստի ստեղծման ուղենիշը։ Իր գիտական, քաղաքական գործունեության սկզբից ևեթ Լենինը արվեստում պաշտպանում էր ճշմարտացիության, կուսակցականության սկզբունքները, մարտնչում ռեակցիոն արվեստի բոլոր դրսևորումների դեմ։*



*Արվեստին ու գրականությանը նվիրված Լենինի հոդվածներում հիմնավորված են սոցիալիստական կուլտուրայի սկզբունքները, նորարարական ուղիները, դրանց մշտապես աճող դերը մեր դարաշրջանի հոգևոր կյանքում։ Մերժելով ռեակցիոն գաղափարախոսների հայացքները, թե աշխատավոր մասսաները հոգևոր կյանքի ասպարեզում ունակ չեն ինքնուրույն ստեղծագործելու, նա ապացուցեց, որ ժողովուրդն է նյութական ու հոգևոր արժեքների ստեղծողը։*

*Իր վաղ շրջանի աշխատություններում Լենինը քննադատեց նոր ժամանակների վերաբերյալ նարոդնիկների սկեպտիկ վերաբերմունքը, նահապետական համայնքին վերադառնալու նրանց կոչերը։ Նրա երկերում բացահայտված են կուլտուրայի նարոդնիկական կոնցեպցիայի ռեակցիոն էությունը։ Նա ապացուցեց, որ պատմականորեն ռեալ և արդյունավետ է բուրժուական քաղաքակրթության հակասությունների հաղթահարման ուղին։ Ոչ թե վերադարձ դեպի բնություն, հոգևոր կյանքի պրիմիտիվ ձևերը, այլ պրոգրեսի ուղին է պայմաններ ստեղծում ժողովրդական մասսաներին հաղորդակից դարձնելու կուլտուրայի գանձերին։ Ռուսսոն, ապա Տոլստոյը, դասակարգային հակասությունների էմոցիոնալ ընկալման հետևանքով, ներդաշնակություն էին փնտրում բնության հետ, ձգտում «բնական մարդու» իդեալին։ Մշակույթի հետադիմական քննադատության էությունն՝ այն է, որ իբր կուլտուրան քանդում է կյանքի օրգանական հիմքերը, այլասերում մարդուն, զրկում նրան հոգեկան ամբողջականությունից։ Բուրժուական քաղաքակրթության ոչ գիտական քննադատությունը էկլեկտիկ էր, անհետևողական։ Այն, ճիշտ նշմարելով կապիտալիստական աշխարհի արատները, չկարողացավ թափանցել վերջինիս էության մեջ, վերհանել դրա ամբողջական պատկերը։ Այդ հայացքը փաստորեն ուղղված էր մշակութային կյանքում ուժեղացող դեմոկրատական հոսանքների դեմ։ Աշխատավոր մասսաների ստեղծագործական ունակությունների հանդեպ արհամարհական վերաբերմունքի արտահայտություն է Նիցշեի փիլիսոփայությունը։ Նա ժողովուրդը բնութագրում է որպես մութ ու կույր մասսա, որն արվեստի ու գիտության կարիքը չունի։ Ավելին, ֆաշիզմի գաղափարական նախահայրը գտնում էր, թե մարդկության առողջացումը պետք է սկսվի հոգևոր արժեքների ոչնչացումից։*

*Սոցիալիզմի տեսությունն ու պրակտիկան ժխտում են նման հայացքները։ Լենինը նշել է, որ ոչ մի հասարակարգում ժողովրդական մասսաներն այնքան շահագրգռված չեն իսկական կուլտուրայով, որքան սոցիալիզմի օրոք։ Կուլտուրան ոչնչացնելու թեման Հոկտեմբերյան հեղափոխության առաջին իսկ օրից եղել է հակահեղափոխության միտումը։ Բոլշևիկները, Լենինը երբեք չեն օտարել մարդկության նախորդ սերունդների ստեղծած կուլտուրական արժեքները, հեռու են եղել կանխակալ չափանիշներից։ Նրանք գտնում էին, որ նոր հասարակարգի մշակույթը՝ խարսխված անցյալի այն բոլոր արժեքների վրա, որոնք նպաստում են հասարակության առաջադիմությանը, համահունչ է ժամանակի ոգուն։ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը աշխատավոր զանգվածներին հաղորդակից դարձրեց հոգևոր մշակույթին, նրանց ներգրավեց գեղեցկի ոլորտը, ջնջեց աշխատավոր մարդուն արվեստի աշխարհից անջատող սահմանը։ Լենինը հին աշխարհի հիմքերը քանդող հեղափոխա-*

կան ուժերի մեջ տեսնում էր նոր կյանքի կենսական շունչը, կառուցողական
պաթոսը։
Իդեալիստական էսթետիկան, իրականությունը դիտելով որպես արվեստի
համար ոչ էական, առաջնակարգ է համարում արվեստագետի սուբյեկտիվ
տպավորությունները, անկախ այն բանից համընկնո՞ւմ են արդյոք դրանք
օբյեկտիվ աշխարհի պատկերներին, թե ոչ։
Գեղարվեստական ճշմարտացիության հասկացության լենինյան մեկնա-
բանումը հարստացրեց մատերիալիստական էսթետիկան, որը ճշմարտությունը
ենթադրում է պատկերային բովանդակության համընկնումը իրականության
օբյեկտիվ կերպարին։ Լենինը մերժում էր այն ստեղծագործությունները, որ-
տեղ աղավաղված էին իրական կյանքի էական կողմերը, իրողության արա-
մաբանությունը։ Նա գեղարվեստական ստեղծագործությունը դիտում էր որ-
պես մարդկային կենդանի վավերագիր, որտեղ արտացոլված են դարաշրջանի
բնորոշ գծերը։ Առանձին հետազոտողներ անցյալի արվեստի մեջ տեսնում էին
միայն արվեստագետի սուբյեկտիվ ձգտումները, հույզերը, որոնք մահանում
են ժամանակի հետ։ Նրանք անտեսում էին խսկական ստեղծագործության ճա-
նաչողական բովանդակությունը, կայուն արժեքը։ Սակայն անգամ մեծ արվես-
տագետների ստեղծագործությունները զերծ չեն շեղումներից, որոնք պայմա-
նավորված են նրանց աշխարհհայացքում եղած հակասություններով։ Արտա-
ցոլման լենինյան տեսությունը գեղարվեստական կերպարի բնույթը բնորո-
շելու ըմբռնման հիմքն է, ըստ որի, իրականությունն արվեստում արտացոլ-
վում է կոնկրետ-զգայական, կերպարային ձևով։ Այստեղ ընդհանուրը մարմ-
նացում է գտնում անհատական բնավորության կամ իրադարձության մեջ։
Գեղարվեստական կերպարը մարմնավորում է անհատական գծերի հարստու-
թյուն, նպատակային հարաբերակցում։ Ճշմարտացիությունը ոչ թե առանձին
փաստերի ու երևույթների մեխանիկական վերարտադրումն է, այլ տիպակա-
նի։ Սակայն երևույթը հանգեցնել էությանը, տիպականից օտարել անհատա-
կան առանձնահատկությունները, նշանակում է՝ կերպարի շրջանակներից դուրս
մղել մարդու հոգեկան ու զգայական հարստությունը, կյանքը։ Այս ի նկատի
ուներ Լենինը, երբ ասում էր, որ երևույթը հարուստ է օրենքից։
Լենինյան գրական ժառանգությունը օգնում է մեզ մշակելու գեղարվես-
տական ըմբռնման ճիշտ մեթոդ։ Ճանաչողության ամեն բնագավառում մե-
թոդն ունի իր սպեցիֆիկ առանձնահատկությունները։ Ընդ որում, սխալ կլիներ
նույնացնել փիլիսոփայական և գեղարվեստական մեթոդները։ Գեղարվեստա-
կան մեթոդը փիլիսոփայականի տարբերակը չէ։ Լենինի համար ռեալիզմը,
առաջին հերթին՝ կյանքի ճշմարտացիությունն է, իրականության օրինաչա-
փությունների գեղարվեստական մեկնաբանումը։ Նա հաճույքով էր վկայա-
կոչում Ֆոյերբախի խոսքերը՝ «Արվեստը չի պահանջում իր ստեղծագործու-
թյունները ճանաչել որպես իրականություն»։ Ռեալիստական արվեստն օգտա-
գործում է արտահայտչականության բոլոր մատչելի միջոցները, ընդհանրաց-
նելու և բացատրելու ժամանակաշրջանի ճշմարտությունը։ Լենինը գիտակա-
նորեն հիմնավորեց արվեստի ճանաչողական, էսթետիկական և հասարակա-
կան վերափոխիչ ֆունկցիաների միասնությունը, որոնք միշտ տարանջատել
ու միմյանց են հակադրել ռեակցիոն գաղափարախոսները։ Լենինը հիմնավո-
րեց արվեստի գաղափարայնության, կուսակցականության և ժողովրդայնու-
թյան սկզբունքները, ցույց տվեց դրանցից յուրաքանչյուրի բովանդակությունն
ու սահմանները։ Կուսակցականությունն ըստ Լենինի, արվեստագետի հասա-



րակական ու ստեղծագործական դիրքորոշումն է, որտեղ միաձուլվում են տեսությունն ու պրակտիկան, միտքն ու գործողությունը, անձնավորությունն ու հասարակությունը, իդեալն ու իրագործումը, համոզմունքն ու զգացումը։ Կուսակցականության սկզբունքը գեղարվեստական ստեղծագործության ոլորտում միաժամանակ հասարակական և էսթետիկական պրոբլեմ է։ Կուսակցականությունն արվեստագետից պահանջում է իրադարձությունը գնահատելիս աներկբա ու բացահայտ կանգնել հասարակական որոշ խմբի տեսակետին։

Խոշոր հումանիստներից և արվեստագետներից շատերի դրաման անցյալում ու ներկայում պայմանավորված է դավանած իդեալի վերացականությամբ։ Մինչդեռ կուսակցականության սկզբունքն արվեստագետին մղում է ակտիվ գործողության՝ հանուն կյանքի սոցիալիստական գոյաձևի հաստատման։

Վերջերս,— գրում է սովետական անվանի գրականագետ Վ. Ռ. Շչերբինան,— արվեստի մի շարք տեսաբաններ այն տեսակետը պաշտպանեցին, թե իբր իրականությունը պատկերող նյութն ինքնին որոշում է կյանքի և արվեստի կոնցեպցիան (տե՛ս В. Р. Щербина. Ленин и вопросы литературы, М., 1967)։

Արվեստում «իրականության գերիշխման» կեղծ պատկերացումը կապված է արվեստագետի տենդենցիոզության անխտիր բացասման հետ։ Երբեմն նման հայացքները հաստատելու համար այդ տեսակետը պաշտպանողները վկայակոչում են Մարքսի և Էնգելսի քննադատական վերաբերմունքը ճչացող տենդենցիոզության, ստեղծագործության միտումնավոր կերպարային բովանդակության նկատմամբ։ Դրա համաձայն տենդենցը ներկայացվում է որպես օբյեկտիվ պատկերմանը հակադրվող միջոց, որը նախապես խախտում է ռեալ կերպարը, կյանքի բնական տրամաբանությունը։ Ճիշտ է, տենդենցը ոչ միշտ է համընկնում պատմության ռեալ շարժմանը, սակայն այն հիմք չի տալիս արվեստում բացասելու ամեն տենդենցիոզություն։ Այս դեպքում վերանում է տարբերությունն իրականության խսկական կերպարը խեղաթյուրող տենդենցիոզության և իրական պրոցեսներն ընդհանրացնող տենդենցիոզության միջև։

Կուսակցականության մեջ առանձնապես ի հայտ են գալիս գաղափարի մարմնավորումը գործողությամբ, հոգևոր սկզբունքների անմիջական իրականացմամբ։ Ահա թե ինչու կուսակցականության սկզբունքը գեղարվեստական ստեղծագործության ոլորտում միաժամանակ և՛ հասարակական, և՛ էսթետիկական պրոբլեմ է։

Բուրժուական գաղափարախոսների կարծիքով կուսակցականության մարքսիստական սկզբունքը, նշանակում է օբյեկտիվության բացասում։ Նրանք փորձում են անգամ այն նույնացնել պրագմատիզմի հետ։ Ժամանակակից ռեակցիոն մտածողները համառորեն ձգտում են հիմնավորել իրենց թյուր տեսակետը, թե, իբր, կուսակցականության սկզբունքը, արվեստագետի դիրքորոշման որոշակիությունը խանգարում են ստեղծագործական անհատականության բնական դրսևորմանը։ Սոցիալիստական արվեստի պրակտիկան, մարքս-լենինյան տեսությունը ժխտում են նման հակագիտական դատողությունները։ Ինչ վերաբերում է պրագմատիզմին, ապա վերջինս հեռու է բարձր իդեալներից, սոցիալական արմատական պրոբլեմների լուծման հարցադրումից, ընդունում է միայն այն, ինչ նպաստում է պրակտիկ գործունեությանը, ավելի օգտակար է կյանքի ցանկացած բնագավառում, հնարավորություն է տալիս հարմարվել շրջապատի պայմաններին, հասնել սեփական նպատակ-

ներին։ Պրագմատիզմը խտրություն չի դնում միջոցների մեջ, նրա համար ճշմարտությունը շահն է, շահեկան գործարքը։

Մեր գաղափարական հակառակորդները զուր են ճգնում ապացուցել, թե իբր մարքսիզմը, հիմնականում դիմելով մասսաների պատմական շարժմանը, անտարբեր է անձնավորության ճակատագրին։ Ժ. Մարիտենը Բարոյականության փիլիսոփայություն գրքում գրում է, թե մարքսիստական հումանիզմը «մարդու տոհմային էության, մարդու բնության հումանիզմ է, որը ծագում ու ավարտվում է հասարակության մեջ. այն ոչինչ չգիտե մարդկային անհատականության մասին, որպես այդպիսին» (Коммунист, № 12, 1969)։

Իրականում մարքսիզմ-լենինիզմն սկզբունքորեն դեմ է այն բոլոր տեսակետներին, երբ հասարակական զարգացման պրոցեսում անտեսվում է մարդկանց անհատականությունը, ինքնատիպությունը, անձնավորության հոգեկան նկարագիրը։ «Պատմությունը,— գրել են գիտական կոմունիզմի հիմնադիրները,— ոչ այլ ինչ է, քան իր նպատակները հետապնդող մարդու գործունեություն» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. 2, стр. 102)։ «Երբ սոցիալիստները,— նկատել է Լենինը,— խոսում են հավասարության մասին, դրանով նրանք միշտ հասկանում են հասարակական հավասարություն, հասարակական դրության հավասարություն, և ոչ երբեք՝ առանձին անհատների ֆիզիկական ու հոգևոր ընդունակությունների հավասարություն» (В. И. Ленин, полн. собр. соч., т. 24, стр. 364).

Այն, ինչ մեր ընդդիմախոսները վերագրում են սոցիալիստական ապրելակերպին ու տեսությանը, բնորոշ է բուրժուական գաղափարախոսությանը։ Բավական է հիշատակել մի քանի ասույթներ բուրժուական տեսաբանների գրավոր շարադրանքներից, որոնց ծավալուն քննադատությունը զետեղված է ՍՄԿԿ Կենտկոմի վկայակոչած ամսագրի էջերում։ Այսպես Կ. Յունգը գտնում է, որ գեղարվեստական ստեղծագործության գլխավոր աղբյուրը ոչ թե բնությունն ու հասարակությունն են, այլ ինտուիտիվ, «կոլեկտիվ անգիտակցականը»... Մարդը թվացող է։ Նրա բնությունը բացահայտվում է միայն սիմվոլում, ինչ-որ ծածկագրում, որը թաքցնում է նրա խոր իռացիոնալ էությունը։ Նրան է ձայնակցում Ա. Ռոբ-Գրիյեն, ասելով, թե ժամանակակից մարդը «անանուն է», նրան խորթ են անհատական հատկությունները, որոնք բնորոշ են տրադիցիոն գրականության հերոսին»։

Բուրժուական մտածողները տրոհում են մարդուն, հակադրելով նրա անհատականը, այսպես կոչված՝ մարդկային էությունը, սոցիալ-պրակտիկ կենսագործունեությանը։ Նրանք այդ ոլորտները համարում են կամ իրարից անկախ, կամ նախապատվությունը տալիս են դրանցից մեկին, չցանկանալով մարդուն դիտել նրա դրսևորումների ամբողջության մեջ։ Եվ որպեսզի հավատարիմ մնան իրենց հորինած տեսություններին, բուրժուական գեղագետները կոչ են անում հրաժարվել ռեալիզմի ավանդույթներից։ «Ռեալիզմ» տերմինը Լենինը օգտագործում է ոչ թե որոշակի գեղարվեստական ուղղությունը նշելու համար, այլ շատ լայն առումով։ Լենինի համար ռեալիզմը նախ՝ կյանքի ճշմարտացիությունն է, իրականության էական երևույթների արտացոլումը։ Ճշմարտացիությունը ենթադրում է ոչ թե առանձին փաստերի ու երևույթների, այլ տիպականի վերարտադրություն։

Լենինի մշակած երկու կուլտուրաների տեսությունը մշակույթի ազգային առանձնահատկությունների հաշվառում է՝ բուրժուական անտագոնիստական հասարակության պայմաններում։ Այն հնարավորություն է ընձեռում բազմակողմանիորեն քննելու բուրժուական ազգերի, արվեստի ու գրականության հակասական զարգացման բնույթը, օգնում հասկանալու արվեստում դրսևորվող ուղղությունների ու հոսանքների դասակարգային շարժառիթները։ Երկու ազգային կուլտուրա մեկ ազգային կուլտուրայում տեսությունն իր բովանդակությամբ ուղղված է բուրժուական հակամարքսիստական «միասնական հոսանք» թեորիայի դեմ, որը սքողում է հակասությունները ու պայքարը բուրժուական ազգերի ներսում, կուլտուրայի ոլորտներում, ապադասակարգային, «մաքուր ազգային» կուլտուրայի անվան տակ ջնջում հակասությունը մշակույթի առաջավոր ու հետադիմական հոսանքների միջև։ Այն միաժամանակ հարվածում է ժամանակակից ռևիզիոնիստական միասնական ընդհանուր դեմոկրատական կուլտուրայի տեսությանը, որը ծագել ու այժմ տարածվում է կապիտալիզմի երկրներում՝ իբր տեղի ունեցող բուրժուական ու պրոլետարական դասակարգերի աստիճանական ձուլման ընթացքում։ Անցյալի ազգային կուլտուրայից, սովորեցնում է Լենինը, պրոլետարիատը վերցնում է միայն նրա առաջադիմական, դեմոկրատական ու սոցիալիստական տարրերը։ Աշխատավորներն անցյալի ժառանգությունից օգտագործում են ողջ արժեքավորը, չբացառելով շահագործող դասակարգերի կուլտուրան, երբ նրանք պատմության մեջ պրոգրեսիվ դեր էին խաղում, երբ նրա ներկայացուցիչներն ունակ էին ստեղծելու գիտական ու գեղարվեստական արժեքավոր գործեր։

Լենինը գտնում էր, որ պրոլետարական կուլտուրայի ինտերնացիոնալ բովանդակության ընդհանրությունը և նրա ազգային ձևի տարբերությունը, վերջին հաշվով, բնորոշվում է կապիտալիզմի պայմաններում ազգերի զարգացման օբյեկտիվ երկու տենդենցներով. մի կողմից՝ ազգերի ինքնուրույն կյանքի արթնացման, մյուս կողմից՝ ազգերի մերձեցման, ժողովուրդների ինտերնացիոնալ միասնության ստեղծվող տենդենցներով։ Նա ընդգծում էր, որ վերջիններս բխում են կապիտալիզմի համաշխարհային զարգացման օրենքի էությունից։ Դրանցից առաջինը գերակշռում է կապիտալիզմի ձևավորման ու հաստատման շրջանում, երկրորդը՝ դրսևորվում է նրա հասունության փուլում, և ապա զարգանում ու հիմնովին կատարելագործվում սոցիալիստական հասարակարգում։

Ներկայացնելով Տոլստոյին իր առավելություններով ու թուլություններով, Լենինը բնութագրեց հանճարեղ գրողի ազգային յուրահատկությունները և նրա ստեղծագործության համաշխարհային նշանակությունը։ Ի հակադրություն լիբերալների ու մենշևիկների, նա ապացուցեց, որ ռուս գրականությունը համաշխարհային ճանաչում է ձեռք բերել շնորհիվ այն բանի, որ աճել է ազգային կյանքի հողից, դրսևորել ռուս ժողովրդի ներաշխարհի հարստությունը։

1913 թ. Գորկին «Русское слово» թերթում հանդես եկավ Մոսկվայի գեղարվեստական թատրոնում Դոստոևսկու «Бесы» վեպի բեմականացման դեմ։ Այդ առթիվ բուրժուական մամուլն աղմուկ էր բարձրացրել։ Գորկուն մեղադրում էին, որ նա փորձում էր արվեստագետի ազատությունը սահմանափակել հասարակական ցենզուրայով։ Իր Դարձյալ Կարամազովշչինայի մասին հոդվածում Գորկին նորից անդրադարձավ այդ երկի ռեակցիոն բնույթին, որտեղ վատաբանվել էին հեղափոխության գործիչները, չափազանցվել ռուսական բնավորության բացասական գծերը։ Կարամազովշչինայի քննադատման հարցում Լենինը համաձայնեց Գորկու հետ, բայց միաժամանակ քննադատեց ռուս ժողովրդի հոգևոր էության նրա սխալ բնութագրումները։ Կարամազովշչինայի մասին հոդվածում Գորկին գրում էր Դոստոևսկու կերպարնե-

տից մեկի հիվանդագին հոգու մասին, որն անկասկած ռուսական էր, տձև ու խայտաբղետ, միաժամանակ վախկոտ ու կոպիտ, իսկ առաջին հերթին հիվանդագին չար... Շատ խեղաթյուրված հոգի է, և այնտեղ հիանալու ոչինչ չկա» (М. Горький, Собр. соч., т. 24, стр. 147):

Գորկուն գրած նամակում Լենինը կտրականապես իր անհամաձայնությունը հայտնեց «ռուսական հոգու մասին» նրա դատողությունների վերաբերյալ: Շարադրելով իր տեսակետը, Լենինը նկատեց, որ պետք է ասել ոչ թե «ռուսական» հոգի, այլ քաղքենիական, քանի որ հրեականը, իտալականը— բոլորը մի սատանա են, ամենուր քոսոտ քաղքենիությունը միանման նողկալի է... (տե՛ս В. И. Ленин, Полн. собр. соч., т. 48, стр. 227 — 228):

Գորկին ընդունեց Լենինի քննադատական դիտողությունները, որոնք ճշմարիտ էին ու տեղին:

Լենինի աշխատություններում ուսանելի դիտողություններ կան անհատականի ու սոցիալականի, ինչպես և գնոսեոլոգիական ասպեկտների փոխհարաբերության պրոբլեմի լուսաբանման վերաբերյալ: Նա անձնավորության հոգեբանությունը դիտում էր որպես պատմական պայմանավորվածության, հասարակական միջավայրի արդյունք, միաժամանակ չանտեսելով այն հարաբերական ինքնուրույնությունը, որը դրսևորվում է սոցիալական երևույթներն անձնականի ոլորտում բեկվելու պրոցեսում: Այստեղ մարդու հոգեբանական մղումները և ընկալումները ոչ միշտ են համընկնում նրանց ռեալ բովանդակությանը: Հաճախ արվեստագետի (կամ ստեղծված հերոսների) բարիցանկությունները օբյեկտիվորեն հակասում են հեղինակի նախատեսած ավարտին:

Հասարակական հոգեբանությունը ներառում է անձնավորության աշխարհընկալման զգայական, ինտելեկտուալ, կամային, ինտուիտիվ կողմերը: Չհակադրվելով դրան, արվեստը, առաջին հերթին, շեշտը դնում է մարդու անհատական հոգեբանության, առանձնահատկությունների, տպավորությունների, չհամակարգված ընկալումների, ձևավորվող գաղափարների, սովորույթների, ենթագիտակցականի, բնավորության յուրօրինակության վրա: Թափանցելով մարդու ներաշխարհը, արվեստը դրսևորում է վերջինիս բոլոր կողմերը՝ իր բնական լինելության մեջ: Հանրահայտ է Մարքսի այն դրույթը, որ «մարդը առարկայական աշխարհում հաստատվում է ոչ միայն մտածողության, այլև բոլոր զգացումների միջոցով» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. III, стр. 627):

Հույզն արվեստում ձեռք է բերում գաղափարական իմաստ, փիլիսոփայական հիմնավորում: Գաղափարը հույզի կցորդ չէ, այլ խտացած արտահայտությունը: Չէ՞ որ մարդու ներաշխարհի խմորումները, ենթագիտակցական գործողությունները ինքնաճանաչման են հասնում գաղափարական հայեցակետում, կատարվածի խոհական վերլուծության ժամանակ: Բնավորության բնական զարգացումը չի բացառում ենթագիտակցականը, որը գեղարվեստական կերպարի ստեղծման գծերից է: Մերժելով ֆրոյդիզմը, իռացիոնալությունից ու միակողմանիությունից խույս տալու համար, չպետք է ընկնել մի ուրիշ ծայրահեղության մեջ և մարդուն ներկայացնել միայն իր բանական տեսքով, մեռյալ սխեմայով: Ժամանակակից գիտությունն ապացուցում է, որ անհրաժեշտ է բազմակողմանի մշակել ենթագիտակցականի պրոբլեմը: Այն մի շարք ասպեկտներով ակտուալ է, մասնավորապես նոր հասարակարգի մարդու բարոյա-հոգեբանական էության ձևավորման, նրա դեռ չհաղթահարած սովո-



րույթների, հակումների վերափոխման խնդրի առումով: Ի վերջո, չի կարելի մարդու վարքագծի դրսևորումների որոշ կողմերը, որոնք բխում են նրա բնախոսական էությունից, վերագրել գիտակցականին: Կերպարի գեղարվեստական մարմնավորման տեսանկյունից անուշադրությունը նատուրայի, ենթագիտակցականի ոլորտի, բնավորության անհատական տրամաբանության հանդեպ առաջ է բերում անդեմություն, սառը խոհականություն:

Արևմուտքում այն թեզն են առաջ քաշում, թե սովետական արվեստին խորթ են անմիջական զգացումները և անձնական հույզերի բարդությունները: Նման կշտամբանքը մեր արվեստի հասցեին անհիմն է, անարդար: Մի՞թե Շոլոխովի, Ա. Տոլստոյի, Ա. Ֆադեևի, Չարենցի, Ա. Բակունցի, Ն. Զարյանի և մյուս ականավոր արվեստագետների ստեղծագործություններում չկան բարդ հոգեբանական կերպարներ, իրենց անհատական ինքնատիպ նկարագրով: Ինչ վերաբերում է ժամանակակից արվեստագետներին, նրանք շարունակում են սովետական դասական արվեստի ավանդույթները և, ելնելով արդի դարաշրջանի խնդիրներից, զարգացնում են այն:

Իսկական ստեղծագործական գաղափարը հարաշարժ մտքի զուգորդումն է կենսունակ զգացումներին, որը գեղագիտորեն ամբողջականացնում է գեղարվեստական կերպարը: Արվեստում մարդկային մտածողությունը հարստանում է արվեստագետի հույզերով, նրա կենսափորձով: Լենինը ստեղծագործական պրոցեսը չէր պատկերացնում առանց հրապուրանքի, առանց կրքի: Նա գտնում էր, որ արվեստի ուժը որոշվում է ո՛չ միայն հասարակության զարգացման պրոցեսների ու երևույթների ճշմարտացի լուսաբանմամբ, այլև կյանքից վերցրածի, վերապրածի հուզականությամբ, նորի, առաջադիմականի հաստատման պաթոսով: Արվեստը ոչ թե քարացած է պատճենավորում իրականությունը, այլ վերափոխում, տոգորում է այն կենսականությամբ: Մեծ արվեստագետի անվան հետ միշտ կապված է նրա անհատական, գեղարվեստական աշխարհը: Արվեստագետի գործունեությունը չի կարելի հանգեցնել կյանքի պասիվ վերարտադրմանը. նա որոշակի դիրքորոշումից և տեսակետից է այն լրացնում, վերամարմնավորում: «Արվեստը,— նկատել է Գորկին,— ինչպես և գիտությունը ստեղծում է «երկրորդ բնությունը», այն տարբերությամբ, որ գիտությունը մարդուն դրսից հոգատար շրջապատում է «երկրորդ բնությամբ», իսկ արվեստն այն ստեղծում է մեր ներսում» (М. Горький. О писателях, М., стр. 308):

Գեղարվեստական ստեղծագործության ակտիվ, մարդկայնացված էության նկատմամբ նվազ ուշադրության արտահայտություն է կյանքի գեղեցկի նույնացումը արվեստի գեղեցկի հետ: Այս հայացքի հաստատման վկայություն է այն, որ գեղարվեստական ստեղծագործություններում վարպետորեն ստեղծված բացասական տիպերը ընթերցողի ու հանդիսատեսի հոգում արձագանք են գտնում և, ընդհակառակը, գեղարվեստական դրական շատ կերպարներ հաճախ լինում են անտպավորիչ, անհրապույր: Արվեստը վեհացնում կամ նսեմացնում, ուժեղացնում կամ թուլացնում է իրական երևույթը: Առանց կյանքի ճշմարտացի, բազմակողմանի պատկերման, անհնար է իրականության նոր կողմերի, պրոցեսների էսթետիկական յուրացումը: Մեր օրերի առանձին քննադատական աշխատություններում ճշմարտացիությունն արվեստում հաճախ մեկնաբանվում է նատուրալիստական պատճենավորմամբ: Հարկ է նկատել, որ արվեստի ստեղծագործական բնույթը, իրական կյանքի գեղագիտական յուրացումն արվեստի տեսության մեջ անբավարար է լուսաբանված:

Կյանքի նյութը, փիլիսոփայական և սոցիալական գաղափարները գեղարվեստական իրականության են վերածվում միայն գեղագիտական վերափոխման պայմանով։ Առանց նման տրանսֆորմացիայի դրանք գեղարվեստական ստեղծագործության հյուսվածքում կմնան դեկլարացիա, օտարածին մարմին։ Գեղագիտականից հեռու երևույթներն արվեստի ոլորտն են մտնում միայն էսթետիկական յուրացման շնորհիվ, դառնալով պատկերային բնույթի երևույթներ, ստեղծագործության գեղարվեստական կոմպոնենտ։

Ապարդյուն է քննել ստեղծագործության գեղարվեստական բնույթը, հիմնվելով միայն առանձին վերացական կոմպոնենտների վրա, ելնելով անջատ կերպարային համակարգի ամբողջականությունից։ Նման դեպքերում ստեղծագործության մասերը կորցնում են իրենց էությունը։ Արվեստի գեղագիտական հնարավորությունները բազմապիսի են, ինչպես հարուստ է ինքը կյանքը։ Կյանքի հարստությունը բացահայտում է միայն այն արվեստագետը, որը բովանդակության համար ընտրում է ամենահարմար, ուրեմն և ամենաակտիվ, ամենակատարյալ ձևը։ Լենինը նշում էր, որ արվեստի համար կործանարար են շաբլոնը, սխեմատիկ գրելաձևերը։ Այս առիթով ուսանելի է Գորկու դիտողությունը, որ «աշխատանքում ոչ թե նյութն է որոշիչը, այլ վարպետը»։

Գեղարվեստական ընդհանրացումը հնարավոր է տարբեր դիրքերից։ Եթե արվեստագետի աշխարհայացքն առաջադիմական է, համընկնում է կյանքի օբյեկտիվ օրինաչափություններին, ապա նրա ստեղծած կերպարները ճշմարտացի են բացահայտում երևույթների հասարակական բնույթը, հարստացնում իրականության գեղագիտական ճանաչողությունը։ Այլ է, երբ արվեստագետն իր շրջապատը դիտում է սխալ, կեղծ դիրքերից, նման դեպքում նրա պատկերացումները շեղվում են կյանքի ռեալ շարժումից և ընդհանրացումները լինում են միակողմանի։ Արվեստի կարևոր, անհրաժեշտ գծերն են՝ կերպարայնությունը, զգացումների ուժը, արտահայտչամիջոցի պարզությունն ու գունեղությունը։

Արվեստում Լենինը չէր թերագնահատում ռոմանտիկական ձևերը, պայմանականությունը, սիմվոլիկան, եթե վերջինները օգնում են ավելի խոր հասկանալու աշխարհը, լինելության իմաստը, նրա վերափոխումների պաթոսը։ Առանձին սիմվոլիկ գրական կերպարները, անշուշտ, գեղագիտական խոր ներգործություն են ունենում։ Սակայն սիմվոլիզմը որպես հոսանք զրկում է արվեստը կենսալիությունից, աղքատացնում այն, խեղաթյուրում ռեալ իրականության պատկերը։ Հիերոգլիֆների տեսության լենինյան քննադատությունից հետևում է, որ անհնար է սիմվոլներն անջատել ռեալականությունից և այն վերածել ինչ-որ անկախ, ինքնամփոփ երևույթի, կտրված օբյեկտիվ բովանդակությունից։

Այժմ այս պրոցեսը տեսական հիմնավորում է գտնում վերջին տարիներին տարածված՝ արվեստը, որպես նշանային սիստեմի— մոտեցման մեջ, երբ գեղարվեստական ստեղծագործությունը դիտվում է որպես ինչ-որ նշան կամ նշանների միագումար, արվեստի ստեղծագործության էական-բովանդակային բնույթից անկախ։ Արդեն ասվեց, որ օրինական է արվեստի դիմումը սիմվոլին՝ որպես գեղարվեստական արտահայտչականության միջոց։ Սակայն արվեստից զգայական տարրի հեռացումը և փոխարինումը նշանների սիստեմով ի չիք է դարձնում էսթետիկական ներգործությունը, անգամ եթե արվեստագետը դիմում է ուժգին միջոցների։ Իր էությամբ ու ֆունկցիայով նշանն անհարիր է բովանդակությանը, որն այն չի արտահայտում, չի պատկերում,



այլ նշանակում է։ Նշանն աբստրակցիա է, որը ձեռք է բերում կոմունիկատիվ հատկություններ միայն շնորհիվ իր կեցության սպեցիֆիկ պայմանների։ Քանդվում է կոնվենցիան— նշանը դառնում է անիմաստ։

Ի հակադրություն հակառեալիստական հայացքների, Լենինը գրականությունը հիմնում էր լեզվի պատմական, բնական օրինաչափությունների ստեղծագործական կիրառման, խոսքի կենսական, իմաստալից ու պատկերող պլաստիկ հնարավորությունների վրա։ Գրողի ստեղծագործությունը, հեղինակային անհատականությունը, հերոսները, թեման, գաղափարները մարմնավորված են լեզվում։ Լենինը գրական վարպետության մակարդակը տեսնում էր նաև լեզվի արտահայտչականության ու ճշգրտության մեջ։ Ըստ նրա՝ լեզուն գրողի առանձնահատկությունները դրսևորող միջոց է։ Իսկական արվեստագետի մոտ խոսքի արտահայտչական ու պատկերման հնարավորություններն անսպառ են։ Եվ որքան հուժկու է նրա տաղանդը, այնքան նոր միջոցներ է բացահայտվում խոսքում։

Ըստ մարքս-լենինյան տեսության, յուրաքանչյուր դարաշրջանի արվեստ նախ տարբերվում է մարդկային հարաբերությունների բովանդակության առանձնահատկություններով, նկարագիրների որոշակի գծերով։ Արդիականությունը արվեստում չի ավարտվում արտաքին հատկանիշներով։ Այն ընդգրկում է դարաշրջանի ու մարդու նպատակային ըմբռնումը, հասարակության ու անհատի կենսական ու գեղագիտական սկզբունքները։ Հասարակական կյանքը պատմական ամեն փուլում պարփակում է իր մեջ անցյալը, ներկան և ապագան, որոնք կոնկրետ իրադրության մեջ պահպանում են իրենց որոշակիությունը, միախառնված տենդենցներով հանդերձ։ «Իրականությունը,— գրել է Գորկին,— միանգամից չի ընկալվում։ Սակայն մեզ անհրաժեշտ է իմանալ ո՛չ միայն երկու իրականություն՝ անցյալը և ներկան, որոնց ստեղծագործությանը մենք որոշ մասնակցություն ենք ունենում։ Մենք պետք է իմանանք նաև ապագայի իրականությունը... Հարկ է այդ երրորդ իրականությունը դարձնել մեր առօրյան։ Առանց դրա չենք հասկանա, ինչ է սոցիալիստական ռեալիզմի մեթոդը (М. Горький. Собр. соч., т. 27, стр. 419)։

Գեղագիտությունը, գեղարվեստի տեսությունները դեռ անբավարար են լուսաբանել կյանքում ու արվեստում հերոսականի դրսևորման ձևերը։ Հաճախ հերոսականը միակողմանի է ընկալվում, միայն որպես բացառիկ պարագայում, կամ կռվի դաշտում անմիջական կատարված խիզախում։ Առօրեականը, անկախ տեղից ու ժամանակից, բացառվում էր հեռու հերոսականից, գորշ, երկրային, զուրկ հոգեկան մեծ մասշտաբներից, ռոմանտիկական պաթոսից։ Լենինը գտնում էր, որ բավական չէ առանձին պոռթկումի հերոսականը, անհրաժեշտ է պատկերել ամենօրյա համառ աշխատանքի սխրանքը, հերոսականի դրսևորման ամենածանր բնագավառը։ Առօրյա սխրանքի պատկերումը, որը բացառիկ իրադարձության բնույթ չի կրում, արվեստագետից պահանջում է թափանցել մարդու ստեղծագործական մտքի ոլորտը, ներաշխարհի գաղտնարանը, վերհանել հույզերի ու զգացումների շարժումն ու բախումը։ Անիրավացի է հակադրել հերոսականը առօրեականին, վեհը՝ սովորականին։ Սոցիալիզմի օրոք էական է կյանքի բոլոր ոլորտներում սուբյեկտի, անձնական գործոնի դերի գիտական լուսաբանումը։ Անհրաժեշտ է բնորոշել սուբյեկտիվ և օբյեկտիվ սկզբունքների նոր փոխհարաբերությունը, նրանց փոխգործողության ռեալ ձևերը։ Անցյալում ռեալիստական արվեստը բազմակողմանիորեն բացահայտում էր անձնավորության կախումը միջավայրից, պարագաներից,

այժմ արվեստում ավելի նշանակալի է անձնավորության ակտիվությունը, «պարագաների ճեղքումը», դրանց վրա ստեղծագործական անհատականության ներգործումը։ Վերջին ժամանակների գրականության առանձին ստեղծագործություններում թույլ է պատկերվում ժամանակակից մարդու հոգեկան աշխարհի էվոլյուցիան։ Այդ ստեղծագործություններում առավելապես ցույց է տրվում արդեն ձևավորված հերոսի պայքարը արտաքին պարագաների, միջավայրի դեմ։

Մեր օրերի մոդեռնիստները փորձում են արվեստը հակադրել իդեալներին, հիմնավորել, թե մարդուն անգամ նրա ամենաբարձր էմոցիոնալ դրսևորումներում․մղում են ոչ թե վեհ իդեալները և ձգտումները, այլ բացառապես ինքնակարգավորումը։ Մինչդեռ իդեալները օգնում են մարդուն ինքնորոշվելու, մշակելու բնավորության գծեր։ Լենինը նկատել է, որ «մարդուն պետք է իդեալ, սակայն մարդկային, բնությանը համապատասխան, բայց ոչ գերբնական» (В. И. Ленин. Полн. собр. соч., т. 29, стр. 56)։

Կյանքի հետ արվեստի կապի լենինյան սկզբունքը ընդհանուր ոչինչ չունի «փաստի գրականության» ջատագովության հետ։ Կոնկրետ, առանձին փաստի ճշմարտության փոխհարաբերությունն արվեստի ճշմարտությանը, ավելի լայն, իրականության ճշմարտության պրոբլեմի հետ գաղափարա-գեղարվեստական ամենակարևոր պրոբլեմներից է։ Դասական էսթետիկայում փաստի ու նրա ըմբռնման հակադրումը և մեկնաբանումը դիտվում էր որպես ճանաչողության հավերժ անհաղթահարելի կոլիզիա։ Մինչ Լենինն անհրաժեշտ էր գտնում առանձնացնել փաստերը «փաստիկներից», դրանք դիտել կապի մեջ։ «Փաստի գրականություն» նատուրալիստական տեսությունը բացառում է իմաստավորման ակտիվ սկզբունքը, արվեստագետի վերլուծական և ընդհանրացնող ֆունկցիան։

Ակնհայտ է, որ կյանքի ճշմարտության հիմքում ընկած է փաստի ճշմարտությունը։ Սակայն չի կարելի դրանք նույնացնել և փոխարինել մեկը մյուսով, քանի որ միայն փաստի ճշգրիտ ընտրությունը և իմաստավորումն արվեստագետին հնարավորություն է ընձեռում ստեղծելու աշխարհի ամբողջական կերպարային կոնցեպցիան։

Սոցիալիստական ռեալիզմի արվեստը ճշմարտացի է արտացոլում մարդու ներաշխարհը, նրա զգացումներն ու խոհերը։ Սովետական արվեստագետները որոնում են տիպականացման նոր միջոցներ, ընդհանրացման նոր սկզբունքներ բացահայտելու մեր ժամանակակցի բարոյա-հոգեբանական կերպարը, խիղախումների պաթոսը։

Լենինյան էսթետիկական ուսմունքը նոր մարդու, նոր աշխարհակերպի, նոր արվեստի գաղափարական ծրագիրն է, գեղեցկի արմատավորման ուղենիշը։





# ՀԱՄՈԶՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԸՄԲՌՆՈՒՄԸ

Ռ. Մ. ՍԱՄՍՈՆՈՎ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

Ժողովրդական զանգվածների կոմունիստական դաստիարակության գործը հաջողությամբ իրականացնելու համար, անհրաժեշտ է վերլուծել հասարակության հոգեկանի վրա գաղափարախոսության ազդեցության գործոնները, գաղափարները համոզմունք դարձնելու, մասսաների հոգեկան աշխարհը սոցիալապես կողմնորոշելու, նոր տրամադրություններ սերմանելու ուղիները։

Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն էր նվիրում ժողովրդական զանգվածների համոզմունքների ձևավորմանը։ Այդ հարցերի վերաբերյալ լենինյան դրույթների տեսական խոր բովանդակությունը, դրանց քաղաքական ու գործնական վիթխարի նշանակությունը կարելի է բացահայտել գիտական ծավալուն ուսումնասիրության սահմաններում։ Ուստի, այս հոդվածում կանգ կառնենք համոզմունքի ձևավորման լենինյան ուսմունքի մի քանի առանձնապես կարևոր կողմերի վրա։ Խոսքը մասսաների համոզմունքների ձևավորման կոնկրետ գործոններին չի վերաբերում, դա սոցիալ-հոգեբանական վերլուծության առարկա է։ Մենք կքննարկենք սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանում կոմունիստական կուսակցության պրակտիկ գործունեության բնագավառում համոզմունքների նշանակության, օբյեկտիվ պայմանների ու սուբյեկտիվ գործոնի, ինչպես նաև ժողովրդական զանգվածների համոզմունքների ձևավորման ոլորտում նրանց փորձի դերի, համոզմունքի և հարկադրանքի դիալեկտիկական փոխադարձ կապի վերաբերյալ լենինյան դրույթները։

Համոզմունքների ձևավորումը հասարակական գիտակցության առաջացման և փոփոխման պրոցեսի մի մասն է, որը կապված է ճանաչողության հետ։ Հասարակական գիտակցականությունն ու ճանաչողությունն անխզելի են միմյանցից, քանի որ առանց գիտելիքների, առանց բավարար ինֆորմացիայի չի կարող լինել հասարակական գիտակցություն։ Հասարակական տվյալ խմբի գիտակցության ձևավորման կամ փոփոխման պրոցեսը սկսվում է ճանաչողությունից, հասարակական որոշ գաղափարների յուրացումից, ինչպես նաև հասարակական երևույթների կամ գաղափարների հուզական ըմբռնումից։

Հասկանալի է, որ «իմացություն» և «գիտակցություն» հասկացողությունները չեն կարող համընկնել, չնայած երկրորդն անհնար է առանց առաջինի։ Հասարակական որոշակի խմբի գիտակցության ձևավորումը սկսվում է ինչ-որ

չափով գիտելիքների իմացության առկայության պայմաններում, սակայն չի սահմանափակվում դրանով։ Այստեղ կարևոր է վերաբերմունքը հասարակական երևույթների ու գաղափարների իմացության նկատմամբ։ Հասարակական որոշակի խմբերը (դասակարգ, ազգ) կարող են իրազեկ արվել այս կամ այն քաղաքական կամ այլ գաղափարների, սակայն դրանք միշտ չէ, որ օրգանապես ձուլվում են նրանց գիտակցության հետ, որոշում սոցիալական այդ խմբերի տրամադրությունն ու վարքագիծը։ Բուրժուական որոշ շրջաններ, ծանոթ լինելով կոմունիստական գաղափարներին, բոլորովին այլ գիտակցություն ունեն։ Կապիտալիստական աշխարհում բանվոր դասակարգի զգալի մասի մոտ ավելի ու ավելի է զարգանում սոցիալիստական գիտակցությունը, չնայած նրանց ամենօրյա հաղորդվող ինֆորմացիայում գերակշռում են բուրժուական և կրոնական գաղափարները։

Յուրաքանչյուր գաղափար, քաղաքական լոզունգ, տեսական հետևություն, աշխարհայացքի մասն են դառնում, երբ դրանք իրոք յուրացնում են մասսաները։ Իսկ թե որքանով դրանք կվերածվեն ակտիվ, վերափոխիչ ուժի, դա պայմանավորված է տնտեսական, հասարակական-քաղաքական և հոգեբանական մի շարք գործոններով։

Գաղափարների իմացությունն ու ըմբռնումը առաջին անհրաժեշտ պայմանն է, որպեսզի դրանք մարդկանց համոզմունքը դառնան։ Խոսելով մեր երկրում սոցիալիզմի կառուցման գործում բազմամիլիոն գյուղացիական զանգվածներին ընդգրկելու մասին, Լենինը նշել է. «Ավելի դժվար կլինի այնպես անել, որ գյուղացիական մասսաներն ու պրոֆմիությունների անդամներն այդ խնդիրներն հասկանան այժմ, որպեսզի նրանք հասկանան, թե չի կարելի հին ձևով ապրել, որ ինչքան էլ տասնյակ տարիների ընթացքում կապիտալիստական շահագործումը արմատացել է, այնուամենայնիվ, հարկավոր է հաղթահարել այն» (Երկեր, հ. 31, էջ 631)։ Ուստի, համոզմունքի ձևավորման համար այս կամ այն գաղափարի, կամ հասարակական ռեալ հարաբերությունների ըմբռնումն ու յուրացումը մեծ նշանակություն ունի։

Հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների իմացությունը հասարակության հեղափոխական վերափոխման անհրաժեշտ պայմանն է։ Սակայն միայն պրակտիկ գործունեության, սոցիալիստական հեղափոխության, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ընթացքում ժողովրդական զանգվածները կարող են խորապես ճանաչել ու յուրացնել հեղափոխական տեսությունը, համոզվել դրա ճշմարտացիության մեջ։

Նախահեղափոխական ժամանակաշրջանում Ռուսաստանի ժողովրդական զանգվածների փորձը նրանց հանգեցրեց այն համոզմանը, որ աղքատությունից ու իրավազրկությունից դուրս գալու ելքը ոչ թե ռեֆորմներն են, այլ հեղափոխական պայքարը. «...բնակչության լայն մասսաները,— նշում է Լենինը,— III Դումայի հնգամյա գոյության ժամանակամիջոցում ավելի ու ավելի են համոզվում, որ նա ցանկություն չունի, անընդունակ և անզոր է որևէ բան անել ժողովրդի լայն մասսաների դրության բարելավման համար, և որ նրա մեջ գլխավորող կուսակցություններն ունեն հակաժողովրդական բնույթ» (Երկեր, հ. 17, էջ 562)։

Ստեղծված իրադրությունը մասսաներին համոզում է իրավունքների համար պայքարելու անհրաժեշտության մեջ, նրանց հանգեցնում հեղափոխական պայքարի, աշխատավորության հեղափոխական իշխանության ստեղծման անհրաժեշտության ըմբռնմանը։ Սակայն միայն ժողովրդական զանգվածների



փորձը միշտ չէ, որ կարող է հուշել ծանր վիճակից, աղքատությունից ու իրավազրկությունից դուրս գալու ճիշտ ելք, ոչ միշտ կարող է հանգեցնել հեղափոխական գործունեության, որը աշխատավորությանը շահագործումից ազատագրելու միակ ճիշտ ուղին է։ Հայտնի է Լենինի այն դրույթը, որ բանվորական տարերային շարժումը կարող է ծնել միայն տրեդյունիոնիստական և ոչ թե սոցիալիստական գիտակցություն։ Քաղաքի ու գյուղի աշխատավորությունը դարեր շարունակ համոզված էին, որ հարուստները նրանց թշնամիներն են, սակայն, չէին հանգել այն համոզման, որ անհրաժեշտ է կազմակերպված քաղաքական պայքար մղել ոչ թե առանձին շահագործողների դեմ և ոչ էլ միայն իր այսօրվա տնտեսական վիճակը բարելավելու համար, այլ շահագործումը ծնող ողջ հասարակական-տնտեսական սիստեմի դեմ։ Դրա ըմբռնման արդյունքը եղավ այն, որ սոցիալիզմը միացավ բանվորական տարերային շարժմանը, կոմունիստների կողմից պրոպագանդվող հեղափոխական տեսությունը զուգակցվեց ժողովրդական զանգվածների պրակտիկ փորձին։

Աշխատավորության պրակտիկ գործունեության և պրոպագանդայի զուգակցումը հնարավոր է դարձնում հեղափոխական համոզմունքների ձևավորումը։ Երբ քաղաքացիական պատերազմի տարիներին սոցիալիստական հեղափոխության ճակատագիրը մեծ չափով կախված էր այն բանից, թե ում է հարելու միջակ գյուղացիությունը՝ հեղափոխությա՞նը, թե՞ հակահեղափոխությանը, Լենինը գտնում էր, որ «...մենք պետք է ապացուցենք գյուղացիությանը, որ նա ուրիշ ելք չունի՝ կամ նա պետք է գնա բանվորների հետ, օգնի պրոլետարիատին, կամ նորից պետք է ընկնի կալվածատերերի իշխանության տակ» (Երկեր, հ. 30, էջ 650)։

Այսպիսով, համոզմունքների ձևավորման նախադրյալներից են ինչպես հասարակական պայմանները, որոնցից ժողովրդական զանգվածները համապատասխան փորձ են կուտակում, այնպես և սուբյեկտիվ գործոնը՝ կուսակցության կազմակերպչական ու պրոպագանդիստական գործունեությունը, երբ կուսակցությունը ժողովրդական զանգվածներին սեփական փորձի հիման վրա համոզում է, որ քաղաքական լոզունգները ճշմարտացի են։

Քննելով հեղափոխական պայքարի դիալեկտիկայի կողմերը, Լենինը ուսումնասիրել է նաև համոզման ու հարկադրման փոխհարաբերակցության հարցը։ Նա դրանք դիտել է ոչ թե որպես հեղափոխական ներգործման ու դաստիարակման երկու առանձին մեթոդներ, այլ մասսաների գիտակցության ու կամքի վրա ներգործման միասնական պրոցեսի միմյանց մեջ փոխներթափանցվող կողմեր։ Համոզելն ու հարկադրելը ոչ միայն լրացնում են միմյանց, այլև մեկը մյուսի իրականացման համար դառնում անհրաժեշտ պայման։

Համոզմունքը հաճախ լինում է որոշակի նյութական, հասարակական քաղաքական պայմանների ուղղակի հետևանքը։ Այն բովանդակում է հարկադրման նախադրյալն ու տարրը, չնայած այստեղ առկա չէ սուբյեկտիվ գործոնի անմիջական գործունեությունը, որը սովորաբար հանդես է գալիս հարկադրանքի իրագործողի դերում։ Եթե առանձին անհատներ կամ մարդկանց խմբեր համոզված են, որ տվյալ իրադրության պայմաններում հնարավոր է գործել միայն այս ձևով, ապա այդ համոզմունքը բխում է ոչ միայն գաղափարական շարժառիթներից, որոշվում ո՛չ թե աշխարհայացքով, իդեալով, բարոյական հատկություններով, մարդկանց հուզական հարաբերություններով ու ճաշակով, այլև շրջապատի իրականության, ստեղծված իրադրության, հասարակական ռեալ հարաբերությունների թելադրանքով։

*Համոզմունք նշանակում է խոր հավատ այս կամ այն հասարակական հարաբերությունների, տեսական դրույթների, քաղաքական լոզունգների, օրենքների, մտածելակերպի, վարքագծի նկատմամբ և այլն: Հասարակական առաջադիմության տեսակետից համոզմունքի բովանդակությունն ու նրա ձևավորման ուղիները հանդիսանում են այդ համոզմունքների արժեքի գնահատման չափանիշները: Դա հատկապես վերաբերում է դասակարգի, ազգի, ժողովրդական զանգվածների քաղաքական համոզմունքներին:*

*Կոմունիստական գաղափարների, ամբողջ աշխարհում սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի անխուսափելիության վերաբերյալ աշխատավորության մոտ կայուն համոզմունքների ձևավորումը կոմունիստական կուսակցության առաջնակարգ խնդիրն է: Ընդ սմին, շատ կարևոր է, որ դրանք լինեն կոմունիզմի նպատակի ու խնդիրների, նրա նվաճման ուղիների խոր գիտակցման ու պարզորոշ ըմբռնման արդյունք, որ մարդկանց կոմունիստական համոզմունքները բխեն հոգեկան ներքին պահանջներից, լինեն նրանց հոգեկան ողջ կյանքի բովանդակությունը: Կոմունիզմի համար խորթ են իդեալների ու կերպարների նկատմամբ կույր հավատը, այնպիսի համոզմունքները, որոնք խարսխված են ներշնչման, չգիտակցված ընկալման և մեքենայական սովորությունների վրա: Համոզմունքների ձևավորման այդ մեթոդները յուրահատուկ են շահագործող դասակարգեր ունեցող հասարակությանը: Բավական է հիշել կրոնական համոզմունքների բովանդակությունն ու ձևավորման ուղիները:*

*Սակայն կոմունիստական կուսակցությունը չի կարող միանգամից հասնել այդ նպատակին, քանի որ դա կախված է տնտեսության մեջ, հասարակական-քաղաքական հարաբերություններում արմատական վերափոխումներից, ինչպես նաև ժողովրդի կուլտուրական մակարդակի բարձրացումից: Դա պահանջում է ժամանակ, կազմակերպական, քաղաքական-գաղափարական և կուլտուր-դաստիարակչական մեծ աշխատանք: Բանվորների և գյուղացիների բազմամիլիոնանոց զանգվածները, նույնիսկ սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո, չեն կարող միանգամից գաղափարապես համոզված դառնալ, քանի որ տնտեսության մեջ, սոցիալական հարաբերություններում, հասարակական գիտակցության մեջ երկար ժամանակ մնում են կապիտալիստական անցյալի, դարերի ընթացքում կարծրացած մասնավոր սեփականատիրական, ինդիվիդուալիստական աշխարհըմբռնման տարրեր:*

*«Բանվորը երբեք հին հասարակությունից չինական պարսպով բաժանված չի եղել,— ասել է Լենինը:— Եվ նրա մոտ կապիտալիստական հասարակության տրադիցիոն հոգեբանությունից շատ բան է պահպանվել: Բանվորները կառուցում են նոր հասարակությունը, ոչ թե հին աշխարհի կեղտից մաքուր նոր մարդիկ դարձած, այլ մինչև ծնկները դեռ այդ կեղտի մեջ կանգնած: Պետք է լինում միայն երազել այդ կեղտից մաքրվելու մասին: Ամենախոր ուտոպիա կլիներ կարծել, թե այդ կարելի է անել անհապաղ» (Երկեր, հ. 28, էջ 552): Լենինը երբեք չէր կասկածում, որ այդ խնդրի իրագործման համար կոմունիստների ուժերը կբավարարեն: Նա վստահ էր, որ «...կարելի է (և պետք է) կոմունիզմը կառուցել մարդկային մասսայական նյութից, որը փչացրել են դարերի ու հազարամյակների ստրկությունը, ճորտատիրությունը, կապիտալիզմը, մանր մասնատված տնտեսավարությունը, շուկայում տեղ գրավելու, ապրանքի և աշխատանքի ավելի բարձր գնի համար մղվող ամենքը բոլորի դեմ պատերազմը» (*ПСС, т. 37, стр. *409):*

*Այդ խնդրի իրականացման առաջին և հիմնական պայմանը սոցիալիստական սկզբունքներով տնտեսության վերափոխումն է: Նոր, սոցիալիստական արտադրահարաբերությունների հաստատումը, կյանքի նյութական պայմանների բարեփոխումը բանվորներին ու գյուղացիներին համոզում են, որ կոմունիստական կուսակցության քաղաքականությունը խորապես ժողովրդական է: Լենինը նշում է, որ գյուղացիական վիթխարի զանգվածները հոժարակամությամբ դաշինքի մեջ մտան բանվոր դասակարգի հետ, ընդունեցին պրոլետարիատի ղեկավարությունը, որովհետև գյուղացիությունը «...համոզված էր, իր ճնշող մեծամասնությամբ անկուսակցական լինելով, որ այլ կերպ փրկություն չկա, բացի սովետական իշխանությունը պաշտպանելուց: Եվ նա այդ բանում համոզվեց, իհարկե, ո՛չ թե գրքույկներից, ո՛չ թե պրոպագանդայի միջոցով, այլ փորձով: Նրան՝ այդ մասսային, համոզեց քաղաքացիական պատերազմի փորձը, մասնավորապես մեր մենշևիկների ու էսեռների դաշինքը, որ ավելի ազգակից էր մանրգյուղացիական տնտեսության որոշ հիմնական գծերին: Այդ մանր սեփականատիրական կուսակցությունների դաշինքի փորձը կալվածատերերի և կապիտալիստների հետ, ինչպես նաև Կոլչակի և Դենիկինի փորձը համոզեցին գյուղացիական մասսային, որ ոչ մի միջին ճանապարհ հնարավոր չէ, որ սովետական ուղղագծության քաղաքականությունը ճիշտ է, որ պրոլետարիատի երկաթե ղեկավարությունը միակ միջոցն է, որը գյուղացուն փրկում է շահագործումից և բռնությունից» (Երկեր, հ. 31, էջ 628—629):*

*Գյուղացիական զանգվածները գնացին բոլշևիկների ետևից, սակայն, ոչ այն բանի շնորհիվ, որ այդ «անկուսակցական գյուղացիները», դարձան բոլշևիկներ, կոմունիզմի գաղափարական կուսակիցներ, այլ այն պատճառով, որ նրանք գործնականորեն համոզվեցին, որ միայն բոլշևիկները կարող են փոխել նյութական պայմանները հօգուտ գյուղացիների, վերացնել գյուղացիներին քաղցով ու բռնությամբ խեղդող կալվածատիրական ճնշումը:*

*Հասկանալի է, որ նման համոզմունքը դեռևս շատ հեռու է գաղափարական ներքին համոզվածությունից, նրանում դեռևս թույլ է գիտակցական կողմը: Նման համոզմունքը ներքին ու խոր դարձնելու, մարդկանց կոմունիստական գիտակցականության ոգով դաստիարակելու համար պահանջվում է երկարատև աշխատանք:*

*Քանի որ այն չի իրագործվել, անխուսափելի է հարկադրանքը բառիս ամենալայն իմաստով, անհրաժեշտ է հեղափոխական օրենքների և վարքի նորմերի հաստատում, որոնք, հակադիր լինելով սեփականատիրական հայացքներին ու սովորություններին, կրում են պարտադիր բնույթ: Լենինը նշում էր. «Մենք հարկադրանքից չենք հրաժարվում: Ոչ մի ողջամիտ բանվոր չի հասնի մինչև այնտեղ, որ ասի, թե հիմա կարելի է առանց հարկադրանքի կառավարվել...» (Երկեր, հ. 32, էջ 56): Եվ այնուհետև. «Պետությունը հարկադրանքի բնագավառ է: Խելագարություն կլիներ հարկադրանքից հրաժարվել, մանավանդ պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանում» (Նույն տեղը, էջ 108):*

*Սակայն սոցիալիստական պետության կողմից գործադրվող հարկադրանքըն արմատապես տարբերվում է շահագործողական հասարակարգում գործադրվող հարկադրանքից (որտեղ այն հավասարվում է բռնության) ինչպես բովանդակությամբ, այնպես էլ իրագործման ձևերով: Սոցիալիզմի պայմաններում հարկադրանքը միայն բռնություն չէ, այն նաև կազմակերպական աշ-*

խատանքի անհրաժեշտ ու պարտադիր մեթոդ է, որը ո՛չ միայն հակադիր չէ համոզմանը, այլև սերտորեն առնչվում է դրա հետ։

«Պրոլետարիատի դիկտատուրան հաջող եղավ, որովհետև կարողանում էր զուգակցել հարկադրանքը համոզելու հետ,— գրում էր Լենինը։— Պրոլետարիատի դիկտատուրան չի վախենում հարկադրանքից և պետական հարկադրանքի կտրուկ, վճռական, անխնա արտահայտությունից, որովհետև առաջավոր դասակարգը, որն ամենից ավելի է ճնշված եղել կապիտալիզմի կողմից, իրավունք ունի այդ հարկադրանքն իրականացնելու, որովհետև նա իրականացնում է այն հանուն բոլոր աշխատավորների և շահագործվողների շահերի, և հարկադրանքի ու համոզելու այնպիսի միջոցներ ունի, որ չուներ նախկին դասակարգերից ոչ մեկը, թեև նրանք պրոպագանդայի և ագիտացիայի անհամեմատ ավելի մեծ նյութական հնարավորություն ունեին, քան մենք» (Երկեր, հ. 31, էջ 628)։

Լենինը հարկադրման ու համոզման համակցումը դնում էր ոչ թե որպես մեխանիկորեն միմյանց լրացնող առանձին մեթոդներ, առավել ևս ոչ ներգործման մի մեթոդը մյուսով փոխարինելու միջոց, այլ որպես մի միասնություն։ Շահագործողական դասակարգերի կողմից աշխատավորական զանգվածների նկատմամբ գործադրած հարկադրանքը վերածվում էր բռնության, որովհետև ժողովրդական զանգվածները վստահ չէին, թե իշխող դասակարգի գործունեությունը ճշմարտացի է. նրանք, ընդհակառակը, համոզված էին, որ ունևորների իշխանությունը նրանց ոխերիմ թշնամին է, որ իշխանության գործունեությունը հակադիր է աշխատավոր ժողովրդի շահերին։ Ստրկատիրական, ֆեոդալական և կապիտալիստական հասարակարգերում հարկադրանքն առաջ էր բերում ակտիվ դիմադրություն՝ խռովություններ, ապստամբություններ ու հեղափոխություններ։

Սոցիալիզմի պայմաններում հարկադրանքը չի հանգում սոցիալական կոնֆլիկտների, այն իրագործվում է հօգուտ սոցիալիզմի, քանի որ հիմնվում է սոցիալիստական ապրելակերպից բխող, կոմունիստական գաղափարներով հարստացած համոզմունքների վրա։ Այդ առիթով Լենինը նշել է, որ «Ապագայի յուրաքանչյուր կուսակցության առաջին խնդիրն է՝ համոզել ժողովրդի մեծամասնությանը, որ նրա ծրագիրն ու տակտիկան ճիշտ է» (Երկեր, հ. 27, էջ 286)։

Հարկադրանքը պետք է կիրառվի ո՛չ միայն այն դեպքում, երբ չի ներգործում համոզմունքի մեթոդը, այլև այն բանից հետո, երբ մասսաներին համոզելու համար կատարված է բավարար աշխատանք։ «Ամենից առաջ մենք պետք է համոզենք և ապա հարկադրենք։ Մենք պետք է, ինչպես էլ որ լինի, նախ համոզենք և ապա հարկադրենք» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 259)։

Լենինյան դիալեկտիկական մոտեցումը հիմնված էր ռեալ իրականության, ժողովրդական զանգվածների հոգեբանության խոր իմացության վրա, որը համապատասխանում էր աշխատավորության շահերին և փայլուն կերպով հաստատվեց սոցիալիստական կարգերի հաստատման պրակտիկայում։

Ժողովրդական զանգվածների հոգեբանությունը չիմանալն ու չհասկանալը լենինիզմի թշնամիներին թույլ չէին տալիս ճիշտ ըմբռնելու սոցիալիզմի պայմաններում համոզման ու հարկադրման միջև գոյություն ունեցող հարաբերակցությունը։ Հանրագումարի բերելով գյուղացիների նկատմամբ համոզման ու հարկադրման ճիշտ զուգակցման հարցը, Լենինը նշում էր, որ մենք «...ճիշտ և հաջող էինք կիրառում հարկադրանքը, երբ կարողանում էինք նախապես



համոզման բազա ստեղծել նրա համար։ Ես պետք է ասեմ, որ այս կարևորագույն նկատառումը բացարձակորեն հաշվի չեն առել Տրոցկին ու Բուխարինը» (Երկեր, հ. 32, էջ 20)։

Խոսելով սոցիալիզմի կառուցման գործում միջակ գյուղացիներին կուսակցության կողմը ներգրավելու մասին, Լենինը գրում էր. «Եվ միայն այն պատճառով, որ մենք կարողացանք դրանում համոզել գյուղացուն, միմիայն այդ պատճառով մեր հարկադրանքի քաղաքականությունը, որ հիմնված է այդ հաստատուն և անպայման համոզման վրա, այդպիսի հսկայական հաջողություն ունեցավ» (Երկեր, հ. 31, էջ 629)։ Առանց համոզման հիմքի հարկադրանքի գործադրումը կարող է անցանկալի հետևանք ունենալ։

Հարկադրումը կատարում է նաև իր ուղղակի ֆունկցիան այն անձանց նկատմամբ, որոնք չեն ենթարկվում համոզման ներգործությանը։ Միանգամայն ճիշտ են այն հեղինակները, որոնք գտնում են, որ սոցիալիզմի պայմաններում հարկադրանքը անհրաժեշտ միջոց է համոզման ազդեցությանը չենթարկվող անձանց նկատմամբ։

Համոզումը, որը չի բխում ներքին պահանջներից, դեռևս չի նշանակում բարձր գիտակցականություն և այդ պատճառով չի ապահովում մարդկանց ճիշտ վարքագիծը։ Այդ պարագայում հարկադրանքը կարող է հանդես գալ համոզման մեթոդին հակադիր։

Սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործին ժողովրդական լայն զանգվածների ակտիվ մասնակցությունն ապահովելու համար, բավական չէ ոչ միայն հարկադրանքը, այլև նույնիսկ այնպիսի համոզմունքը, որը դեռևս չի դարձել մարդկանց հոգեկանի հիմնական բովանդակությունը, նրանց հոգեկան պահանջմունքը, կյանքի ու աշխատանքի հիմնական նպատակը։ Առանց հարկադրանքի միջոցների, հենց մարդկանց ցանկության ու կամքի, ներքին պահանջմունքի վրա հիմնված այդպիսի համոզմունքները ձևավորվում են աշխատավորների կոմունիստական գիտակցության բարձրացման, կոմունիստական շինարարության պրոցեսում։

Լենինը նշում էր, որ «Կոմունիզմն սկսվում է այնտեղ, որտեղ երևան է գալիս շարքային բանվորների անձնվեր, ծանր աշխատանքը հաղթահարող հոգսը՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, պահպանելու յուրաքանչյուր փութ հացը, ածուխը, երկաթը և այլ մթերքներ, որոնք հասնում են ոչ թե անձնապես աշխատողներին, և ոչ թե նրանց «մերձավորներին», այլ «հեռավորներին», այսինքն՝ ամբողջ հասարակությանը՝ տասնյակ և հարյուրմիլիոնավոր մարդկանց, որոնք սկզբում միավորվում են մեկ սոցիալիստական պետության մեջ, հետո Սովետական Հանրապետությունների Միության մեջ» (Երկեր, հ. 29, էջ 524)։

Պարզ է, որ սոցիալիստական սեփականության նկատմամբ այդպիսի վերաբերմունքը գաղափարական համոզվածություն է, ուր բացառվում է որևէ հարկադրանք։ Այդպիսի համոզմունքների ձևավորումը երկարատև ու բարդ պրոցես է, որը տեղի է ունենում հասարակական-տնտեսական, քաղաքական և գաղափարական բոլոր գործոնների ներգործությամբ։

Արտադրաուժերի զարգացման, սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործման, մասսաների կուլտուրական ու գիտակցական մակարդակի բարձրացման հետ միասին, փոխվում է նաև սոցիալիստական պետության պրակտիկ գործունեության մեջ համոզմունքի և հարկադրանքի հարաբերակցությունը։ Բնական է, որ սովետական իշխանության լինելության

*ու ամրապնդման ժամանակաշրջանում, երբ դեռևս չէր հաղթահարվել շահագործողական դասակարգերի դիմադրությունը, իսկ մանրբուրժուական խավերը երկրում մեծամասնություն էին, հարկադրման մեթոդը կարևոր նշանակություն ուներ։ Հետագայում, երբ վերացվեցին շահագործողական դասակարգերի մնացուկները, նվազեցին մարդկանց գիտակցության մեջ ու վարքագծում մասնավոր սեփականատիրական, ինդիվիդուալիստական մնացուկների դրսևորումները, հարկադրանքի դերը փոքրացավ։ Որքան բարձր է աշխատավորության գաղափարական համոզվածությունը, այնքան քիչ է զգացվում հարկադրանքի անհրաժեշտությունը։ «Կոմունիզմին անցնելու պրոցեսում,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— գնալով էլ ավելի է աճում բարոյական սկզբունքների դերը հասարակության կյանքում, ընդլայնվում է բարոյական գործոնի ազդեցության ոլորտը և համապատասխանորեն նվազում է մարդկանց փոխհարաբերությունների վարչական կարգավորման նշանակությունը։ Կուսակցությունը կխրախուսի քաղաքացիների գիտակցական ինքնակարգապահության այն բոլոր ձևերը, որոնք տանում են դեպի կոմունիստական համակեցության հիմնական կանոնների ամրապնդում ու զարգացում (ՍՄԿԿ ծրագիրը և կանոնադրությունը, Երևան, 1964 թ. էջ 145)։*

*Սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործում աշխատավորության ուժերի հաջող մոբիլիզացման համար կարևոր է մասսաներին համոզել կոմունիստական կուսակցության քաղաքականության ճշմարտացիության մեջ։ Նման համոզմունքի ձևավորման համար կուսակցական կազմակերպությունները ելնում են ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներից, որտեղ ասված է. «Անհրաժեշտ է հետագայում ևս պատանիների ու աղջիկների մեջ դաստիարակել գաղափարական խոր համոզվածություն ու նվիրվածություն կուսակցության գործին, սեր դեպի սոցիալիստական հայրենիքը, պատրաստակամություն պաշտպանելու այն, դաստիարակել սոցիալիզմի երկրների աշխատավորների հետ եղբայրական բարեկամության զգացմունք, բոլոր շահագործվողների ու ճնշվողների հետ ինտերնացիոնալ համերաշխություն» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, էջ 312, Երևան, 1967)։*

*Այժմ, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախօրեին, կուսակցությունը վիթխարի հաջողություններ է ձեռք բերել միլիոնավոր աշխատավորների շրջանում կոմունիստական բարձր գաղափարները համոզմունքների վերածելու գործում, դա գալիք հաջողությունների երաշխիքներից մեկն է։*

# ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՊԵՍ ՊԱՐԶ

Ա. Ց. ՍԻՄՈՆՅԱՆ

Սովետական մարդկանց համար բարոյական կատարելության, համեստության իդեալական օրինակ է Վ. Ի. Լենինի հարուստ ու բովանդակալից կյանքը:

Նա, ով գրականությունից ծանոթ է Լենին-աքսորականի, Լենին-տարագրի կոհաբերություններով լի կյանքին, ով եղել է Սմոլնիում ու Կրեմլում Իլյիչի զբաղեցրած բնակարաններում՝ կիմանա, թե որքա՜ն համեստ է ապրել այդ մեծ մարդը: Սովետական կառավարության ղեկավարի բարձր պոստն անգամ Լենինի անձնական կյանքում ու կենցաղում էական փոփոխություններ չմտցրեց: Ինչպես տարագրության տարիներին, նրա ընտանիքը ապրում էր համեստ ու պարզ: Կրեմլում զբաղեցրած ոչ մեծ սենյակը Իլյիչի և՛ ննջարանն էր, և՛ աշխատասենյակը:

Համեստ ու պարզ էր նրա հագուստը: Լուսանկարներում, Մոսկվայի Վ. Ի. Լենինի կենտրոնական թանգարանում բոլորը տեսել են Լենինի հնամաշ, գորշ կեպկան, ականջակալներով մորթե գլխարկը, աշնանային ու ձմեռային կիսամաշ վերարկուներն ու գրպանի ժամացույցը:

Խոսելով Լենինի կուսպ ապրելակերպի մասին, Մաքսիմ Գորկին իր հուշերում գրում է. «1919 թ. սովի ծանր տարում Լենինն ամաչում էր ուտել այն մթերքները, որ գավառից նրան ուղարկում էին ընկերները, զինվորներն ու գյուղացիները: Երբ նրա անհարմարավետ բնակարանը ծանրոցներ էին բերում, նա կնճռոտվում էր, շփոթվում և շտապում ալյուրը, շաքարը, յուղը բաժանել հիվանդ կամ թերսնումից թուլացած ընկերներին: Մթերային ծանրոցները սովորաբար հանձնում էր մանկատներին» (Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, 1-ին մաս, էջ 505):

Նրանք, ովքեր երջանկություն են ունեցել աշխատելու Վլադիմիր Իլյիչի հետ, ամենից առաջ նշում են նրա անսովոր պարզությունը, անմիջականությունը: Լենինի շրջապատում բացառված էին սառը, պաշտոնական հարաբերությունները, շողոքորթությունը, ստորաքարշությունն ու քծնանքը: Այդ առթիվ Ա. Ֆոտիևան գրում է. «Դառնալով Ժողկոմսովետի նախագահ, Լենինը մնաց հենց այնպես հասարակ ու համեստ, ինչպես տարագրության մեջ ապրելիս: Այդպես էլ համեստ էր նրա կենցաղը: Երբեք կոնֆլիկտ չի ստեղծվել Լենինի անձնական կյանքի և այն իդեաների միջև, որ նա քարոզում էր: Անձնականը և հասարակականը ներդաշնակորեն զուգորդվում էին նրա մեջ» (Նույն տեղը, 2-րդ մաս, էջ 275):

Իր շրջապատի մարդկանց նա հմայում էր պարզությամբ, մարդամոտությամբ, համեստությամբ: Նրա վարվելաձևի մեջ շինծու, ցուցադրական ոչինչ չկար: Այդ արժանիքները, ինչպես և կենսասիրությունը բնականից ներհատուկ էին Լենինին: Յուրաքանչյուր մարդու հետ, անկախ նրա դիրքից, Լենինը վերաբերվում էր ինչպես հավասարը հավասարի: Նրա ոչ մեծ քարտուղարությունում չէր լսվում՝ «Լենինը կարգադրել է» կամ «Լենինը հրամայել է» արտահայտությունները. նա միայն խնդրում էր:

Լենինի պարզությունը արտահայտվում էր նաև նրանում, որ նա ժողովի, խորհրդակցության նիստերի էր գնում վաղ և մի անկյուն քաշված զրուցում էր մարդկանց հետ:

«18 թվականի աշնանը,— գրում է Մ. Գորկին,— Սորմովոյի բանվոր Դմիտրի Պավլովին հարցրի, թե իր կարծիքով, ո՞րն է Լենինի ամենաբնորոշ գիծը:

— Պարզությունը: Պարզ է, ինչպես ճշմարտությունը:

Նա այդ ասաց որպես լավ կշռադատված, վաղուց վճռված բան» (նույն տեղը, 1-ին, մաս, էջ 486):

Բանվորները, գյուղացիները, կուսակցական ու սովետական աշխատողները հաճախ էին այս կամ այն հարցով դիմում Լենինին, իսկ նա սիրով լսում էր նրանց, խորհուրդներ տալիս, բայց միաժամանակ ավելացնում. «Այս կարծիքը կարող ենք հաշվի առնել, որպես կուսակցության անդամներից մեկի հայտնած կարծիք: Ոչ ավելին...»:

Լենինն իր կարծիքը չէր պարտադրում ուրիշներին նաև Ժողկոմսովետի կամ աշխատանքի պաշտպանության խորհրդի նիստերում: Երբ այս կամ այն հարցը քննարկելիս բուռն վիճաբանություններ էին ծագում, նա, հանգամանորեն հաշվի առնելով բոլոր «թեր» ու «դեմ» կողմերը, երբեմն ասում էր. «Եկեք որոշումը հետաձգենք մինչև հաջորդ նիստը: Հարկավոր է խորհրդակցել Մարքսի հետ» (Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, 2-րդ մաս, էջ 160):

Լենինը խիստ դատապարտում էր կոմունապարծներին, ցուցամոլներին, ինքնագովությամբ զբաղվողներին, ամբարտավան գոռոզամիտներին: Լինելով կուսակցության առաջնորդը, սովետական կառավարության ղեկավարը, նա երբեք զգացնել չէր տալիս իր գրաված բարձր դիրքը, վճռականապես մերժում էր իրեն գովաբանելու, կուսակցության ու ժողովրդի առջև կատարած ծառայությունները դրվատելու փորձերը:

Կուսակցության IX համագումարի պատգամավորները պատմում են, որ նիստերից մեկում նրանք առաջարկում են Վ. Ի. Լենինի ծննդյան մոտալուտ 50-ամյակի առթիվ մեծարանքի խոսքեր ասել նրան: Սակայն Լենինը վճռականապես առարկում է և իվերջո հեռանում դահլիճից: Այնուհետև հեռախոսով պահանջում է նախագահությունից վերջ դնել այդ ամենին:

Ահա և մի ուրիշ օրինակ: 1920 թվականի ապրիլի 23-ին ՌԿ(բ)Կ Մոսկվայի կոմիտեն Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 50-ամյակի առթիվ մեծ ժողով էր հրավիրել: Հանդիսավոր մասից հետո Մոսկվայի կոմիտեի քարտուղար Ալեքսանդր Մյասնիկյանը հեռախոսով կապվում է Լենինի հետ և խնդրում ժողով գալ: Լենինը հրաժարվում է, ասելով, որ իր մասին որևէ ճառ լսել չի կամենում: Բայց երբ հայտնում են, թե նրան հրավիրում են համերգային բաժնին, ուր ներկա են լինելու իր սիրած արտիստները, համաձայնում է գնալ: «Մենք խմբովին դուրս եկանք նրան ընդառաջ,— գրում է Մյասնիկյանը,— շրջապատեցինք և բերեցինք բեմ, իսկ հավաքված մասսան, անսպասելիորեն տեսնելով Լենինին, անսպասելիորեն, որովհետև գիտեր, որ նա չի գա իր «մեծարման» երեկոյին, նրա պատվին ամենաջերմ, բուռն օվացիա սարքեց և ստիպեց մի քանի խոսք ասել, որոնք նա նվիրեց մեր կուսակցությանը» (Հին բոլշևիկների հիշողությունները, Հայպետհրատ, 1958 թ., էջ 13): Այդ, եթե կարելի է այսպես ասել, «հոբելյանական» ճառում Լենինը պատմում է իր հիշողությունները հեղափոխական ընդհատակի, կուսակցության, հին բոլշևիկների կյանքի մասին, միաժամանակ նշում, որ բոլշևիկներն առանձին-առանձին և որպես ամբողջական քաղաքական կուսակցություն պետք է հեռու լինեն մեծամտելու, գոռոզանալու վտանգից:

Չի կարելի չհիշատակել մի քանի դրվագ ևս, որոնք վառ կերպով ցույց են տալիս Լենինի բացառիկ համեստությունը: Վլադիմիր Իլյիչը գիտեր լեզուներ. նա գրում, կոմինտերնի կոնգրեսներում ելույթ էր ունենում և պատվիրակների հետ խոսում էր գերմաներեն, անգլերեն ու ֆրանսերեն, կարդում էր լեհերեն, իտալերեն, հասկանում չեխերեն ու շվեդերեն: Հակառակ դրան, մի հարցաթերթիկի այն հարցին, թե «Ի՞նչ լեզուներ գիտեք», նա պատասխանել է. «Անգլերեն, գերմաներեն, ֆրանսերեն՝ վատ, իտալերեն՝ շատ վատ»: 1919 թվականին, ընդհանուր ռազմական ուսուցման օրը, Լենինը, նկատելով, որ կինոօպերատորը անվերջ իրեն է նկարում, դառնում է նրան և ասում. «Ինձ քիչ նկարեցեք, ընկեր, իսկ ավելի շատ նկարեցեք նրանց, ովքեր ինձ լսելու են՝ ռազմաճակատ մեկնող ընկերներին» (Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, 2-րդ մաս, էջ 483):

Լենինը երբեք չէր խախտում ամենքի համար սահմանված կարգը և այն իր համար ևս պարտադիր էր համարում: Այսպես, դիմելով Ռումյանցևի թանգարանի գրադարանին (այժմ Վ. Ի. Լենինի անվան պետական գրադարան), խնդրելով իրեն ուղարկել փիլիսոփայական, հունարեն առավել լիակատար բառարաններ, հունական փիլիսոփայության պատմությանը վերաբերող գրքեր, Վլադիմիր Իլյիչը գրել է. «Եթե, ըստ կանոնի, տեղեկատու հրատարակությունները տուն չեն տրվում, ապա հնարավոր չէ՞ արդյոք ստանալ երեկոյան, գիշերը, երբ գրադարանը փակվում է: Առավոտյան կվերադարձնեմ» 2-րդ մաս, էջ 483):

Ժամանակակիցների հուշերից իմանում ենք, թե Իլյիչին որքա՜ն մեծ ուրախություն էին պատճառում աշխատավորներից ստացված նամակները և թե նա ինչպիսի հարգանքով էր վերաբերվում նրանց խնդրանքները կատարելուն: Թերթեք *Աշխատավորների նամակները Վլադիմիր Իլյիչ Լենինին* ժողովածուն և դուք կտեսնեք, որ նրանում զետեղված հարյուրավոր նամակներից և ոչ մեկը Իլյիչն անպատասխան չի թողել: Նույնիսկ ծանր հիվանդության ժամանակ նա չէր խախտում այդ սկզբունքը:

Թե որքան կզգայուն, կարեկից վերաբերմունք ուներ Իլյիչը աշխատավորների նկատմամբ, երևում է Կրեմլի պարետին ուղղված նրա հետևյալ երկտողից. «...մեկ անգամ չէ, որ Կրեմլի պարետից պահանջել եմ և մեկ էլ պահանջում եմ, որպեսզի այնպիսի կարգ ստեղծվի, որի ժամանակ *ինձ մոտ եկողները, թեկուզ և առանց որևէ անցաթղթի,* հնարավորություն ունենան, *առանց ամենափոքր ուշացման, թե՛ Կրեմլի դարպասների և թե Ժողկոմսովետի մուտքի մոտից հեռախոսով կապվելու* իմ քարտուղարության և 3-րդ հարկի կոմուտատորի հեռախոսավարուհիների հետ:

Ձեզ ի ցույց եմ դնում, որ դուք իմ պահանջներին անփույթ եք վերաբերվում» (Ленинский сборник, т. XXIII, стр. 232):

Լենինի կյանքն ու գործը, նրա անհատականությունը, բարոյական բարձր հատկանիշները կոմունիստական իդեալների մարմնացումն են և իրական արտահայտությունը:

* * *

Սովետական Միության աշխատավորները, ուսումնասիրելով մեծ առաջնորդի կյանքն ու գործունեությունը, ձգտում են ապրել լենինաբար: Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի նորմերը արտահայտում են մեր կյանքում արմատավորված հասարակական ու անհատական հարաբերությունների էությունը:

Մեր ապրելակերպին խորթ են հին աշխարհի բարքերը, սովորույթները: Իրավ, սովետական մարդը նոր մարդ է: Նրա էությանը օտար են մնապաշտությունը, քաղքենիական մեծամտությունը, եսասիրությունը: Սովետական մարդուն բնորոշ են ստեղծագործական սխրանքը, անշահախնդրությունը, աշխատանքային հերոիկան:

Սակայն մեզանում դեռ լրիվ չեն հաղթահարված հին աշխարհի մտածողությունը, հոգեբանությունը: Մեր միջավայրում էլ կան մարդիկ, որոնք տառապում են փառամոլության ու անհամեստության տենդով: Այդպիսի մարդիկ ինքնահավան են, հակված իրենց ամենափոքր հաջողություններից զոռոզանալու, ինքնագոհ կեցվածք ընդունելու, շրջապատից իրենց բարձր դասելու: Նրանք հեշտությամբ կանգնում են աչքակապության ճանապարհի վրա:

Անհամեստ մարդիկ ընդունակ չեն տեսնել ու վերացնել սեփական սխալները, սիրում են հանդես գալ սովորեցնողի դերում: Առօրյա խոսակցության ժամանակ նրանք հաճախ են գործածում «ես» դերանունը. «Ես ցուցում տվեցի», «Ես ասացի», «Ես նշեցի», «Ես կարգադրեցի» և այլն:

Մեծամտանալն առանձնապես վտանգավոր է ղեկավարի համար: Մի առիթով Միխայիլ Իվանովիչ Կալինինը ասել է. եթե դու բանվորի հետ խոսելիս թեկուզ մի ժեստով, ձայնի ելևէջով, աննշան, պատահական փրազով հասկացնել ես տալիս, որ քեզ նրանից խելոք ես համարում, ավելին գիտես— ապա կորար: Բանվորը, և ընդհանրապես շարքային մարդը, չի սիրում նրանց, ովքեր իրենց բարձր են դասում:

Ի դեպ, մենք հաճախ ինքներս ենք ծնում զոռոզամիտներ: Բավական է հիմնարկությունում, ձեռնարկությունում որևէ մեկին գովեն կամ լավ աշխատանքի համար հրամանով նշեն, որ գործի դրվի գովաբանության «մեքենան» և նրանց վերագրվեն «բացառիկ», «անկրկնելի» հատկություններ:

Սովետական հասարակությունը միշտ վճռաբար պայքարել ու պայքարում է ինչպես անհամեստության, այնպես էլ բարոյական մյուս արատների դեմ:

Սովետական մարդկանց համար բարոյական վսեմ հատկանիշներ մարմնացնող բարձր տիպար է Վ. Ի. Լենինի պայծառ կերպարը, որը մեր ժողովրդի, կոմունիստական կուսակցության գաղափարական դրոշն է:



# ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐ ԱՌԱՋՆՈՐԴԻ ԾՆՆԴԱՎԱՅՐՈՒՄ

Բ. Հ. ՎԵՐԴՅԱՆ

(ԳՐՈՂԻ ՀՈՒՇԱՏԵՏՐԻՑ)

Ծովածավալ Վոլգան այստեղ նեղանում է ու հոսում դանդաղ-դանդաղ: Ուլյանովսկը բարձունքի վրա է, և այնտեղից ոչ միայն երևում է ջրերի սառնավուն արծաթը, այլև հեռու-հեռուները, երևում է ողջ աշխարհը:

Այդ ամենն սկսվում է հյուրանոցից: Սենյակում նստել չի լինում, միջանցքից ներս են թափանցում զրնգուն ծիծաղն ու կոկորդային ձայներ, և ես հաճույքով ընդառաջ եմ ելնում: Թխադեմ երիտասարդներ են՝ 20—25 տարեկան, հաղթանդամ, ջլապինդ, աչքերը՝ վառվող ածուխներ: Ճեմասրահի բազմոցի վրա երեք գլուխ խոնվել են մի գրքի շուրջ և երեք կոկորդ ողողացնում են ռուսական փափուկ հնչյունները: Սենյակից դուրս է գալիս սպիտակ, երկար խալաթով մի տղա, հետո ուրիշներն են երևում, անպայման գրքերով, անպայման թուղթ ու գրիչով, և միջանցքը թնդում է ձայներից: Ծանոթանում ենք. ես՝ արաբերեն մի երկու բառ, նրանք՝ ռուսերեն մի երկուսը, և մենք արդեն իսկական հարևաններ ենք: Չգիտեմ ինչպես է այժմ վիճակը Սուդանում, բայց համոզված եմ, որ այդ երկրի բախտը, այդ երկրի վաղն այս կենսախինդ երիտասարդների ձեռքին է: Եվ նրանք համոզված են դրանում:

Հետո մի հնդկուհի է երևում ազգային բնորոշ շրջազգեստով, թուխ-դեղնավուն դեմքով, ճակատին կապտավուն մի խալ: Մի երիտասարդ այնպես զգույշ է քայլում նրա կողքով, ասես ոչ թե կնոջ, այլ անցնող օրվան է ուղեկցում: Ովքե՞ր են, եթե ես իմանայի հնդկերեն... Չեմ համառում ականջներիս. նրանք մոտենում են հերթապահին, խոսում մաքուր ռուսերենով:

— Ովքե՞ր էին,— նրանց հեռանալուց հետո հարցնում եմ հերթապահուհուն:

— Ապագա բժիշկներ, սովորում են Լումումբայի անվան համալսարանում և հիմա այցի են եկել մեր քաղաքը:

Այս քաղաքում եկեղեցու զանգերը ղողանջ չեն ծորում կապույտ բարձունքից և աղոթք չկա: Բայց գալիս են այստեղ Միության բոլոր ծայրերից, գալիս են աշխարհի բոլոր ծագերից՝ տարբեր գույնի, դավանանքի, կամ առանց դավանանքի, բայց մի մեծ դավանանքի զգացողությամբ:

Լենինի փողոց, 58: Այստեղ են անցել Վ. Ի. Լենինի մանկության տարիները: Եվ այս համեստ փայտաշեն տունը ձգում է հազարավոր ու միլիոնավոր մարդկանց, ում համար թանկ է այդ անունը: Ահա մի կին թևանցուկ է արել երկու տղամարդու, և ընդարձակ բակում հնչում է նրանց անկաշկանդ ծիծաղը: Ծանոթանում ենք. կինը՝ Աննա Տրոֆիմովնան, ռուս է, Վիկտոր Ցախարատդինովը նրա ամուսինն է, թաթար, երրորդը՝ Դորժի Նիմաևը, բուրյաթ է, հեռավոր Ուլան-Ուդեից, օդաչու: Եվ եղջերուի սահնակից մինչև ժամանակակից ինքնաթիռների ղեկը հասած մարդը եկել է Ուլյա-

նովսկ, որովհետև մի օր պիտի գար անպայման:

— Հրաշալի ընկերներ ունեմ Կովկասից՝ օդաչուներ Գառնիկ Միրաքյանը, Ցամալաշվիլին...

Ինչպե՞ս է նա՝ անասնապահ բուրյաթի որդին, դարձել այդքան հարուստ իր ընկերներով, և ինչպես են տայգայի հազիվ նշմարվող արահետները վերածվել լայն ճամփաների՝ մինչև Կովկաս, մինչև Բալթիկա և դեռ շատ ու շատ հեռուները: Իհարկե, ոչ միայն ինքնաթիռով: Եվ դրա համար է նա եկել Ուլյանովսկ: Հավանաբար նա հատուկ չի էլ զգացել դա, բայց եկել է, որովհետև պիտի գար մի օր:

Ֆախրատդինովները անչափ ուրախանում են, երբ իմանում են, որ Երևանից եմ.

— Հրաշք քաղաք է, ինչի՞ հետ կարելի է համեմատել,— ասում է Աննա Տրոֆիմովնան:

— Եղե՞լ եք:

— Երկու անգամ, ախր մեր տղան սահմանապահ է: Արաքսի ափին:

Այս հանդիպումները պիտի լինեին, իհարկե, Ուլյանովսկում: Եվ նոր ծանոթությունն Իլդար Խասանովի հետ: Սա էլ ուզբեկ է, Տաշքենդից: Եկել է ամբողջ ընտանիքով՝ մայրն է, կինը, երեխաները: Իլդարը տաքսու վարորդ է, կինը՝ գյուղատնտես: Մենք երբեք իրար չենք տեսել, բայց ինչ-որ չափով վաղուց գիտենք իրար:

— Իսկ դուք գիտե՞ք, որ Տաշքենդում Հայկական փողոց ունենք: Ինչ գեղեցիկ շենքեր են՝ վարդագույն տուֆից: Երբ մի քիչ ուզում ենք լայն շնչել, ասում ենք... Գնանք հայկական տները:



Եվ այդպես նաև ուկրաինական, վրացական, լատվիական փողոցներ...

Իսկ այս մեկը: Պատանիներ են՝ փոքրիկ, նեղ, կկոցած աչքերով (ասես աշխարհը ավելի լայն տեսնելու համար): Եկել են հեռավոր Յակուտիայից, տունդրայից: Թողել են իրենց եղջերվալույծ սահնակները և իրենց ուսուցչի հետ թռել հասել են Ուլյանովսկ: Աշակերտներ են: Զրուցում ենք:

— Ի՞նչ պիտի դառնաս:

— Երկաթուղային ինժեներ,— ասում է շեղաչք, չարաճճի այդ տղան:

— Դո՞ւ:

— Աշխարհագրության ուսուցիչ, սիրում եմ...

Գիտեմ, թե ինչ ես սիրում, փոքրիկ: Հիշում եմ մի քանի օր առաջ Լենինգրադի օդանավակայանում եղած անակընկալ հանդիպումը: Երկու գեղեցկադեմ օրիորդներ իրենց վրա են բևեռել շատերի ուշադրությունը: Բարեկիրթ շարժուձև, հմայիչ ու նուրբ խոսք, ժպիտ... Որտեղի՞ց կարող են լինել: Հանկարծ խոսում են մաքուր ռուսերենով, և պարզվում է, որ Յակուտիայից են, սովորում են Լենինգրադի կուլտուրայի ինստիտուտում...

Ահա թե ինչո՞ւ են մարդիկ գալիս Ուլյանովսկ: Ահա թե ինչու Օդեսայից երկար ճանապարհ են կտրել այս դպրոցականները՝ իրենց հետ բերելով մի բուռ հող Անհայտ զինվորի շիրիմի մոտից...

Բակը լցվում է մոտոցիկլետների հնդյունով, հայտնվում են առողջ, հաղթանդամ, արևից թրծված դեմքերով քսան-քսանհինգ երիտասարդներ, երկաթյա գլխանոցներով, կրծքի ամբողջ երկարությամբ՝ լայն կարմիր ժապավեններ: Մոտոցիկլետներով եկել են Գորկու մարզի Արզամաս քաղաքից, եղել են Սարատովում, Յազիկովոյում, հասել Ուլյանովսկ և դեռ պիտի լինեն Կազանում, Չեբոկսարայում, Գորկիում: Ամենուր նրանք հանդիպումներ են ունենում, Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ զրույցներ կազմակերպում, պատմում իրենց քաղաքի ու մարդկանց մասին:



Այստեղ, Ուլյանովսկում, նրանք մասնակցել են Լենինի հուշակոթողի շինարարությանը և հիմա մի անգամ ևս եկել են Լենինի տուն-թանգարանը:

Բայց նրանք եկել են այստեղից տանելու մի բուռ հող: Ամեն մեկը մի բուռ հող է լցնում նիկելապատ, գեղեցիկ սափորի մեջ: Նկարվում են: Նրանց հետ է լրագրող Նիկոլայ Բորիսովիչ Ռաշկովը:

— Մի օր կգանք նաև մեր երկրի հնագույն քաղաքը տեսնելու:

— Բայց նա և երիտասարդ է,— ասում եմ:

— Գիտենք, ձեր գունագեղ տուֆը, մատենադարանը... Վիկտոր Համբարձումյանը... Ձեր երկնակամարում շատ են աստղերը:

Մենք հասցեներ ենք փոխանակում և միասին մտնում տուն-թանգարան: Ապշեցնում է Ուլյանովների տան մեջ նկատվող կարգը, ճշտապահությունը, պարտքի զգացումն ու ընտանեկան ջերմությունը: Իմ ուշադրությունն է գրավում միջին տարիքի մի մարդ, որ երկար կանգնում է ամեն մի նկարի առաջ և հազիվ է զսպում իրեն, որպեսզի չշոշափի ցուցասրահի ամեն մի իր: Ուզում եմ ծանոթանալ, բայց նա ահա նստում է փոքրիկ գրասեղանի առաջ, մի պահ լուռ խոնարհվում է տպավորությունների գրքի առաջ և միանգամից սկսում է գրել՝ խոշոր, թանձր տառերով: Թաքուն կարդում եմ. «Ես ծնվել և մեծացել եմ Ուրալում: Աշխատում եմ գազամուղի շինարարությունում, շրջել եմ ես մեր ողջ Միությունը: Շատ բան եմ տեսել, բայց երբեք այնպես չեմ զգացվել և չեմ զգացել այն, ինչ այստեղ զգացի: Սա հենց այն է, ինչ մեզ դաստիարակում և ուղղություն է տալիս կյանքում: Ես չեմ կարող պատկերացնել՝ ի՞նչ կլիներ մեր կյանքում, եթե չլիներ նա, ումով ապրում ենք մենք: Եվ ինչը մեզ առաջ է շարժում կյանքում»:

Մի պահ շունչ է առնում և ապա գրում է. «Գազամուղի ստիլյաժնիկների բրիգադիր, Սվերդլովսկի մարզի Նովայա Լյանյա քաղաքի բնակիչ Յուրի Սեմյոնովիչ Մեզինին»:

Ի՞նչ հարցնեմ նրան այլևս: Ամեն ինչ պարզ է: Գազագործ Մեզինինն արագ հեռանում է, բայց մենք արդեն ծանոթներ ենք: Եվ գիտեմ հաստատ, որ նա մի օր անպայման պիտի գար Ուլյանովսկ:

Ես թերթում եմ տպավորությունների գիրքը, և հանկարծ հայերեն գրառումներ, սիրտս տրոփում է. մանկական երերուն ձեռագիր. որ թղթին է հանձնել մանկական անմիջական, ջերմ զգացմունքը. «Մենք եկել ենք Երևանից: Մեզ շատ դուր եկավ Վ. Ի. Լենինի տուն-թանգարանը: Մենք շատ կցանկանայինք, որ նա հիմա կենդանի լիներ»:

Իմ լավ բարեկամներ, հայկական զուլալ հոգով, ձեզանից 50 տարի առաջ մեր երկրի արշալույսին նույն զգացմունքներն էին պարուրել հայազգի լեգենդար զորավարին՝ Գային, երբ նա հեռագրում էր ծանր վիրավորված Լենինին. «Թանկագին Վլադիմիր Իլյիչ, Ձեր հարազատ քաղաքի գրավումը— դա պատասխանն է Ձեր մի վերքի համար, իսկ երկրորդի համար կլինի Սամարան»:

Դուրս եմ գալիս փողոց և իբրև մի վերջին, բայց շարունակելի անակնկալ առաջս ձգվում է մի երկար, գեղեցիկ ճանապարհ, պատի վրա կարդում եմ. «Երկաթյա դիվիզիայի փողոց»: Դա Գայի՝ Հայկ Բժշկյանցի հռչակված դիվիզիան էր, որի մասին մինչև այժմ երգում են Վոլգայի ափերին: Իհարկե, մենք պիտի գայինք Ուլյանովսկ, և պիտի լինեին այս հանդիպումները:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Մ. Գ. ՍԱՆԹՐՈՍՅԱՆ

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱՑՈՒՄԸ ՈՐՊԵՍ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆ

Կոմունիստական հասարակարգի կառուցման օրինաչափություններից է սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի զարգացումը, որի կարևոր փուլերից է արտադրության կառավարման դեմոկրատացումը։

Հայտնի է, որ հասարակական կամ համատեղ ամեն մի աշխատանք ավելի կամ պակաս չափով կարիք ունի կառավարման, որը Կ. Մարքսի խոսքերով ասած. «...ներդաշնակություն է սահմանում անհատական աշխատանքների միջև և կատարում է այն ընդհանուր ֆունկցիաները (կառավարել, հսկել, համաձայնեցնել), որոնք ծագում են արտադրական ամբողջ մարմնի շարժումից» (Կապիտալ, հատ. I, էջ 348)։ Այդ ֆունկցիաները կապիտալիզմի պայմաններում իրականացնում է կապիտալիստը։ Տվյալ հասարակարգում արտադրության կառավարումը միաժամանակ կապիտալիստին պատկանող արտադրամիջոցների նպատակահարմար կիրառելու վերահսկման, շահագործման ֆունկցիա է։ Այդ իսկ տեսակետից կապիտալիստական կառավարումն ունի երկակի բնույթ· այն համապատասխանում է կապիտալիստական արտադրության պրոցեսի երկակիությանը, որը, մի կողմից՝ «աշխատանքի հասարակական պրոցես է որոշ արդյունք պատրաստելու համար, մյուս կողմից՝ կապիտալի արժեքի ինքնաճման պրոցես է» (նույն տեղը, էջ 349)։

Կապիտալիզմի պայմաններում արտադրության կառավարումը երկատվում է կազմակերպական-տեխնիկական և սոցիալ-տնտեսական ֆունկցիաների։ Արտադրության կառավարման կազմակերպական-տեխնիկական ֆունկցիան մարդկանց արտադրական գործունեության, տեխնոլոգիական պրոցեսների կոորդինացումն է, աշխատանքային առանձին պրոցեսների համաձայնեցումը ժամանակի և տարածության մեջ։

Սոցիալիզմի օրոք արտադրության կառավարման սոցիալ-տնտեսական ֆունկցիան բանվորների կողմից աշխատամիջոցները նպատակահարմար գործադրելու նկատմամբ պետական ու հասարակական վերահսկողությունն է։ Արտադրության կառավարման տվյալ ֆունկցիան է, որ կապիտալիզմի ժամանակ իրականացվում է որպես արտադրության միջոցների տիրոջի շահագործողական ֆունկցիա։



Արտադրամիջոցների համաժողովրդական սեփականության վրա հիմնված արտադրության կառավարման սոցիալ-տնտեսական ֆունկցիան անձնական, կոլեկտիվ և հասարակական շահերի զուգակցման շնորհիվ, թվում է, պետք է վերանար։ Սակայն արտադրաուժերի ոչ բավարար զարգացման հետևանքով սոցիալիզմի ժամանակ դեռևս չեն վերանում սեփականության ձևերի, աշխատանքի հասարակական անհավասար պայմաններից բխող անհատական աշխատուժի որակավորման, հետևաբար և դասակարգերի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած տարբերությունները։ Այդ է պատճառը, որ պահպանվում են ապրանքադրամական հարաբերությունները և այդ հարաբերություններին հատուկ կատեգորիաները (արժեք, գին, շահույթ, տնտհաշվարկ, աշխատավարձ և այլն)։ Այս օբյեկտիվ պայմանների հետևանքով անձնական և կոլեկտիվ շահերը իրացվում են տարբեր պայմաններում և դրանք հասարակական շահերի հետ, համաժողովրդական արդյունքի ծավալին համապատասխան, զուգակցվում են արտադրության միջոցների համաժողովրդական սեփականության հիմքի վրա կատարվող աշխատանքի արդյունքի սոցիալիստական վերաբաշխման սկզբունքով։ Անհատական և կոլեկտիվ շահերը հասարակականի հետ նպատակահարմար ձևով զուգակցելու համար սոցիալիզմի ժամանակ դեռևս անհրաժեշտ է սոցիալ-տնտեսական ֆունկցիան, որն իրականացնում են պետական կառավարական օրգանները և հասարակական կազմակերպությունները։ Հետևաբար սոցիալիզմը չի կարող անտեսել արտադրության կառավարման այն սկզբունքները, որոնք ձևավորվել են նախորդ հասարակարգերում։

Արտադրության միջոցների արդյունավետ գործադրման վերահսկողության ֆունկցիան իրականացվում է արտադրական ցուցանիշների, կանոնների, նյութական արժեքների ծախսման, տեխնոլոգիական ու բարոյական նորմերի պահպանմանը հետևելու միջոցով։ Այստեղ սոցիալ-տնտեսական և կազմակերպական-տեխնիկական ֆունկցիաները միաձուլվում են. առաջինի իրականացման արդյունավետությունը պայմանավորվում է երկրորդով, սոցիալ-տնտեսական հետևությունները հիմնավորվում են տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով։

Արտադրության կառավարման կազմակերպական-տեխնիկական ֆունկցիան փոփոխվում է արտադրողական ուժերի, հատկապես արտադրության միջոցների զարգացմանն ու փոփոխմանը համապատասխան։ Այդ փոփոխման բնորոշ գիծը կենդանի աշխատանքի աստիճանաբար պակասումն է արտադրապրոցեսում, կառավարման կատարելագործումը։ Երբ չկան ավտոմատացված գծեր, արտադրամասի պետի, վարպետի խնդիրն է՝ հետևել անջատ պրոցեսներում կատարվող աշխատանքներին, կոորդինացնել դրանք։ Աշխատանքային պրոցեսների ավտոմատացումը վերացնում է այդ ֆունկցիաների անհրաժեշտությունը։ Նման պայմաններում արտադրական առանձին մասնակի պրոցեսների իրականացումն ու միակցումը կատարվում է գիտության օգնությամբ՝ ավտոմատ ինքնակառավարող սարքերի միջոցով, որտեղ մարդկանց կառավարումն աստիճանաբար փոխարինվում է իրերի կառավարմամբ։

Այլ է վիճակը սոցիալ-տնտեսական ֆունկցիայի իրականացման բնա-

բանականացվում է արտադրության պրոցեսը, գիտությունը դառնում է արտադրության որոշիչ գործոն, արտադրությունը՝ գիտության անմիջական տեխնոլոգիական կիրառման ոլորտ։

Արտադրապրոցեսում աստիճանաբար գերակշռող տեղ է գրավում գիտահետազոտական ֆունկցիան։ Գիտական առաջադրանքները յուրացվելով արտադրապրոցեսում, խթանում են արտադրողականության բարձրացմանը։

Հասարակության գիտակցական կառավարման պայմաններում վերաորակավորվում է ազատվող աշխատուժը։ Որակավորված աշխատուժի կիրառումը բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, ավելացնում ազատ ժամանակը, նպաստում անձնավորության բազմակողմանի զարգացմանը։

Մեքենան, արտադրապրոցեսից դուրս բերելով մարդու ֆիզիկական ուժն ու հմտությունը, իսկ արդի էտապում նաև արտադրությունը վերահսկելու բանական ֆունկցիաները, նրան չի անջատում, օտարացնում։ Ընդհակառակը, որքան աշխատանքը շատ է փոխարինվում բնական պրոցեսներով, ընդլայնվում բնական ուժերի և մեթոդների գործադրումը, այնքան արտադրապրոցեսում մեծանում է գիտության, հետևաբար և մարդու, որպես բանական արարածի, դերը, նրա հիմնական հատկանիշի գործադրման անհրաժեշտությունը։ Արտադրության կենդանի տարրը մեխանիկական ֆունկցիա կատարող լինելուց աստիճանաբար դառնում է ազատ, ստեղծագործող։ Որքան մարդու տեխնիկական ֆունկցիան ավելի ու ավելի լայն մասշտաբով փոխարինվում է իրերի բարդ էությունը ստեղծագործաբար բացահայտելու բանական ֆունկցիայով, այնքան մեծանում է այդ իրերի էության, դրանց զարգացման օրինաչափության մասին խոր գիտելիքներ ունենալու պահանջը։

Գիտատեխնիկական հեղափոխության արդի փուլում լայնորեն կոմբինացվում է արտադրությունը, տեխնոլոգիական շղթան, ամբողջականանում է ինքնակառավարման կիբեռնետիկական սարքերի միջոցով, խորանում է արտադրության համակենտրոնացումը, կատարելագործվում են վերջինիս կառավարման ձևերն ու մեթոդները։

Արտադրամիջոցների մասնավոր սեփականության վրա հիմնված հասարակարգերում աշխատանքի զարգացման այս տենդենցը հակադրվում է մասնավոր ձեռներեցության տարերքին։ Ելք գտնելու համար մոնոպոլիաները միավորվում են պետության հետ։ Այդ հիմք ընդունելով, բուրժուազիայի ջատագովները առաջ քաշեցին սոցիալիզմի և կապիտալիզմի «կոնվերգենցիայի» վերսիան։ Բայց դա պատրանք է։ Եղելություն է այն, որ գիտատեխնիկական հեղափոխությունը պահանջում է ամբողջ հասարակական պրակտիկան դարձնել կառավարվող պրոցես, մի բան, որ հնարավոր է միայն սոցիալիզմի պայմաններում։ «...միմիայն սոցիալիզմից է սկսվելու,— նշել է Լենինը,— արագ, իսկապես մասսայական, բնակչության մեծամասնության, ապա նաև ամբողջ բնակչության մասնակցությամբ տեղի ունեցող առաջընթաց շարժումը հասարակական և անձնական կյանքի բոլոր ասպարեզներում» (Երկեր, հ. 25, էջ 615)։

Այսպիսով, արտադրաուժերի զարգացման օբյեկտիվ տենդենցների վերլուծությունը ցույց է տալիս, որ կոմունիստական շինարարության արդի փուլում գիտատեխնիկական հեղափոխության ծավալմանը զուգընթաց, որպես օրինաչափություն, ծավալվում է արտադրության կառավարման դեմոկրատացումը։

Կոմունիստական կուսակցությունը, ընդհանրացնելով սոցիալիստական



տնտեսավարման կուտակված փորձը, վեր հանեց արտադրության կառավարման մեջ տեղ գտած թերությունները, առաջադրեց նոր պրոբլեմներ, որոնք բխում են սոցիալիստական հասարակության արտադրաուժերի և արտադրահարաբերությունների զարգացման ժամանակակից փուլի պահանջներից։ Կուսակցությունը բացահայտված թերությունների վերացման հիմնական ուղին համարեց կենտրոնացված պլանային ղեկավարման զուգակցումը ձեռնարկությունների կոլեկտիվների տնտեսական նախաձեռնության, արտադրության զարգացման տնտեսական խթանների և նյութական ազդակների ուժեղացման, լիակատար տնտեսական հաշվարկի հետ։

Ըստ պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի, կենտրոնական պլանավորող օրգանների հիմնական ֆունկցիաներն են՝ որոշել հիմնական համամասնությունները, գները, կապիտալ ներդրումների, տնտեսական կապերի պլանաչափ իրականացման ուղիները։ Արտադրության կառավարման մնացած ֆունկցիաները իրականացնելու են արտադրական միավորները, որոնց աշխատանքի գնահատման չափանիշը, առաջին հերթին՝ շահույթի չափն է։

Ձեռնարկության շահույթի մեծացման գործում աշխատողների շահագրգռվածությունն ապահովելու նպատակով ընդլայնվեց ապրանքադրամական հարաբերությունների կատեգորիաների (գին, շահույթ, պարգև, վարկ, ֆոնդավճար, տնտհաշվարկ) գործողության ասպարեզը։

Սոցիալիզմի գաղափարական հակառակորդները չհապաղեցին յուրովի մեկնաբանել այս միջոցառումները։ Նրանք, մի կողմից՝ անտեսելով դեմոկրատիայի ընդլայնումը, ռեֆորմը հայտարարեցին անցում դեպի «հրամանային էկոնոմիկա», «կենտրոնացված-կառավարվող էկոնոմիկա», մյուս կողմից՝ անտեսելով կենտրոնացված պլանավորման խթանման նպատակով իրականացվող միջոցառումները, շտապեցին հայտարարել, որ կենտրոնական պլանավորման սիստեմը «էրոզիայի է ենթարկվում», որը երկու սիստեմների «կոնվերգենցիայի» սկիզբն է։ Նրանք անկարող են ըմբռնել սոցիալիզմի պայմաններում կենտրոնացված կառավարման զուգակցման հնարավորությունը տեղական նախաձեռնության հետ, որը սոցիալիստական հասարակարգի բնորոշ գծերից է։ Սոցիալիստական էկոնոմիկան չի կարելի կառավարել առանց կենտրոնացված պլանավորման, որը ենթադրում է ձեռնարկությունների տրնտեսական ինքնուրույնություն։ Նման զուգորդման անտեսումը տեղիք է տալիս սուբյեկտիվիզմի և կամայականության, բյուրոկրատիզմի երևույթներին։ Դրա համար կուսակցությունը պահանջեց, մի կողմից՝ խորացնել կենտրոնացված ղեկավարությունը՝ պլանավորման մեթոդները կատարելագործելու և ճյուղային կառավարման անցնելու միջոցով, մյուս կողմից՝ ռեսուրսները լրիվ բացահայտելու և պլանային ռեալ համամասնություններ սահմանելու համար ընդլայնել արտադրական կոլեկտիվների իրավունքները, բարձրացնել նրանց ակտիվությունը այդ գործում՝ այդ նպատակին ծառայեցնելով տնտեսական խթանները։ Դա օբյեկտիվ պահանջ է, քանի որ սոցիալիզմի պայմաններում հասարակական արտադրության զարգացման որևէ պրոբլեմ դժվար է արդյունավետ լուծել, եթե այն չի դիտվում իրականացման պայմանների հետ միասնության, ամբողջության մեջ, եթե էկոնոմիկայի միասնական օրգանիզմի մասն անջատվում է ամբողջից։ Սոցիալիզմի ժամանակ այդ խնդրի լուծման համար կան օբյեկտիվ պայմաններ։ Ռեֆորմը հնարավորություն է ընձեռում պլանավորման մեթոդները կատարելագործելու շնորհիվ լրիվ կոորդինացնել հասարակական արտադրությունը, հետևողականորեն կենսագործել դեմոկրատական

ցենտրալիզմը, հասնել այն բանին, որ մասսաների կենդանի ստեղծագործությունը դառնա նոր հասարակարգի կառուցման որոշող գործոնը, որ միլիոնները մասնակցեն արտադրության պլանավորմանն ու կառավարմանը։

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի նպատակն է՝ հասարակական արդյունքի մեծացման տենդենցը զուգակցել բաշխման սոցիալիստական սկզբունքին։

Պլանավորման և տնտեսական նոր սիստեմի շնորհիվ լայն տեղ է հատկացվում շահույթ, պարգևատրում, ֆոնդավճար տնտեսական կատեգորիաներին, տնտհաշվարկային հարաբերությունների զարգացմանը։ Սրանք տնտեսական այնպիսի լծակներ են, որ սոցիալիզմի պայմաններում յուրաքանչյուր աշխատողի և կոլեկտիվի շահագրգռում են գտնել հասարակական հիմնական հարստությունը՝ աշխատուժը, աշխատաժամանակը, արտադրական հիմնական և շրջանառու ֆոնդերը արդյունավետ օգտագործելու եղանակները, ամեն կերպ բարձրացնել միավոր աշխատաժամանակի, մեկ ռուբլու արտադրական և շրջանառու ֆոնդերի հատույցը։ Բարձր ֆոնդահատույց ապահովելու, շրջանառու ֆոնդերն արդյունավետ օգտագործելու համար յուրաքանչյուր աշխատող շահագրգռված է անել ամեն բան։

Հասարակական արտադրության կառավարման գործում աշխատավորության ակտիվության ու շահագրգռվածության բարձրացման կարևոր լծակ է սոցիալիստական տնտհաշվարկը։ Դա կյանքի այնպիսի դպրոց է, ուր մասսաները սեփական փորձի վրա սովորում են արտադրություն կառավարել, գտնել աշխատանքի կազմակերպման այնպիսի առաջադիմական ձևեր ու մեթոդներ, որ կարողանան խնայել աշխատաժամանակը, հումքը, միջոցները։ Սոցիալիստական տնտհաշվարկին խորթ է «հարևանի հաշվին լավ լինելու» սկզբունքը։ Նրա առանձնահատկությունն այն է, որ յուրաքանչյուր աշխատող օբյեկտիվորեն շահագրգռված է ոչ թե տնտեսել, խնայել ուրիշի աշխատանքի պայմանները վատացնելու, այլ իր և նրա աշխատանքի պայմանները բարելավելու, իր տեղամասի հետ միասին մյուսների տեղամասում եղած ռեզերվները ևս գործի դնելու հաշվին։ Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմը հնարավորություն է տալիս, փոխադարձ նյութական պատասխանատվությունը բարձրացնելու միջոցով, լայնորեն արմատավորել տնտհաշվարկային այսպիսի հարաբերություններ։

Արդեն չորրորդ տարին է, ինչ իրականացվում է տնտեսական ռեֆորմը. այդ ժամանակամիջոցում պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին են անցել երկրի մոտ 30 հազար ձեռնարկություն, շինարարական կազմակերպություն և այլ միավորներ։ Արդյունաբերության մեջ նոր սիստեմով աշխատող ձեռնարկությունները թողարկում են ամբողջ արտադրանքի մոտ 80 տոկոսը, իսկ մեր հանրապետությունում՝ ավելի քան 70։ Դրանց մեծ մասը զգալիորեն բարելավել է տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։ Աշխատողների արտադրողական ակտիվությունը բարձրացնելու, կազմակերպման և վարձատրման ձևերն ու մեթոդները կատարելագործելու շնորհիվ 1968 թվականին նոր սիստեմով աշխատող ձեռնարկությունները տվել են շահույթի 75 տոկոսը, պլանը գերակատարել 16,7 տոկոսով, արտադրանքի ծավալը, նախորդ տարվա համեմատությամբ, ընդլայնել 9,1, արտադրանքի իրացման ծավալը՝ 12 տոկոսով։

Ձեռնարկությունների կոլեկտիվների աշխատանքային ակտիվության բարձրացմանը զուգընթաց զգալիորեն ընդլայնվել է նրանց մասնակցությունը



արտադրության կառավարմանն ու վերահսկմանը. դա դրսևորվում է բազմազան ձևերով (արտադրական խորհրդակցություններ, տարբեր հանձնաժողովներ, աշխատանքի գիտական կազմակերպման բրիգադաներ, բյուրոներ և այլն)։ Սակայն հասարակական արտադրության տարբեր ոլորտներում ձեռք բերված հաջողությունների հետ մեկտեղ կան նաև դժվարություններ, չլուծված պրոբլեմներ։ Գերատեսչությունների շատ աշխատողներ չեն կարողանում հրաժարվել կառավարման հին մեթոդներից, արտադրության կառավարմանը վերաբերող ամեն մի մանրուք հրահանգավորելու ձգտումից։

Բազմաթիվ փորձեր ցույց են տվել, որ ձեռնարկություններին ռեֆորմով նախատեսված ինքնուրույնությունը տալու դեպքում աշխատանքի արդյունքը շատ ավելի բարձր է լինում։ Նշանակում է, պետք է ուղիներ որոնել արտադրության կառավարումը դեմոկրատացնելու ճանապարհին ծագող դժվարությունները հաղթահարելու և այդ օբյեկտիվ պրոցեսի դրսևորման խոչընդոտները վերացնելու համար։ Այդ նպատակով, ըստ մեզ, առաջին հերթին, պահանջվում է տնտհաշվարկային հարաբերությունները տարածել նաև արտադրությունը ղեկավարող օրգանների վրա, որպեսզի բանվորներից, բրիգադիրներից և ձեռնարկությունների կոլեկտիվներից սկսած մինչև գերատեսչական ու ճյուղային կազմակերպությունները աշխատեն տնտհաշվարկով։

Արտադրական տեղամասերում տնտհաշվարկը հետևողականորեն կիրառելու նպատակով, նրանց գործունեությունն ապահովելու համար անհրաժեշտ է ստեղծել հնարավորին չափ հավասար պայմաններ և դրանց համապատասխան պլանային ցուցանիշներ և նորմատիվներ։ Այդ գործում գերատեսչության կամ մինիստրության աշխատողի շահագրգռվածությունը բարձրացնելու համար նրա վարձատրությունը ևս պետք է կախման մեջ դնել ձեռնարկության աշխատանքի արդյունքից, որն ինչ-որ չափով պայմանավորվում է նաև նախորդի աշխատանքի արդյունքով՝ նրա ընդունած որոշման ճշտությամբ։ Մինչդեռ ճյուղային գերատեսչությունների և մինիստրությունների աշխատողները աշխատավարձ են ստանում պետական բյուջեից, որի չափը կախում չունի այն բանից, թե նրանք որքանով են օգտակար եղել կամ վնասել իրենց կազմակերպությանը ենթակա ձեռնարկությունների գործունեությանը։

Տնտհաշվարկային հարաբերությունները ճյուղային գերատեսչությունների վրա տարածելու հետ միասին հարկ կլինի ընդլայնել դրանց իրավունքները նաև նյութատեխնիկական մատակարարման և ձեռնարկությունների միջև փոխադարձ մատակարարումների համար ստեղծված տնտեսական կապերի նկատմամբ, որպեսզի նրանք կարողանան իրենց ենթակա բոլոր ձեռնարկությունների համար ստեղծել այնպիսի պայմաններ, որպեսզի առավելագույն չափով օգտագործվեն նյութական և աշխատանքային հնարավորությունները։

Հասարակական արտադրության զարգացման տենդենցները ցույց են տալիս, որ ապագայում առավել կընդլայնվեն արտադրության մասշտաբները, կբարդանան տնտեսական կապերը, զարկ կտրվի գիտատեխնիկական առաջադիմությանը։ Այդ ամենին համապատասխան աճում է դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքների նշանակությունը, մեծանում պլանավորման հետագա կատարելագործման պահանջը։ Դրանք հնարավոր է իրականացնել միմիայն արտադրական կոլեկտիվների իրավունքներն ու ինքնուրույնությունն ընդլայնելու և այդ ուղիով հասարակական արտադրության կառավարման գործում մասսաների ակտիվությունը բարձրացնելու միջոցով, որը նոր հասարակարգի կառուցման առաջընթացի գլխավոր ազդակն է, վճռական պայմանը։



Մ. Ա. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՏԵՍԱԿԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ*

*Ընդամենը երկու տասնամյակ է, ինչ գոյություն ունի և զարգանում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։ Նրա ծագումը և զարգացումը էապես փոխեցին աշխարհի քաղաքական քարտեզը, հասարակության զարգացման հիմնական բովանդակությունը և ուղղությունը։ Սոցիալիզմը հաղթանակել է երկրագնդի մեկ երրորդում։ Աճել է սոցիալիստական երկրների տնտեսական, քաղաքական ու պաշտպանական հզորությունը։ Իմպերիալիզմը չկարողացավ հակագրոհների օգնությամբ իր օգտին փոխել ուժերի ընդհանուր հարաբերակցությունը, նա անզոր է վերադարձնել կորցրած պատմական նախաձեռնությունը, ետ շրջել ժամանակակից աշխարհի զարգացումը։ Մարդկության զարգացման մայրուղին որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը, միջազգային բանվոր դասակարգը, բոլոր հեղափոխական ուժերը։ «Վերջին տասնամյակի իրադարձությունները,— ասված է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների 1969 թվականի հունիսյան խորհրդակցության հիմնական փաստաթղթում,— հաստատեցին արդի դարաշրջանի բնույթի, նրա բովանդակության ու հիմնական տենդենցների մարքս-լենինյան գնահատականի ճշտությունը։ Մեր դարաշրջանը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջան է»։*

*Այստեղից պարզ է հասարակական այն մեծ հետաքրքրությունը, որ գոյություն ունի համաշխարհային սոցիալիզմի ծագման ու զարգացման պրոբլեմների նկատմամբ։ Այս հարցերի մշակման ուղղությամբ կատարված աշխատանքի հետ կան և չուսումնասիրված պրոբլեմներ, վիճելի բնորոշումներ։*

*Դժվար է համաձայնել այն հեղինակների հետ, որոնք սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացումը բաժանում են երեք և ավելի փուլերի։ Վ. Վոլոգժանինը գրում է. «Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի վճռական հաղթանակը դրեց նրա զարգացման մեջ նոր, երրորդ փուլի սկիզբը»* (Мировая система социализма, Свердловск, 1963, Сб. статей, стр. 29)։ *Այդ նույն ժողովածուի հոդվածներից մեկի հեղինակ՝ Զ. Սկվորցովան սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման երրորդ փուլի սկիզբը հա-*

* Տպագրվում է հարցադրման կարգով.— Խմբ.։



*մարում է մոտավորապես 1959—1960 թթ. սահմանագիծը, երբ այդ սիստեմը վերածվում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնի (նույն տեղը, էջ 31)։ Նման պարբերացում կա նաև ուրիշ հեղինակների մոտ։ Մեզ թվում է, որ տվյալ հարցում անհրաժեշտ է ղեկավարվել միջազգային կոմունիստական շարժման փաստաթղթերի դրույթներով ու եզրակացություններով։ Կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների 1960 թ. խորհրդակցության հայտարարությունից պարզ երևում է, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմն իր զարգացման ընթացքում անցնում է երկու փուլով՝ ժողովրդական դեմոկրատիայի երկրների համար կապիտալիզմից սոցիալիզմին անցման, սոցիալիզմի հաստատման, որը սկսվեց քառասնական թվականների երկրորդ կեսից և տևեց մինչև 50-ական թվականների վերջը։ Սովետական Միության համար դա սոցիալիզմի կառուցումն ավարտելու ժամանակաշրջան էր։ Երկրորդը արդի փուլն է, որն սկսվեց 50-ական թվականների վերջին և շարունակվում է։ Դա մի ժամանակաշրջան է, երբ ժողովրդական դեմոկրատիայի երկրները հաջողությամբ կառուցում են սոցիալիզմի հիմքերը, դրանցից մի քանիսն արդեն թևակոխել են զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման, իսկ Սովետական Միությունը՝ կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանը (տե՛ս* Документы Совещания представителей коммунистических и рабочих партий, М., 1960, стр. 15)։ Դրանք արդեն ձևավորված սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման փուլերն են։

*Այժմ խոսենք համաշխարհային սոցիալիզմի երեք փուլերի մասին, նկատի ունենալով այդ սիստեմի* ծագման ու զարգացման *ողջ ժամանակաշրջանը։ Այս դեպքում նշված երկու փուլերը կլինեն երկրորդը և երրորդը, իսկ առաջինը՝ դրանց նախորդած ժամանակաշրջանը (1917 թ. մինչև 40-ական թվականների առաջին կեսը), մեր երկրում սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանը, երբ սոցիալիզմը հաղթանակել էր մի երկրում (երբ հետագայում մեզ միացավ նաև ՄԺՀ), պրոլետարիատի դիկտատուրան դեռևս մի երկրի շրջանակներից դուրս չէր եկել։ Սակայն արդեն այդ փուլում՝ հանձին ՍՍՀՄ-ի, դրվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հիմքը։ Այդ սիստեմի ծագման և զարգացման նման պարբերացումը համապատասխանում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երեք փուլերին։*

*Մեր կարծիքով ճիշտ չեն այն հեղինակները, ովքեր համաշխարհային սոցիալիզմի զարգացման մեջ տեսնում են չորս և ավելի փուլեր (տե՛ս* «Новая и новейшая история», № 4, 1965, стр. 5)։ *Հիշյալ տեսակետի կողմնակիցները* սոցիալիզմի համաշխարհային ամբողջ սիստեմի զարգացման փուլերը *նույնացնում են սոցիալիստական երկրների* տնտեսական համագործակցության *փուլերին (1944/1945—1949, 1949—1955, 1956—1960, 1961—1965 և այլն)։ Ամբողջ սիստեմի զարգացման փուլերը լայն հասկացություն են և ընդգրկում են առավել տևական ժամանակաշրջան, քան երկրների տնտեսական, քաղաքական, կուլտուրական համագործակցության փուլերը։ Դրանք կապված են որակական ավելի խոր և բազմակողմանի փոփոխությունների հետ, քան այն, ինչ տեղի է ունեցել նշված որևէ ընագավառներից մեկում։*

*Մյուս հարցը վերաբերում է* համաշխարհային սոցիալիզմի զարգացման օրինաչափություններին։ *Այստեղ ևս տարակարծություններ կան։ Որոշ հեղինակներ սոցիալիզմի մասին խոսելիս սահմանափակվում են առանձին երկրներում սոցիալիստական հեղափոխության և սոցիալիզմի կառուցման օրի-*

նաչափություններով։ Մյուսները՝ սոցիալիզմի տնտեսական օրենքներով, դրանք չտարածելով սոցիալիստական միջպետական հարաբերությունների վրա։ Երրորդները գրում են միայն սոցիալիզմի համաշխարհային տնտեսու- թյան օրինաչափությունների մասին, այն չտարբերելով սոցիալիզմի համաշ- խարհային սիստեմի զարգացման ընդհանուր օրինաչափություններից։

Մեր կարծիքով, համաշխարհային սոցիալիզմի զարգացման օրինաչափու- թյունները կարելի է բաժանել երեք կարգի։ Առաջինի մեջ մտնում են առանձին սոցիալիստական երկրի զարգացման օրինաչափությունները։ Դրանք սոցիա- լիստական հեղափոխության և սոցիալիզմի կառուցման հետևյալ օրինաչա- փություններն են. աշխատավորության լայն խավերի ղեկավարումը բանվոր դասակարգի կողմից, որի միջուկը մարքս-լենինյան կուսակցությունն է, սո- ցիալիստական հեղափոխության իրականացումը խաղաղ կամ ոչ խաղաղ ձևով, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը և զարգացումը, բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիության և աշխատավորական մյուս խավերի հետ, հիմնական արտադրամիջոցների կապիտալիստական սեփականության վերացումը և սոցիալիստական սեփականության հաստատումը, գյուղատնտե- սության աստիճանական սոցիալիստական վերափոխումը, ժողտնտեսության պլանաչափ զարգացումը, որն ուղղված է սոցիալիզմի և կոմունիզմի կառուց- ման, աշխատավորների կենսամակարդակի բարձրացման նպատակին, սոցիա- լիստական հեղափոխության իրականացումը կուլտուրայի բնագավառում և նոր մտավորականության ստեղծումը, ազգային ճնշման վերացումն ու ժողո- վուրդների միջև իրավահավասարության ու եղբայրական բարեկամության հաստատումը, սոցիալիզմի նվաճումների պաշտպանությունը ներքին և ար- տաքին թշնամիների ոտնձգություններից, տվյալ երկրի բանվոր դասակարգի համերաշխությունը մյուս երկրների բանվոր դասակարգի հետ (պրոլետարա- կան ինտերնացիոնալիզմ) (տե՛ս Սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցության դեկլարացիան, էջ 19, 1957 թ.)։

Այս օրինաչափությունները սկզբունքորեն ընդհանուր են սոցիալիստական բոլոր երկրների համար, բայց տարբեր երկրներում ունեն իրենց դրսևորման որոշակի առանձնահատկությունները։ Վերջին տարիներին աշխարհում կատար- վող միջազգային քաղաքական իրադարձությունները ընդգծում են այդ ընդ- հանուր օրինաչափությունների և ազգային-պատմական առանձնահատկու- թյունների հարաբերակցության ճիշտ ըմբռնման կարևորությունը։

Սոցիալիզմի կառուցման պրակտիկան առանձին ուժով է ընդգծում այնպիսի ընդհանուր օրինաչափություններից հեռանալու վնասակարությունը, ինչպիսիք են՝ պրոլետարիատի դիկտատուրան, կոմունիստական կուսակցու- թյան ղեկավար դերը պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում, դեմոկրա- տական ցենտրալիզմը, յուրաքանչյուր երկրի ազգային և ինտերնացիոնալ խնդիրների միասնությունը, սոցիալիզմի նվաճումների պաշտպանությունը ներքին և արտաքին թշնամիների ոտնձգություններից և այլն։ Այդ հեռացումը կատարվում է առանձին երկրների պատմական և ազգային առանձնահատ- կությունների նշանակությունը գերագնահատելու, սոցիալիզմի կառուցման «նոր» մոդելներ ստեղծելու միտումով։ Իսկ «այդ առանձնահատկությունները,— նշել է Վ. Ի. Լենինը,— կարող են վերաբերվել միայն ոչ ամենագլխավորին» (Երկեր, հ. 30, էջ 117), և չպետք է խախտեն հիմնական սկզբունքները, որով- հետև ազգային առանձնահատկություններն այլ բան չեն, քան բոլոր երկրների



համար ընդհանուր սկզբունքների դրսևորման ձևերը՝ կախված յուրաքանչյուր երկրի կոնկրետ պայմաններից։ Այս կապակցությամբ դժվար է համաձայնել Ա. Պ. Բուտենկոյի հետ, որը սոցիալիզմի կառուցման նոր մոդելների երևան գալը և դրանց վերաբերյալ դիսկուսիան օգտակար է համարում (տե՛ս «Вопросы философии», № 2, стр. 11, 14, 1967. Мировая социалистическая система и антикоммунизм, М., 1968, стр. 144);

Ռենեգատ Օ. Շիկը ցույց տվեց այդպիսի «նոր» մոդելի օգտակարությու- նը Չեխոսլովակիայի համար։ «Եղբայրական կուսակցությունները պատմական փորձով համոզվել են,— ասված է սոցիալիստական երկրների կոմունիստա- կան ու բանվորական կուսակցությունների 1968 թվականին Բրատիսլավա- յում կայացած խորհրդակցության ընդունած հայտարարության մեջ,— որ սոցիալիզմի ու կոմունիզմի ուղիով ընթանալ կարելի է միայն խստիվ ու հե- տևողականորեն առաջնորդվելով սոցիալիստական հասարակարգի կառուցման ընդհանուր օրինաչափություններով և, առաջին հերթին, ամրապնդելով բանվոր դասակարգի ու նրա ավանգարդի՝ կոմունիստական կուսակցությունների ղե- կավար դերը» («Սովետական Հայաստան», 6 օգոստոսի, 1968 թ.)։

Գիտական սոցիալիզմի տեսությունը պրակտիկայի է վերածվել մեկ առանձին երկրում, որը երկար ժամանակ ոչ միայն սոցիալիզմ կառուցող առաջին, այլև միակ երկիրն էր։ Այդպիսի պայմաններում, բնականաբար, սկսեցին առավել չափով ուսումնասիրվել սոցիալիստական հեղափոխության և սոցիալիզմի կառուցման օրինաչափությունները։ Պատշաճ չափով չեն ու- սումնասիրվել երկրորդ խմբի՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զար- գացման ընդհանուր օրինաչափությունները։ Այս ուղղությամբ միայն առաջին քայլերն են արված։ Նույնիսկ այդ օրինաչափությունների թվարկումն ու բնութագրումը որոշ հեղինակներ (Ի. Օլեյնիկ, Ա. Բուտենկո, Ի. Դուդինսկի) կատարել են հարցադրման կարգով։ Դրանց բացահայտումը և օգտագործումն արագացնում և հեշտացնում են սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցումը։

Որքան էլ կարևոր լինեն սոցիալիստական հեղափոխության և սոցիալիզմի կառուցման օրինաչափությունները (առանձին երկրներում), դրանք չեն կարող սպառել սոցիալիստական երկրների կապերի և համագործակցության բնագա- վառի հարաբերությունները, որովհետև դրանք ոչ թե միջպետական, այլ ներ- պետական բնագավառի օրինաչափություններ են, դրանց չի կարելի ամբողջ սիստեմի զարգացման օրինաչափություններ համարել։ Բացի այդ, սոցիալիս- տական հեղափոխության և սոցիալիզմի կառուցման օրինաչափությունների մի մասը կարճատև է և հիմնականում վերաբերում է կապիտալիզմից սոցիա- լիզմին անցնելու ժամանակաշրջանին։

Փորձենք նշել սոցիալիզմի՝ որպես երկրների համաշխարհային սիստեմի զարգացման ընդհանուր օրինաչափությունները։ Դրանք են՝ երկրների բազմա- կողմանի սերտ համագործակցությունն ու անշահախնդիր փոխօգնությունը, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման զարգացումն ու խո- րացումը. երկրների էկոնոմիկայի զարգացումը պլանաչափորեն և բարձր ու կա- յուն տեմպերով. երկրների ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցումը. արմատական սոցիալիստական վերափոխումների և հասարակարգի կառուց- ման կոլեկտիվ փորձի ստեղծումն ու օգտագործումը. երկրների զարգացման մակարդակների աստիճանական հավասարեցումը (մերձեցումը), աշխարհի զարգացման վրա սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ազդեցության անընդհատ աճը և հասարակության զարգացման վճռական գործոնի վերած-

վելը. սոցիալիստական երկրների բազմակողմանի մերձեցումը ապագայում միասնական համաշխարհային կոմունիստական տնտեսության ստեղծման ուղիով. նրանց քիչ թե շատ միաժամանակյա անցումը կոմունիզմի բարձր փուլին պատմական մի դարաշրջանի շրջանակներում և այլն։ Այս համակարգը, բնական է, հետագայում կհամալրվի և կճշգրտվի։

Թվարկված օրինաչափությունները ծագում են առաջին կարգի օրինաչափությունների հիման վրա, հանդիսանում դրանց հետագա զարգացումն ու խորացումը նոր ոլորտում, նոր մասշտաբներով և նոր պայմաններում։ Բայց դրանք չեն ձուլվում առաջին կարգի օրինաչափություններին, թեև դրանց միջև սերտ կապ կա, դիալեկտիկական փոխազդեցություն։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմն առանձին երկրների պարզ գումար չէ, ինչպես նաև լիովին ձևավորված միասնական սոցիալական օրգանիզմ։ Սրանով է պայմանավորված այդ սիստեմի զարգացման հետևյալ առանձնահատկությունը. նրա զարգացումը արդի փուլում որոշվում է, մի կողմից՝ առանձին երկրում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման օրինաչափություններով, մյուս կողմից՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման ընդհանուր օրինաչափություններով։

Զարգացման արդի փուլում նշված երկու կարգի օրինաչափություններից առաջնայինը, որոշիչը առաջին կարգն է։ Սակայն առավել չափով մեծանում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման օրինաչափությունների դերը։ Դժվար է համաձայնել այն հեղինակների (Ա. Պ. Բուտենկո) հետ, որոնց կարծիքով երկրորդ կարգի օրինաչափությունները երբեք որոշիչ չեն դառնա համաշխարհային սոցիալիզմի զարգացման մեջ (А. П. Бутенко. Мировая социалистическая система—решающий фактор общественного развития, изд. МГУ, *1965*, стр. *20*) *իրենց տեղը կզիջեն կոմունիզմի համաշխարհային տնտեսության զարգացման օրինաչափություններին։*

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման նշված օրինաչափություններն ընդհանուր են բոլոր երկրների համար, որոնք ընդգրկում են հասարակության զարգացման ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական, քաղաքական, կուլտուրական բնագավառները։ Ճիշտ չեն այն հեղինակները, որոնք դրանք համարում են սոցիալիզմի համաշխարհային տնտեսության զարգացման օրինաչափություններ։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի և սոցիալիզմի համաշխարհային տնտեսության զարգացման օրինաչափությունները չի կարելի նույնացնել և հակադրել միմյանց։

Մենք թվարկեցինք սոցիալիզմի զարգացման երկու կարգի օրինաչափություններ։ Կա՞ արդյոք երրորդ կարգ։ Ի. Վ. Դուդինսկին գտնում է, որ համաշխարհային սոցիալիզմը բաղկացած է երեք տարրերից (սոցիալիզմի կառուցումն առանձին երկրներում, համագործակցության զարգացումը երկրների միջև և սոցիալիզմը, որը լինելով համաշխարհային սիստեմ) (И. Дудинский. О закономерностях мирового социалистического хозяйства. «Вопросы экономики», *№ 3, 1968*, стр. *75, 83—84*) *համապատասխանաբար ունի երեք կարգի օրինաչափություններ։ Չի կարելի, անշուշտ, համաձայնել այս տեսակետի հետ։ Ինչպե՞ս կարելի է բաժանել և տարբեր տարրեր համարել երկրների համագործակցությունը և համաշխարհային սոցիալիստական սիստեմն ամբողջովին վերցրած. ինչպե՞ս տարբերել երկրների բազմակողմանի կապերի,* համագործակցության և ամբողջ սիստեմի *զարգացման օրինաչափությունները։ Ի. Դուդինսկին չի նշում և հնարավոր չէ նշել այդպիսի երկու*



կարգի օրինաչափություններ։ Չէ՞ որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը երկրների համագործակցությունն է, նրանց կայուն կապերի ամբողջությունը։ Առանց այդ համագործակցության ու կապերի, ամբողջ սիստեմը դառնում է անջատ երկրների պարզ, մեխանիկական գումար, որը ճիշտ չէ։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմն ունի իր զարգացման նաև երրորդ կարգի օրինաչափությունները, որոնք հիմնականում, վերաբերում են կապիտալիստական երկրների, կապիտալիզմի համաշխարհային սիստեմի հետ սոցիալիստական երկրների շփման ոլորտին։ Դրանք համաշխարհային սոցիալիզմի «արտաքին» օրինաչափություններն են։ Այստեղ մենք նկատի ունենք համաշխարհային սոցիալիզմի տնտեսական մրցումը կապիտալիզմի համաշխարհային սիստեմի հետ, պայքարը հանուն կայուն խաղաղության և նոր հասարակարգի կառուցման նպաստավոր արտաքին պայմանների, համատեղ ուժերով սոցիալիզմի նվաճումների պաշտպանությունը իմպերիալիստական ագրեսիաներից, սոցիալիզմի սիստեմի հարաճուն ազդեցությունը համաշխարհային զարգացման վրա ու դրա վերածվելն այդ զարգացման վճռական գործոնի և այլն։ Վերջին օրինաչափության գործողությունը չի սահմանափակվում միայն կապիտալիստական երկրների հետ փոխհարաբերության ոլորտով, այն շատ լայն ու համընդգրկող է։ Դա ո՛չ միայն սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, այլև, ըստ էության, համաշխարհային զարգացման, համաշխարհային հեղափոխական պրոցեսի, արդի դարաշրջանի որոշիչ օրինաչափությունն է։

Չի կարելի համաձայնել այն կարծիքի հետ, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմում ևս գոյություն ունի երկրների տնտեսական և քաղաքական անհամաչափ զարգացմանը բնորոշ օրինաչափություն (А. П. Бутенко. Две мировые системы, закономерности и тенденции их развития, М., *1967*, стр. *40*, «Вопросы философии», *№ 9, 1965*, стр. *10—11*)։ *Եթե այստեղ համաչափություն ասելով հասկացվում է սոցիալիզմին առանձին երկրների ոչ-միաժամանակ անցնելը, սոցիալիստական հեղափոխությունների ոչ-միաժամանակյա հաղթանակը և իմպերիալիզմի շղթայից հաջորդաբար պոկվելը, ապա այդ ավելի շուտ համաշխարհային հեղափոխական պրոցեսի, համաշխարհային սոցիալիստական հեղափոխության և ոչ թե սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման օրինաչափությունն է, կապիտալիզմի անհամաչափ զարգացման հետևանքը։*

Սոցիալիստական երկրների անհամաչափ զարգացում ասելով ոմանք նկատի ունեն նրանց ոչ-միատեսակ տեմպերով աճը։ Սակայն սոցիալիստական երկրների զարգացման տեմպերի տարբերությունը, ինչպես ինքը՝ Ա. Բուտենկոն է նշում, պայմանավորված է մի ամբողջ շարք օբյեկտիվ գործոններով (առանձին երկրների զարգացման տարբեր մակարդակները, ազգային տնտեսության կառուցվածքը, տեղը աշխատանքի միջազգային բաժանման մեջ, թշնամի ուժերի ներգործությունը և այլն), որոնք ժառանգված են կապիտալիզմից և սոցիալիզմի էությունից չեն բխում։ Եթե այդ անհամաչափությունը (զարգացման տեմպերի տարբերությունը երկրների միջև) սոցիալիզմի էությունից, արտադրահարաբերությունների բնույթից չի բխում, ապա չի կարող համարվել սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման բնորոշ օրինաչափություն։

Սոցիալիստական երկրների ոչ-միատեսակ տեմպերով զարգացումը ընդհանուր ոչինչ չունի իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիստական եր-

երների անհամաչափ զարգացման օրինաչափության հետ: Վ. Ի. Լենինը ընդգծում էր, որ անհամաչափ զարգացման օրենքի էությունը նրանում չէ, որ մի երկիր մյուսից քիչ ավելի արագ է զարգանում, նրան հասնում կամ նույնիսկ նրանից առաջ անցնում մեղմ ու հարթ ձևով, որպես էվոլյուցիոն պրոցես: Անհամաչափ զարգացման էությունը, որոշ կապիտալիստական երկրների թռիչքաձև զարգացումն է, մյուսների նկատմամբ նրանց կատաղի մրցակցությունը, սուր հակասությունները, կոնֆլիկտները, որոնք թուլացնում են կապիտալիզմի սիստեմը: Ինչպես ցույց է տալիս պրակտիկան, տնտեսապես պակաս զարգացած սոցիալիստական երկրները, որպես կանոն, ավելի արագ, բարձր տեմպերով են զարգանում: Բայց դա ոչ թե մրցակցության, կոնկուրենցիայի, ուրիշ ժողովուրդների կողոպտման, այլ այդ երկրների ներքին ռեսուրսների և ռեզերվների ավելի արդյունավետ օգտագործման շնորհիվ է տեղի ունենում, իսկ դա հնարավոր է միայն սոցիալիզմի, սոցիալիստական երկրների սերտ համագործակցության, առավել զարգացած եղբայրական երկրների կողմից ցույց տրվող անշահախնդիր օգնության պայմաններում: Պակաս զարգացած երկրների ավելի արագ աճը դրական երևույթ է, պրոգրեսիվ բնույթ ունի և համապատասխանում է համագործակցության բոլոր երկրների արմատական շահերին, հավասարեցնում է նրանց զարգացման մակարդակները, նախադրյալներ ստեղծում հետագայում այդ երկրների համաչափ զարգացման օրինաչափ գործողության համար: Երկրների զարգացման տեմպերի տարբերությունը չի կարող դրանց փոխհարաբերությունների բնագավառում դժվարությունների և հակասությունների պատճառ դառնալ: Ա. Պ. Բուտենկոն գտնում է, որ «Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների զարգացման անհամաչափությունը այդ սիստեմի շրջանակներում ծագող հակասությունների օբյեկտիվ հիմքերից մեկն է» («Вопросы философии», № 9, 1965, стр. 11): Ընդհակառակը, պակաս զարգացած երկրների ավելի արագ տեմպերով զարգացումը, այդ որոշ «անհամաչափությունը» անցյալից ժառանգված հակասությունների և դժվարությունների հաղթահարման, ազգերի բարեկամությունն ու վստահությունը ամրապնդելու միջոց է: Ոչ թե զարգացման տեմպերի տարբերությունն է հակասություններ և դժվարություններ ստեղծում, այլ կապիտալիզմի ժամանակ երկրների տնտեսական և քաղաքական անհամաչափ զարգացումը, դրա հետևանքով երկրների զարգացման մակարդակների միջև եղած մեծ տարբերությունները, ճեղքվածքը: Սոցիալիստական երկրների զարգացման մակարդակների աստիճանական հավասարեցումը հաղթահարում է ոչ թե այդ որոշ «անհամաչափությունը» (զարգացման տեմպերի տարբերությունը) (Նույն տեղը), այլ երկրների զարգացման մակարդակների միջև անցյալից ժառանգված մեծ տարբերությունները:

Երկրների զարգացման տեմպերի տարբերությունը վկայությունն է ոչ թե դրանց անհամաչափ զարգացման, այլ մակարդակների հավասարեցման (մերձեցման) և արտահայտում է այդ հավասարեցման յուրահատկությունը: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի պայմաններում վերացված են երկրների անհամաչափ զարգացման գործոնները, այստեղ առկա են միանգամայն նոր գործոններ, նոր օրինաչափություններ:

Ի. Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԾԱՂԿՈՒՄԸ ԳՅՈՒՂՈՒՄ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը շրջադարձային էտապ հանդիսացավ համաշխարհային կուլտուրայի զարգացման պատմության մեջ: Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը բոլոր պայմաններն ստեղծեցին ժողովրդական տաղանդների ու ձիրքերի, կուլտուրայի, գրականության ու արվեստի բազմակողմանի ծաղկման համար: Փորձելով ժխտել Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հսկայական դերն ու նշանակությունը ժողովրդական մասսաների ստեղծագործական տաղանդների ծաղկման գործում, բուրժուական «մարգարեները» գտնում էին, որ հեղափոխությունը կործանելու է լուսավորությունը, քաղաքակրթությունը, գրականությունն ու արվեստը: Բուրժուական գաղափարախոսները, նրա պրոպագանդայի վիթխարի ցանցն ամեն միջոցի դիմեցին՝ «ապացուցելու», որ ռամիկը կարող է ոչնչացնել կուլտուրական արժեքները, բայց ոչ կառավարել, նորն ստեղծել: Հակակոմունիստական պրոպագանդան մինչև հիմա էլ պնդում է, թե միայն կապիտալիզմն է ի վիճակի քաղաքակրթելու աշխարհը:

Սոցիալիստական հասարակարգի կառուցման անխզելի մասն է կուլտուրական հեղափոխությունը, որի միջոցով հնարավոր դարձավ վերափոխել մարդկանց հոգեկան կերպարը, մասսաների գիտակցության մեջ պատվաստել սոցիալիստական գաղափարախոսություն, նվիրվածություն հայրենիքին ու աշխատանքին: Մեր երկրում ստեղծվեց ժողովրդական կրթության նոր սիստեմ, որն ապահովեց բնակչության ընդհանուր գրագիտությունը, գիտության ու կուլտուրայի արագ վերելքը, աճող սերնդի պատշաճ դաստիարակությունը:

Վիթխարի աշխատանք է կատարվել սովետական մարդկանց կենսամակարդակի ու կուլտուրայի վերելքի, գրականության, արվեստի, գիտության ու լուսավորության ծաղկման, մարդկանց բարեկեցիկ կյանքի ստեղծման համար:

Սովետական Միությունում կատարված կուլտուրական հեղափոխության շնորհիվ պայմաններ ստեղծվեցին ազգային կուլտուրաների ծաղկման, փոխհարստացման համար: Ձևավորվեց աշխատավորական զանգվածների սոցիալիստական գիտակցությունը: Մեր երկրում 40-ից ավելի ազգություններ միայն Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո գրություն ունեցան:

Սովետական իշխանության մեծագույն նվաճումներից է անգրագիտության վերացումը գյուղում։ Գյուղացիության շրջանում կուլտուրական շինարարության աշխատանքների ծավալումը Վ. Ի. Լենինը համարում էր գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման, գյուղի դարավոր հետամնացության վերացման կարևորագույն պայմաններից մեկը։ Կուլտուրական հեղափոխության իրականացումը գյուղի ու քաղաքի էական տարբերությունների վերացման, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման կարևորագույն լծակներից էր։ «Անգրագետ մարդը քաղաքականությունից դուրս է»,— ասել է Լենինը (Երկեր, հ. 33, էջ 72)։

Սովետական հասարակության առաջընթացին զուգընթաց մեծանում է նյութական բարիքների արտադրության ավելացման, կոմունիստական գիտակցության, ամբողջ ժողովրդի կուլտուրական մակարդակի բարձրացման անհրաժեշտությունը։ Սովետական գյուղի արտադրաուժերի աճը, կոլտնտեսությունների էկոնոմիկայի ամրապնդումն ապահովեցին կոլտնտեսային գյուղացիության նյութական բարեկեցությունը, կուլտուրայի բարձրացումը և կենցաղի բարելավումը։ 1930-ական թ. սկզբին Հայաստանում հիմնականում վերացվեց անգրագիտությունը, հիմնվեցին կուլտուրայի օջախներ։ Սովետական Հայաստանը դարձավ հայ ժողովրդի մշակույթի, գիտության, տեխնիկայի, արվեստի ու քաղաքական մտքի կենտրոն։ Հետպատերազմյան տարիներին երկրի ընդհանուր զարգացմանը զուգընթաց վերելք ապրեցին սովետական, նաև հայկական կուլտուրան, գրականությունն ու արվեստը, կառուցվեցին կուլտուրայի պալատներ, դպրոցական բազմահարկ շենքեր, ինստիտուտներ, թանգարաններ։ Երկրի կուլտուրական կյանքում ուժեղանում է Սովետական Միության եղբայրական բոլոր ժողովուրդների կուլտուրաների մերձեցման ու փոխհարստացման պրոցեսը։ Սերտ կապ է ստեղծվել կուլտուրայի գործիչների և մասսաների միջև։ Հատկապես վերջին տարիներին անվանի արվեստագետները հաճախ են լինում շրջաններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Մեծ նշանակություն ունեցան 1965 թվականից շրջաններում կազմակերպվող հայ արվեստի ու գրականության տասնօրյակները։

Մարդկության դարավոր պատմության և ոչ մի ժամանակաշրջանում գրականությունն ու արվեստն այնքան սերտորեն կապված չեն եղել ժողովրդին, այնքան հավատարմորեն չեն ծառայել հասարակությանը, այնպիսի պայծառ իդեալներ չեն արտացոլել, որքան մեր օրերում։ Հետպատերազմյան տարիներին գյուղի աշխատավորների գործունեությանը նվիրված շատ ստեղծագործություններ են հրապարակվել։

Կոմունիստական կուսակցությունը հատուկ ուշադրություն է նվիրում քաղաքի ու գյուղի մարդկանց էսթետիկական դաստիարակությանը։ Այդ նպատակով կազմակերպվում են ներկայացումների, կինոնկարների դիտումներ, համերգների ունկնդրում, էքսկուրսիաներ դեպի հայրենի երկրի տեսարժան վայրերը, ցուցահանդեսներ, զեկուցումներ սովետական մարդու բարոյական կերպարի, ընտանիքի ու աշխատանքի, արվեստի վարպետների մասին։ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում նախատեսված է ստեղծել կուլտուրայի և արվեստի հիմնարկությունների լայն ցանց, համակողմանի բարելավել բնակչության կուլտուրական սպասարկումը հատկապես գյուղական վայրերում։

Սակավաթիվ էր նախասովետական շրջանի գյուղական ինտելիգենցիան։ Այժմ մեր երկիրն ունի ինտելիգենցիայի ավելի քան 25 միլիոնանոց բանակ,



որը սերտորեն կապված է բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության հետ։ Նրա շարքերը համալրվել են նոր կյանքի կառուցման պրոցեսում։ Ինտելիգենցիան դարձել է առաջավորի կրողն ու տարածողը գյուղում։ Նա մարմնավորում է նոր հասարակարգ կառուցող սովետական մարդու բարոյական կերպարը. դառնալով նոր կյանքի կառուցման ակտիվ մասնակիցը՝ խոշոր դեր է խաղում կուլտուրայի բոլոր բնագավառներում։

Հայաստանի ամենահեռավոր գյուղն անգամ ունի իր մտավորականությունը։ Միայն Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղից մոտ 350 տղաներ ու աղջիկներ, ստանալով բարձրագույն կրթություն, այժմ աշխատում են ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում։ Թումանյանի շրջանի Օձունի գյուղում կան ավելի քան 220 մտավորականներ, որոնցից 75-ը բարձրագույն կրթությամբ ուսուցիչներ են, բժիշկներ, գյուղատնտեսության մասնագետներ։ Նրանք ակտիվ մասնակցում են սովխոզի գործունեությանը։ Սպիտակի շրջանի Պարնի գյուղի միջնակարգ դպրոցում աշխատում են 37 ուսուցիչ, որոնցից 28-ը՝ բարձրագույն կրթությամբ։ Սովետական իշխանության տարիներին մոտ 150 պարնեցի ավարտել են բարձրագույն ուսումնական հաստատությունները, 450-ը՝ միջնակարգ դպրոցը։ Կոլտնտեսությունում աշխատում են բարձրագույն կրթությամբ 10 մասնագետ (զոոտեխնիկ, գյուղատնտես, անասնաբույժ)։ Այդտեղ գործում են կուլտուրայի բազմաթիվ օջախներ։ Գյուղն էլեկտրիֆիկացված և ռադիոֆիկացված է։ Այսպիսի շատ օրինակներ կարելի է բերել Հայաստանի գրեթե բոլոր գյուղերից։ Հանրապետությունում կան նաև տասնյակ ինտերնացիոնալ գյուղեր, ուր համերաշխ ապրում, ստեղծագործում են հայեր, ռուսներ, ադրբեջանցիներ, ասորիներ, քրդեր և այլ ազգերի ներկայացուցիչներ։

Սովետական գյուղում տեղի ունեցած սոցիալական խոր վերափոխումները փոխել են գյուղացու հոգևոր կերպարը։ Գյուղացիությունը դարձել է կրթված ու կուլտուրական։ ՍՍՀՄ-ում կոլտնտեսականների ավելի քան մեկ երրորդն ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն։ Ավելի է ամրապնդվել բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքը։

Սովետական Հայաստանում կուլտուր-լուսավորական օբյեկտները հսկայական աշխատանք են կատարում կոլտնտեսային գյուղացիությանը սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելու, նրանց կուլտուրական մակարդակը բարձրացնելու, առաջադրված խնդիրները լուծելու գործում։ Արտադրության ժամանակակից տեխնիկայի պայմաններում անհնար է գործել առանց տեխնիկական անհրաժեշտ գիտելիքների. ուստի և կոմունիստական շինարարության ոլորտում մեծ է բարձրագույն ուսումնական հաստատությունների դերը։ Տարեկան ավելի քան 100 հազար մասնագետ են տալիս մեր երկրի գյուղատնտեսական ուսումնական հաստատությունները։ Կոմունիստական կուսակցության լենինյան քաղաքականության շնորհիվ կարճ ժամանակամիջոցում ՍՍՀՄ-ը դարձավ ո՛չ միայն տնտեսապես հզոր, առաջավոր երկիր, այլև աշխարհի ամենազարգացած կուլտուրա, գրականություն ու գիտություն ունեցողներից մեկը։ Ներկայումս ՍՍՀՄ-ում աշխատող բնակչության կեսից ավելին ունի միջնակարգ և բարձրագույն կրթություն։ Սովետական իշխանությունը բարձրագույն կրթություն ստանալու լայն հնարավորություն է ընձեռել քաղաքի ու գյուղի աշխատավորներին. սահմանված է ձրի ուսուցման սիստեմ, ուսանողներին տրվում է թոշակ. մինչդեռ ԱՄՆ-ի շատ բուհերում ներկայումս ուսման տարեկան վարձը հասնում է 3 հազար դոլարի («Правда», 1968, № 7)։

Ակնբախ են լուսավորության բնագավառի հաջողությունները Հայաստա-

նում։ Հայկական ՍՍՀ բյուջեի 40 տոկոսը յուրաքանչյուր տարի ծախսվում է այդ ասպարեզի կարիքների համար։

Սովետական իշխանության տարիներին վիթխարի թռիչք է կատարել հայկական գյուղը՝ հետամնացությունից դեպի ունևոր կյանքի բարձունքները։ Հայտնի է, որ մինչև 1920 թվականը Հայաստանի շրջանների մեծ մասում գյուղացիներն ապրում էին կավաշեն, խարխուլ խրճիթներում։

Այժմ անճանաչելիորեն փոխվել են Հայաստանի գյուղերը։ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը, դեռևս 1950 թ. մարտի 18-ին, հատուկ որոշմամբ արգելեց կավաշեն տների, կուլտուր-կենցաղային շենքերի կառուցումը։ Հիշողություն են դարձել հայ գյուղի խարխուլ, գետնափոր խրճիթներն ու կավաշեն տները։ Դրանց տեղը բարձրացել են 1—2 հարկանի տուֆաշեն, լուսավոր շենքեր, կառուցվել են լայն փողոցներ, ընդարձակ պարտեզ-այգիներ, դպրոցական շենքեր, ակումբներ, հիվանդանոցներ, կուլտուրայի պալատներ, բաղնիքներ, ջրմուղ։ Ջանֆիդա գյուղում (Հոկտեմբերյանի շրջան) շուտով կավարտվեն կոլտնտեսականների բնակարանների ջեռուցման սիստեմի անցկացումը։ Գյուղում մեքենայացվել են ծանր աշխատանքները և այս ամենի շնորհիվ գյուղացին հանգստանալու, երեխաների դաստիարակությամբ, ինքնազարգացմամբ զբաղվելու բավականին ազատ ժամանակ ունի։

Ահա Արտաշատի շրջանի Վերին Արտաշատ գյուղը՝ իր ասֆալտապատ փողոցներով ու ծառուղիներով։ Այնտեղ նախկինում եղած կավաշեն ու հողե կտուրներով տների փոխարեն բարձրանում են մեկ-երկու հարկանի սպիտակ տանիքներով քարաշեն ու լուսավոր, հարմարավետ նոր բնակելի տներ։ Գյուղի՝ 800 տեղանոց դահլիճ ունեցող կուլտուրայի տունը կառուցվել է կոլտնտեսության միջոցներով։ Այնտեղ ելույթ են ունենում ոչ միայն Հայաստանի, այլև մյուս հանրապետությունների թատերական ու գեղարվեստական կոլեկտիվներն ու արվեստի նշանավոր ներկայացուցիչները։ Երեկոները միշտ մարդաշատ այս դահլիճում գրեթե ամեն օր կինոնկարներ են ցուցադրվում։ Կոլտնտեսության միջոցներով են կառուցվել նաև հիվանդանոցը, ծննդատունը, դեղատունը, հյուրանոցը, դպրոցի եռահարկ շենքը՝ 25 դասասենյակներով ու հարուստ լաբորատորիաներով։ Գյուղում գործում են երկու գրադարան, երկու ընթերցարան, փոստի բաժանմունք, մանկապարտեզ, մանկամսուր, խնայողական դրամարկղ (որն ունի ավելի քան 1100 ավանդատու)։ Գյուղն ստանում է ավելի քան 200 անուն թերթ ու ամսագիր։ Վերին Արտաշատի կոլտնտեսականի կենցաղը համարյա չի տարբերվում կուլտուրական կյանք վարող քաղաքացիների կենցաղից։ Այդպիսի պայմաններ ստեղծվել ու ստեղծվում են տասնյակ գյուղերում։ Սովետական իշխանության տարիներին Հայաստանի գյուղական վայրերում հիմնվել են 909 դպրոց, 34 շրջանային կուլտուրայի տուն, 893 ակումբ, ավելի քան 900 գրադարան, 24 պետական ու ժողովրդական թատրոն, ավելի քան 550 կինոսարքավորում, 1345 գեղարվեստական ինքնագործ խումբ։ Հանրապետության 34 գյուղական շրջկենտրոններից 31-ում գործում է երաժշտական դպրոց։ Այդ մասին նախասովետական հայ գյուղացին երազել միայն կարող էր։

Հայաստանի գյուղական վայրերում միայն 1946—1968 թվականներին կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի միջոցներով կառուցվել են մոտ 133 հազար բնակելի տուն՝ իրենց բոլոր տեսակի հարմարություններով։ Իտալիայի պառլամենտի անդամ Ալբերտ Յակո Իդրին, տեսնելով նորակերտ Հայաստանը, իրավամբ ասել է. «Ով ցանկանում է պատկերացնել, թե



ինչպիսի ուժ ունեն սովետական իշխանությունն ու կոմունիզմի գաղափարների իրագործումը՝ թող այցելի Հայաստան։ Չորս-հինգ տասնամյակում հայ ժողովուրդն այնպիսի առաջընթաց է ապրել բոլոր բնագավառներում, որ եվրոպացի քաղաքագետներին հանելուկ է թվում» («Известия», 1969, նոյեմբերի 27)։

Կոլտնտեսային գյուղերն աստիճանաբար վերափոխվում են քաղաքատիպ խոշորացված բնակավայրերի, որոնք կունենան բնակիչների համար անհրաժեշտ բոլոր կոմունալ հարմարությունները։ Դրա լավ օրինակ են՝ Սևանը, Հրազդանը, Աբովյանը, Ջերմուկը, Մեղրին, Հոկտեմբերյանը, Թալինը, Ապարանը, Սպիտակը, Աշտարակը, Գորիսը, Սիսիանը և Հայաստանի այլ շրջկենտրոններ։

Սովետական գյուղում շինարարական հսկայական աշխատանքներ են ծավալվել ո՛չ միայն հանրային տնտեսությունների, այլև գյուղի բնակչության միջոցներով։ Սակայն, հատկապես վերջիններս, թե՛ նոր բնակարաններ կառուցելիս և թե՛ հները նորոգելիս մեծ դժվարությունների են հանդիպում շինարարական և այլ անհրաժեշտ նյութեր հայթայթելու համար։ Մյուս դժվարությունը գյուղական բնակչության համար սանիտարական հանգույցներ ու էլեկտրագծեր մոնտաժողներ, թիթեղագործներ, ծեփագործներ, ներկարարներ գտնելն է։ Այդ հարցերով անբավարար են զբաղվում համապատասխան վերադաս կազմակերպությունները։

Սովետական Միության գյուղերում ներկայումս գործում են 87 հազար գրադարան, 114 հազար ակումբ ու կուլտուրայի տուն, 131 հազար կինոսարքավորում։ Միջին հաշվով ամեն օր գյուղերում կազմակերպվում են 1.250 հազար համերգ ու ներկայացում։ Գյուղական բնակչության տնտեսական պայմանների, կենցաղի ու կուլտուրայի մակարդակի բարձրացման շնորհիվ գյուղում տարեցտարի ծավալվում է առևտուրը։ Միայն 1965—1968 թվականներին այնտեղ վաճառվել են 32,8 միլիոն ժամացույց, 1,5 միլիոն սառնարան, 1,4 միլիոն մոտոցիկլետ, 6,8 միլիոն ռադիոընդունիչ, 4,6 միլիոն հեռուստացույց և շատ այլ ապրանքներ (տե՛ս «Правда», 1969, նոյեմբերի 25)։

Կոլտնտեսականների համամիութենական III համագումարում պատվիրակները բերկրանքով ու հպարտությամբ խոսեցին գյուղի աննախընթաց նվաճումների, վերելքի մասին։

Սակայն գյուղում տարվող կուլտուր-լուսավորական աշխատանքներում դեռևս կան լուրջ թերություններ։ Կուսակցության XXIII համագումարում այդ մասին նշվել է. «Երկար ժամանակ պատշաճ նշանակություն չէր տրվում ակումբների, գրադարանների, կինո-թատրոնների, սպորտային կառույցների ցանցի ընդլայնմանը գյուղում» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIII համագումարին, 1966, էջ 140)։ Առանձին կուսակցական կազմակերպություններ դեռևս անբավարար են զբաղվում կոլտնտեսականների կենցաղի բարելավմամբ, անհրաժեշտ կուլտուր-կենցաղային պայմանների ստեղծմամբ։

Այժմյան պայմաններում, երբ բոլոր գյուղերում կան մեծ թվով բարձրագույն ու միջնակարգ կրթությամբ կադրեր, կուլտուր-լուսավորական օբյեկտներում գրագետ, ձեռներեց աշխատողներ չունենալն անհանդուրժելի է։

Գյուղում գործող կուլտուր-լուսավորական հիմնարկների արդի ցանցը, մեր կարծիքով, վերակառուցման խիստ կարիք ունի։ Գրեթե բոլոր գյուղերում կան ակումբներ, գրադարաններ, խրճիթ-ընթերցարաններ, կինոթատրոններ և այլ օբյեկտներ, որոնց մեծ մասը ենթարկվում է տարբեր գերատեսչություն-

ների։ Ըստ որում, գրադարաններ կան լուսավորության, կուլտուրայի, բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունների, ՀԱՄԽ-ի, պրոֆ-տեխուսումնարանների և այլ գերատեսչությունների գծով։ Այդ բոլոր հիմնարկներն զբաղեցնում են առանձին հատիքներ, սենյակներ ու շենքեր... Այդ և այլ թերություններ հաշվի առնելով, մեզ թվում է, որ գյուղերում ու բանվորական ավաններում գործող կուլտուրայի բոլոր օջախները պետք է կենտրոնացնել մեկ տեղ՝ ասենք կուլտուրայի տանը, այն կոմպլեկտավորել հիմնականում բարձրագույն կրթություն ունեցող ձեռներեց կադրերով, նրանց աշխատավարձը հավասարեցնել գյուղական մասնագետների աշխատավարձին։ Ցանկալի է, որ այդ օբյեկտներն (բացի դպրոցական գրադարաններից) ունենան մեկ գերատեսչություն (ասենք՝ կուլտուրայի մինիստրությունը կամ ՀԱՄԽ-ը), աշխատանքների կազմակերպման օրինակելի սխեմ, պլան և պարբերաբար համապատասխան օգնություն ստանան։

Սոցիալիստական հասարակարգում արագ զարգանում, բարելավվում է գյուղական բնակչության կենցաղային սպասարկումը, որը մեծ չափով նպաստում է քաղաքի և գյուղի բնակչության կենցաղային սպասարկման մակարդակների մերձեցմանը։ Տարեցտարի ավելանում է կարի և կոշիկի արհեստանոցների, կենցաղային սարքավորումների նորոգման տաղավարների, հագուստի քիմիական մաքրման կետերի, բաղնիքների, լվացքատների, վարսավիրանոցների և կենցաղային սպասարկման այլ օբյեկտների թիվը։ Սովետական էկոնոմիկայի զարգացման շնորհիվ մեծ չափով բարելավվել են ո՛չ միայն քաղաքի, այլև գյուղի բնակչության կենսապայմանները, աճել նրա ռեալ եկամուտները, բարձրացել է կուլտուրական մակարդակը։

Հանրապետության բնակչության ավելի քան 50 տոկոսն օգտվում է բնական և հեղուկ գազից։ Լայնորեն կիրառվում է հեղուկ գազը, հատկապես, գյուղական վայրերում։

Սակայն դեռևս անբավարար է գյուղական բնակչության կենցաղ-սպասարկումը. հանրապետության 1048 բնակավայրերից 599-ում անգամ 1968 թ. չկար կենցաղ-սպասարկման ոչ մի ծառայություն. շատ գյուղերում կառուցվել ու կառուցվում են բաղնիքներ, կենցաղային ու արտադրական բազմաթիվ օբյեկտներ, որոնց մի մասը համարյա չի օգտագործվում ջուր չունենալու պատճառով։ Գյուղական բնակարանների մեծ մասն ապահովված չէ խմելու և կենցաղային օգտագործման ջրով, կոյուղիով։ Անհանդուրժելի է, երբ տնտեսապես կարող շատ տնտեսություններ ու սովխոզներ չեն կառուցում դպրոցներ, մանկական հիմնարկություններ, ծննդատներ, բաղնիքներ, կուլտուր-կենցաղային և բժշկա-սանիտարական այլ օբյեկտներ։ Շատ տեղերում շինարարությունը տարիներով ձգձգվում է շինանյութեր ու սարքավորումներ չլինելու պատճառով։

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումը (1968 թ.), ի մի բերելով գյուղում կուսակցության կատարած աշխատանքները, միաժամանակ նշեց, որ գյուղի կուլտուր-կենցաղային սպասարկման գործում կան դեռևս չլուծված շատ հարցեր։ Գյուղի աշխատավորների հոգևոր ու կենցաղային պահանջմունքների համակողմանի զարգացումն ու լրիվ բավարարումը Կենտկոմի պլենումը համարեց կուսակցության, ամբողջ սովետական հասարակության առաջնահերթ պարտականությունը։ Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թթ. հնգամյա պլանի մասին ՍՄԿԿ XXIII համագումարի ընդունած դիրեկտիվներով նախատեսված է ավելի մոտեցնել գյու-



ղական ու քաղաքային բնակչության կենսամակարդակը՝ հաղթահարելով քաղաքի ու գյուղի միջև եղած սոցիալ-տնտեսական ու կուլտուր-կենցաղային տարբերությունները, ավելի ամրապնդել բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, ամբողջ սովետական ժողովրդի միասնությունը։

Նախասովետական շրջանում տասնյակ գյուղեր սայլի ճանապարհ իսկ չունեին։ Մարդիկ գյուղից գյուղ, նույնիսկ հեռավոր քաղաքներն էին գնում ոտքով։ Հայաստանի ծայրամասային գյուղերից ոտքով կամ սայլով Երևան գալու և վերադառնալու համար գյուղացին կորցնում էր 6—8 օր։ Սովետական իշխանության և, հատկապես, հետպատերազմյան տարիներին Հայաստանի քաղաքները, շրջաններն ու գրեթե բոլոր գյուղերն իրար հետ կապվեցին բարեկարգ ճանապարհներով (մեծ մասն ասֆալտապատ) խճուղիներով։ Հանրապետության շատ քաղաքներ ու շրջաններ Երևանի հետ կապված են երկաթուղագծով, օդային տրանսպորտով։ Մոսկվայում, Թբիլիսիում, Երևանում հրատարակված թերթերն ու ամսագրերը նույն կամ հաջորդ օրը հասնում են հանրապետության ամենահեռավոր գյուղերը։ Մեր հայրենիքում տրանսպորտի բոլոր տեսակների տեխնիկական կատարելագործումը, տրանսպորտային ուղիների ընդարձակումը մեծ չափով նպաստում են սոցիալիստական ազգերի ո՛չ միայն տնտեսական, այլև բարեկամական ու կուլտուրական համագործակցության ու մերձեցմանը։

Նախասովետական Հայաստանում գրեթե անտեսված էր ժողովրդի առողջապահության գործը. շրջաններում ու գյուղերի մեծ մասում բժիշկ կամ բուժակ չկար։ Նրանց փոխարինում էին հեքիմներն ու գրբացները։ 1913 թ. Հայաստանում կային ընդամենը 73 բժիշկ և 7 մասնավոր դեղատուն։ 1968 թ. միայն Արտաշատի շրջանում աշխատում էին 84 բժիշկ, 460 միջին բուժաշխատող։ Ներկայումս Հայաստանի գյուղական վայրերում գործում են մոտ 1000 բժշկական հիմնարկություն՝ ավելի քան 10 հազար բուժաշխատողներով։

Մեր երկրում վերացել են տարափոխիկ հիվանդությունները, խիստ կրճատվել է մահացությունը, մարդկանց կյանքի միջին տևողությունը հասել է 70 տարվա։ Սովետական Միությունն աշխարհի առաջին երկիրն է, որտեղ բոլոր քաղաքացիներն ապահովված են ձրի բուժօգնությամբ։ Մեր հայրենիքում աշխատում է աշխարհի բժիշկների մեկ քառորդը (տե՛ս «Известия», 1967, նոյեմբերի 4)։ Մեր երկրում երեխաների մահացությունը կրճատվել է ավելի քան 10 անգամ։ Սովետական Հայաստանի ո՛չ միայն քաղաքները, բանվորական ավաններն ու գյուղերն են ապահովված բժշկական սպասարկմամբ, այլև ամառանոցներն ու ձմեռանոցները։

Երկրի ու, հատկապես, գյուղական բնակչության բուժսպասարկման բարելավման համար վճռական նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1968 թ. օգոստոսին ընդունած Երկրում առողջապահության հետագա բարելավման և բժշկագիտության զարգացման միջոցառումների մասին որոշումը։

Ամեն ինչ հանուն մարդու, մարդու բարօրության համար պահանջը դարձել է կոմունիստական կուսակցության գործունեության օրենքը։ Սովետական գյուղում տեղի ունեցած արմատական փոփոխությունները կոմունիստական կուսակցության և ժողովրդի հերոսական աշխատանքի արդյունքն են։

Սովետական գյուղն առաջիկայում ավելի մեծ հաջողությունների կհասնի՝ կենսագործելով կոլտնտեսային նոր կանոնադրությունը։

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԱՆՇԵՂ ԿԵՆՍԱԳՈՐԾՄԱՆ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

Օ. Տ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

---

ՍՄԿԿ XXIII համագումարը, գյուղատնտեսության բնագավառի գլխավոր խնդիրը համարելով հողագործության և անասնապահական մթերքների արտադրության զգալիորեն ավելացումը, բնակչությանը սննդամթերքներով, իսկ արդյունաբերությանը՝ հումքով ապահովումը, բացառիկ նշանակություն տվեց արտադրության մեքենայացմանը, էլեկտրիֆիկացմանը, քիմիացմանն ու մելիորացիայի զարգացմանը, որոնք առաջադրված գլխավոր խնդրի իրագործման վճռական պայմանն են։

Համագումարի դիրեկտիվներից բխող պրակտիկ խնդիրների լուծմանն էր նվիրված ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1968) պլենումը, որի որոշումը նույնպես կարևոր ուղենիշ, գործողությունների մարտական ծրագիր է գյուղի կոմունիստների, բոլոր աշխատավորների համար։ Կուսակցական կազմակերպությունների,— նշված է Կենտկոմի պլենումի որոշման մեջ,— սովետական և տնտեսական օրգանների կարևորագույն խնդիրը համարել ՍՄԿԿ XXIII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան և մայիսյան պլենումների կողմից գյուղատնտեսության զարգացման ասպարեզում մշակված՝ կուսակցության քաղաքականության պրակտիկ միջոցառումների հետագա անշեղ իրագործումը։

Պետք է խոստովանել, որ հետհամագումարյան առաջին երկու տարում այդ ցուցումները անբավարար էին կատարվում Արտաշատի շրջանի տնտեսություններում. շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները դանդաղորեն էին վերակառուցում իրենց աշխատանքները։ Ահա թե ինչու դեռևս 1968 թ. մարտին ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, քննության առնելով «Արտաշատի կուսշրջկոմի ղեկավարությունը գյուղատնտեսական արտադրության նկատմամբ» հարցը, բացահայտեց լուրջ թերություններ, հատկապես մատնանշեց, որ շրջկոմի և մի շարք սկզբնական կուսկազմակերպությունների կողմից գյուղատնտեսության ղեկավարման մակարդակը դեռևս չի համապատասխանում առաջադրված նոր խնդիրներին, անբավարար են օգտագործվում եղած հնարավորությունները և ռեզերվները, ցածր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, դանդաղ է ընթանում խաղողի այգիների վերափոխումը։ Կենտկոմի բյուրոն լուրջ թերություններ և բացթողումներ արձանագրեց նաև անասնապահության բնագավառում. կրճատվել էր անասունների գլխաքանակը, շատ էին անկումները, ցածր էր անասնապահության մթերատվությունը, անբավարար աշխատանք էր տարվում տոհմային գործի բարելավման ուղղությամբ։

Կենտկոմի որոշման մեջ նշված էր այդ թերությունների հիմնական պատճառները. և, միաժամանակ, ասված, որ «ցածր է մի շարք սկզբնական կուսակցական կազմակերպությունների մարտունակությունը, կուսակցական ու պետական կարգապահությունը»։

Շրջանի կուսակցական և սովետական կազմակերպությունների առջև խնդիր դրվեց արմատապես բարելավել կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարումը, նրանց տնտեսական գործունեությունը, բարձրացնել արտադրական ցուցանիշները, ապահովել պլանային առաջադրանքների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումը, հասնել գյուղի աշխատավորի բարեկեցության հետագա վերելքի, ավելի լավ զբաղվել աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերով։

ՀԿԿ Կենտկոմի որոշումը ժամանակին քննարկվեց շրջկոմի պլենումում և սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում. որոշման մեջ առաջադրված խնդիրները լայնորեն մասսայականացրին կոլտնտեսություններում և սովխոզներում։ Ամենուրեք կոմունիստները, բոլոր աշխատավորները միահամուռ հավանություն տվին Կենտկոմի որոշմանը, այն համարելով ճիշտ և ժամանակին։ Այս ամենը մեր ղեկավար կադրերին, գյուղատնտեսության մասնագետներին, բոլոր կոմունիստներին հնարավորություն տվեց տեսնելու սեփական աշխատանքում եղած թերություններն ու բացերը, որոշելու իրենց տեղը գյուղատնտեսության հետագա զարգացման համար ծավալված համաժողովրդական պայքարում։

Կենտկոմի որոշման կատարման համար շրջանի տնտեսություններում ստեղծվեց մոբիլիզացիոն դրություն, աշխատավորների մեջ առաջացավ քաղաքական և աշխատանքային վերելք։ Ավելին, մարդիկ ամենուրեք նոր ուժով և եռանդով ձեռնամուխ եղան հայրենանվեր աշխատանքի, որպեսզի արժանավայել դիմավորեն Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը։ Հենց այդ օրերին էր, որ շրջանի գյուղատնտեսության աշխատողները կոչով դիմեցին հանրապետության գյուղատնտեսության բոլոր աշխատողներին և նոր պարտավորություններ ստանձնեցին հնգամյակի չորրորդ տարվա առաջադրանքները պատվով կատարելու, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը հայրենանվեր գործերով նշանավորելու համար։ Կոնկրետ պարտավորություններ ստանձնեցին առանձին տնտեսություններ, արտադրական ձեռնարկություններ, տեղամասեր և ծավալվեց համաժողովրդական պայքար։

ՀԿԿ Արտաշատի շրջկոմը, ձգտելով ապահովել նախահոբելյանական տարվա պարտավորությունների և հնգամյակի խնդիրների ժամկետից շուտ կատարումը, սկսեց ավելի խոր թափանցել արտադրության էկոնոմիկայի մեջ, ավելի գործնական լուծել գյուղատնտեսության արտադրության հասունացած հարցերը։

Գյուղատնտեսության բնագավառում գործերի վիճակի արագ կանոնավորումը թելադրված էր նրանով, որ վերջին տարիներին չէին ապահովվել հնգամյա պլանով սահմանված գյուղատնտեսական մթերքների արտադրության

աճի տեմպերը, անցած երեք տարիներին ճեղքվածք էր ստեղծվել խաղողի, բանջարեղենի, անասնապահական մթերքների արտադրության ու վաճառքի հնգամյա պլանով սահմանված ու փաստական ցուցանիշների միջև։

Շրջանի էկոնոմիկայում առաջատար և վճռող ճյուղը խաղողագործությունն է։ Այն տալիս է հանրապետությունում մթերվող խաղողի 22—23 տոկոսը կամ շրջանի կոլտնտեսությունների ամբողջ եկամտի կեսը։ Պարզ է, թե արտաշատցիներիս համար որքան կարևոր նշանակություն ունի խաղողի բերքատվության բարձրացումը։ Վազի մշակության ագրոտեխնիկական կանոնները ճիշտ կազմակերպելու, հիվանդությունների ու վնասատուների դեմ արդյունավետ պայքար իրականացնելու, բերքահավաքի ժամկետը սեղմելու շնորհիվ կոլտնտեսությունները 1969 թվականին հավաքեցին 34 հազար տոննա խաղող կամ հեկտարի միջին բերքատվությունը կազմեց մոտ 100 ցենտներ։ Առանձին կոլտնտեսություններ (Քաղցրաշեն, Այգեզարդ, Աբովյան, Այգեպատ) ամեն մի հեկտարից ստացան 150—194 ցենտներ, իսկ առանձին բրիգադաներ՝ նույնիսկ 210—250 ցենտներ խաղող։ Նախատեսված 37 հազարի փոխարեն շրջանի աշխատավորությունը պետությանը վաճառեց ավելի քան 41 հազար տոննա խաղող կամ հանրապետությունում մթերված խաղողի քառորդ մասը։

Քանի որ կոլտնտեսությունների էկոնոմիկայի գլխավոր ճյուղը խաղողագործությունն է, ես ցանկանում եմ ամսագրի ընթերցողներին ավելի հանգամանորեն պատմել այդ ճյուղի ներկա վիճակի և նրա զարգացման հեռանկարների մասին։ Ներկայումս մեր կոլտնտեսություններում հաշվվում է շուրջ 4000 հեկտար խաղողի այգի, որի մի մասը (մոտավորապես 700—800 հեկտար) 50—100 տարեկան է, վաղուց մասամբ ծերացել են և, բնականաբար, նոսրացել, այգետարածությունները սեզոնային, ծածկվել մոլախոտերով։ Երբեմնի բարձր բերքատու այգիներն այժմ լավագույն մշակության պայմաններում մեկ հեկտարից տալիս են 30—35 ց. բերք։ Հաշվումները ցույց են տալիս, որ այդ այգիներից ստացված եկամուտները չեն ծածկում իրենց վրա կատարված նյութական ու աշխատանքային ծախսումները։ Ավելին, այդ այգիները գտնվում են առանձին հողակտորների վրա և հնարավոր չէ օգտագործել միջնակները, իսկ նրանց թմբային սիստեմով տնկված լինելը հնարավորություն չի տալիս մեքենայացնել մշակության ու բուժման աշխատանքները։

Ելնելով այդ վիճակից, դեռևս 1963 թ. շրջանի կուսկազմակերպության հերթական կոնֆերանսը հաստատեց այգիների՝ աստիճանաբար վերափոխման պլան, ըստ որի՝ ամեն տարի պետք է քանդվեր և հիմնվեր 200 հեկտար նոր սիստեմի այգի։ Պետք է ափսոսալ, որ կոնֆերանսի այդ որոշումը դանդաղ է կատարվում. անցած տարիներին շրջանում հիմնվել է ընդամենը 700 հեկտար նոր այգի։

Խաղողագործության զարգացման շահերը պահանջում են ավելի արագ նորացնել հին այգիները։ Շրջանային կուսկազմակերպությունն իր առջև խնդիր է դրել արագ թափ հաղորդել այդ ուղղությամբ տարվող աշխատանքներին։ Ուրախալի է, որ կոլտնտեսությունները 1969 թ. տնկեցին 300 հեկտար նոր այգի։ Նրանք լայն նախապատրաստական աշխատանք են ծավալել այդ տեմպերը պահպանելու նաև առաջիկա 2—3 տարում։ Որոշված է, դրան զուգընթաց ամեն տարի 250—300 հեկտար այգի բարձրացնել հենասյուների վրա։



Հին այգիների վերափոխման ու նորերի հիմնման ուղղությամբ օրինակելի գործ է կատարվում հատկապես Դալարի, Այգեզարդի, Մխչյանի, Ն. Դվինի, Նորաշենի, Վերին Արտաշատի, Դիմիտրովի և այլ գյուղերի կոլտնտեսություններում։

Այգեգործության բնագավառում նորը նաև այն է, որ մշակող, բուժող և սնող մեքենաների կողքին տեղ են գտնում նաև այգեբացն ու այգեթաղը կատարող սարքավորումներ։ Այս տարվա գարնանը Դալարի կոլտնտեսությունում փորձարկվեց հենասյունային այգիները բացող «74 հազար» հարմարանքը։ Այդ մեքենայի արտադրողականությունը ժամում կազմում է 1,3—1,5 հեկտար։

Շրջանի կոլտնտեսություններում լայն կիրառում գտավ նաև մեքենայական այգեթաղը։ Անցած աշնանը Ներքին Դվինի, Այգեստանի, Վերին Դվինի, Մրգանուշի և այլ գյուղերի կոլտնտեսություններում «ՊՌՎՆ—2,5» ունիվերսալ գութանով կատարվեց 15—20 հեկտար այգեթաղ։ Գութանի մեկ ժամվա արտադրողականությունը 2—2,5 հեկտար է։

Խաղողագործության մեջ նման և այլ աշխատատար պրոցեսների մեքենայացումը զգալիորեն բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, իջեցնում ծախսերը և, ընդհանրապես, լայն հեռանկարներ է բացում հանրային արտադրության այդ ճյուղի հետագա զարգացման համար։

Կենսագործելով ՀԿԿ Կենտկոմի որոշումը, շրջանի կուսակցական և սովետական կազմակերպությունները, տնտեսությունների ղեկավարները հետևողական աշխատանք կատարեցին նաև բանջարանոցային կուլտուրաների բերքատվության բարձրացման և ստանձնած պարտավորությունների կատարման ուղղությամբ։ 1969 թ. բանջարեղենի մեկ հեկտարի միջին բերքը կազմեց 264 ցենտներ, պլանով նախատեսված 241-ի դիմաց. նախորդ տարվա համեմատությամբ բանջարեղենի արտադրությունն ավելացավ 25 տոկոսով։ Պետությանը բանջարեղեն վաճառելու առաջադրանքը կատարվեց 112 տոկոսով։ Շատ կոլտնտեսություններում հեկտարից այդ կուլտուրաների միջին բերքը կազմեց 350—400 ցենտներ։ Նախորդ տարվա համեմատությամբ կրկնակի չափով ավելացան բոստանային կուլտուրաների միջին բերքատվությունն ու համախառն արտադրանքը, մթերակայաններին հանձնվեցին 50 տոկոսով ավելի բոստանային կուլտուրաներ, քան նախատեսված էր պետական պլանով։

Նախահոբելյանական տարում լուրջ հաջողությունների հասան նաև շրջանի անասնապահները։ Նախորդ տարվա համեմատությամբ, 1969 թ. 8—20 տոկոսով աճել է խոշոր եղջերավոր անասունների, խոզերի ու թռչունների գլխաքանակը։ Այդ նույն ժամանակամիջոցում կաթի համախառն արտադրանքն ավելացել է 1200 տոննայով, մեկ կովի կաթնատվությունը՝ մոտ 200 կիլոգրամով (իսկ առանձին տնտեսություններում՝ 300—400 կիլոգրամով), ձվի արտադրությունը՝ 1,5 անգամով։ Աճել է նաև մսի արտադրությունը։ Շրջանի կոլտնտեսությունները ժամկետից շուտ կատարել են անասնապահական մթերքների արտադրության ու վաճառքի տարեկան բոլոր առաջադրանքները։ Պլանից ավելի պետությանն է վաճառվել 100 տոննա միս, 1260 տոննա կաթ, 700 հազար հատ ձու։ Բնորոշն այն է, որ անասնապահական մթերքների արտադրությունն աճել է բոլոր կոլտնտեսություններում։

Անասնաբուծության զարգացման պլանների հաջող կատարումը պայմանավորված է կերային կուլտուրաների բերքատվության բարձրացմամբ։ Շրջանի տնտեսություններն անցյալ տարի կուտակեցին այնքան խոտ և սիլոս, որ ոչ միայն բավարարեցին սեփական պահանջները, այլև կերով օգնե-

ցին Հանրապետության առանձին շրջանների մի շարք տնտեսությունների։

Անասնապահության ասպարեզում ձեռք բերած առավել բարձր ցուցանիշների համար 1969 թվականի առաջին և երկրորդ եռամսյակներում շրջանին շնորհվեց՝ ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի փոխանցիկ կարմիր դրոշը և առաջին կարգի դրամական մրցանակը։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և հանրային անասնապահության մթերատվության բարձրացման շնորհիվ զգալիորեն աճեց տնտեսությունների ընդհանուր եկամուտը, որը, նախնական հաշվարկներով, կկազմի շուրջ 20 միլիոն ռուբլի՝ 1968 թվականի 13 միլիոն ռուբլու փոխարեն։ Դա հնարավորություն կտա ընդլայնելու հանրային արտադրությունը, բարձրացնելու կոլտնտեսականների աշխօրերի հասույթը, ծավալելու արտադրական, կուլտուր-կենցաղային այլ օբյեկտների շինարարությունը։

Շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական ցուցանիշների բարձրացումը, առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարումը արդյունք են այն բանի, որ ՀԿԿ շրջկոմը վերջին շրջանում ավելի հետևողականորեն զբաղվեց գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերով, կոլտնտեսային ու սովխոզային արտադրության զարգացման գործում բարձրացրեց սկզբնական կուսկազմակերպությունների դերն ու մարտունակությունը, նրանց կողմից կատարվող քաղաքական ու կազմակերպական աշխատանքի մակարդակը։

Կոմունիստական կուսակցության հիմնադիր և առաջնորդ Վ. Ի. Լենինը ուսուցանում է, որ բարձր պահանջկոտությունն ու կազմակերպվածությունը տասնապատկում են կուսակցության ուժը։ Իսկ դա հնարավոր է միայն ու միայն կոմունիստների հայացքների ու գործողությունների միասնության. ՍՄԿԿ կանոնադրության և կուսակցական կյանքի լենինյան նորմերի անշեղ կենսագործմամբ։

Այդ պահանջի հետևողական իրագործման շնորհիվ ավելի կբարձրանա սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը։ Ներկայումս շրջանի 39 կոլտնտեսությունում և 2 սովխոզում գործում են սկզբնական կուսկազմակերպություններ, դաշտավարական բրիգադներում և ֆերմաներում՝ կուսակցական խմբեր, որոնցում հաշվվում են 1200 կուսանդամ-թեկնածուներ։ Պետք է ուղղակի ասել, որ կոմունիստներն ամենուրեք ավանգարդային դերում են, ակտիվորեն մարտնչում են կուսակցության առաջադրած խնդիրների հաջող լուծման համար։ Ահա գյուղատնտեսության արագ վերելքի համար ակտիվ մարտնչող կոմունիստներից բրիգադավարներ՝ Ժ. Սահակյանը (Այգեզարդ), Ա. Խաչատրյանը (Քաղցրաշեն), որոնք մեկ հեկտարից ապահովել են 225—240 ցենտներ խաղողի միջին բերք, բանջարաբույծներ՝ Հ. Բաբաջանյանը (Մասիս), Բ. Դավթյանը (Շահումյան) մեկ հեկտարից ստացել են ավելի քան 600 ցենտներ բերք։ Այդպիսի օրինակներ շատ կարելի է բերել անասնապահության և հանրային տնտեսության մյուս բնագավառներից։

Շրջկոմը ժամանակին սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործի արմատական բարելավման և եղած թերությունների ու սխալների վերացման վրա։ Կատարված հետևողական աշխատանքի շնորհիվ զգալիորեն բարելավվեց կոլտնտեսությունների ղեկավարների, գյուղատնտեսության մասնագետների, ինչպես նաև միջին օղակի կադրերի ընտրությունն ու դաստիարակությունը։ Վերջին հաշվետու-ընտրական ժողովների ժամանակ 11 կոլտն-



տեսություններում ընտրվեցին նոր նախագահներ, որոնք անհրաժեշտ կազմակերպական ունակություններով օժտված մարդիկ են։ Այժմ 39 կոլտնտեսության և 2 սովխոզի ղեկավարներից 80 տոկոսն ունի բարձրագույն, ընդսմին 30 հոգին՝ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն։ Գյուղատնտեսության մեջ աշխատում են բարձրագույն կրթությամբ 300 գյուղատնտես, անասնաբույծ, անասնաբույժ և ինժեներ։

Այնտեղ, ուր խախտվում է կադրերի ճիշտ ընտրության ու տեղաբաշխման կուսակցական սկզբունքը, նրանց հետ պատշաճ աշխատանք չի կատարվում, բացակայում է վերահսկողությունը, հաջողություններ սպասել չի կարելի, ձախողումներն անխուսափելի են։ Մի ժամանակ հենց այդպիսի դրություն էր ստեղծվել Շահումյան գյուղի կոլտնտեսությունում, որն, ի դեպ, խոշորագույններից է շրջանում և ունի բազմաճյուղ տնտեսություն։ Այստեղ կադրերի սխալ ընտրության, աշխատողների նկատմամբ պահանջկոտության և վերահսկողության բացակայության պատճառով խիստ նվազել էր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն ու անասունների մթերատվությունը, շռայլվում էր հանրային ունեցվածքը, ընկած էր աշխատանքային կարգապահությունը։

Հաշվի առնելով ստեղծված վիճակը, ՀԿԿ շրջկոմը այդ կոլտնտեսության վարչության նախագահ երաշխավորեց գյուղի դպրոցի դիրեկտոր Պարույր Գասպարյանին, որը լավ է ճանաչում մարդկանց, ունի գործարար հատկանիշներ։ Կոլտնտեսականները նույնպես ճանաչում էին ընկ. Պ. Գասպարյանին և իրենց հաշվետու-ընտրական ժողովում նրան ընտրեցին վարչության նախագահ։ Պետք է ասել, որ շահումյանցիները չսխալվեցին. այդ կոլտնտեսությունը հնգամյակի չորրորդ տարին նույնպես եզրափակում է արտադրական լավագույն ցուցանիշներով։ Խաղողի արտադրության պլանը կատարվել է 135 և բանջարեղենինը՝ 127,5 տոկոսով, զգալիորեն ավելացել է անասունների գլխաքանակը և նրանց մթերատվությունը։ Կոլտնտեսությունում աշխատանք է ծավալվել անասունների տոհմային կազմի բարելավման նպատակով. անցյալ տարի գնվել է բարձր ցեղային հատկանիշներ ունեցող 100 կով։ Կոլտնտեսության ընդհանուր եկամուտներն 1968 թ. համեմատությամբ 1969 թ. կրկնապատկվել են։

Կուսշրջկոմը և շրջսովետի գործկոմը մշակել են աշխատանքի լրացուցիչ վարձատրության հիմնական սկզբունքները։ Դրանք կոլտնտեսությունների ժողովներում քննության առնելուց և հաստատվելուց հետո կիրառվում են պրակտիկայում։ Լրացուցիչ վարձատրության սիստեմի խելացի կազմակերպումը նյութապես շահագրգռեց գյուղի աշխատավորներին, որի շնորհիվ զգալիորեն բարձրացավ գյուղատնտեսական կուլտուրաների և անասնապահական մթերքների արտադրությունը, ավելացան հանրային տնտեսությունների եկամուտները։

Շրջանային կուսկազմակերպությունը որոշակի աշխատանք է տանում գյուղատնտեսական արտադրության մեջ առաջավոր փորձի և գիտության նվաճումների արմատավորման ուղղությամբ։ Յուրաքանչյուր եռամսյակ ՀԿԿ շրջկոմի, շրջսովետի գործկոմի ժյուրին հանրագումարի է բերում անասնապահների մրցության արդյունքները, փոխանցիկ դրոշ և հուշադրոշ շնորհում առաջավորներին։ Նրանք խրախուսվում են շրջանային «Արտաշատ» թերթում և շրջկոմի կողմից պարբերաբար լույս ընծայվող նպատակային «Թերթիկ»-ում։

Մեքենայացվեցին բանջարա-բոստանային կուլտուրաների մշակության ու

բուժման հիմնական աշխատանքները։ Տարվա ընթացքում կոլտնտեսությունների ու սովխոզների մեքենա-տրակտորային պարկը համալրվեց շուրջ 300 տրակտորներով, փոշոտիչներով, գութաններով և այլ մեխանիզմներով։

Կուսակցական կազմակերպությունները հատուկ ուշադրություն են նվիրում նաև քիմիացման և ոռոգման, ջրաշինարարության և ոռոգելի ջրերի արդյունավետ օգտագործման հարցերին։ 1969 թ. շրջանի տնտեսություններում առավել արդյունավետ օգտագործվեցին քիմիկատներն ու պարարտանյութերը։ Այժմ 1 հեկտար վարելահողին տրվում է 1 տոննա հանքային պարարտանյութ։ Առանձին տնտեսություններում դա հասնում է 1,5—2 տոննայի։

Այն, ինչ կատարել են շրջանի կուսակցական, սովետական և տնտեսական կազմակերպությունները, մեծ գործերի սկիզբն է միայն։

Գաղտնիք չէ, որ անցյալի այնպիսի մնացուկները, ինչպիսիք են հանրային աշխատանքի և սեփականության նկատմամբ անբարեխիղճ վերաբերմունքը, տնամերձ տնտեսությամբ չափից դուրս հրապուրվելը, աշխատանքային կարգապահության խախտումները և այլն, ունենում են բացասական ազդեցություն։ Կան մարդիկ, որոնք ինքնագլուխ թողնում են կոլտնտեսությունը և մեկնում սեզոնային աշխատանքի։

Կուսակցական և սովետական կազմակերպությունները քաղաքական-կազմակերպչական աշխատանքի բոլոր ձևերով ու մեթոդներով պայքար են մղում այդ բացասական երևույթների դեմ։

Կուսակցական, սովետական, տնտեսական ակտիվիստներից ստեղծել են բրիգադներ և կցել կոլտնտեսություններին՝ գյուղում քաղաքական-կազմակերպական աշխատանքն ուժեղացնելու համար։ Այդ ընկերները գյուղական աշխատավորությանը պարզաբանում են կուսակցության քաղաքականությունը, պատասխանում նրանց հուզող հարցերին, ելույթներ ունենում պետության ներքին ու արտաքին քաղաքականության, կոլտնտեսականների համամիութենական III համագումարի արդյունքների, կոլտնտեսության նոր օրինակելի կանոնադրության և «Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ» ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսների շուրջ։ Այս ամենի շնորհիվ բարձրացել է կոլտնտեսականների և սովխոզների բանվորների ու ծառայողների, գյուղի բոլոր մարդկանց արտադրական ու քաղաքական ակտիվությունը։

Կոլտնտեսային կարգի և կոլտնտեսային դեմոկրատիայի զարգացման, գյուղատնտեսության վերելքի գործում նոր էտապ նշանավորեց կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարը։ Այդ համաժողովի արդյունքներն արժանացան շրջանի բոլոր աշխատավորների խանդավառ և միահամուռ հավանությանը. Նրանք պատրաստակամություն հայտնեցին առաջնորդվել համագումարում շարադրված սկզբունքներով, կոլտնտեսության նոր օրինակելի կանոնադրությամբ, արտադրական ավելի մեծ հաջողություններով դիմավորել Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը և Հայաստանում սովետական կարգերի հաստատման կեսդարյա տարելիցը։ Շրջանային կուսկազմակերպությունը օգնում է կոլտնտեսային գյուղի աշխատավորների այդ հայրենասիրական վառ ձգտումների իրականացմանը։

28-ը դեկտեմբերի, 1969 թ.



# ՔԱՂԱՔԱԿԱՆ-ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՇՐՋԱՆՈՒՄ

(Կիրովականի կուսկազմակերպության աշխատանքի փորձից)

Հ. Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ

ՀԿԿ Կիրովականի քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

Կիրովականը մեր հանրապետության արդյունաբերական և կուլտուրական երրորդ խոշոր կենտրոնն է։ Այն անճանաչելիորեն փոխվել է հատկապես վերջին 15—20 տարիներին։ Եթե առաջներում Կիրովականը համարվում էր միայն քիմիայի քաղաք, ապա այժմ դարձել է նաև մեքենաշինության, ճշգրիտ հաստոցների և ավտոմատ սարքերի արտադրության, գիտահետազոտական հիմնարկությունների քաղաք։ Բավական է ասել, որ այժմ Կիրովականում կան երեսունից ավելի արդյունաբերական ձեռնարկություններ, որոնց արտադրանքն արտահանվում են Սովետական Միության 189 քաղաքներ և արտասահմանյան 35 երկրներ, գործում են 30 դպրոց, պոլիտեխնիկական և մանկավարժական ինստիտուտներ, միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններ, որոնցում սովորում են տասնյակ հազարավոր երեխաներ, պատանիներ ու աղջիկներ։

Քաղաքի աշխատավորները պարտավորվել են Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը դիմավորել աշխատանքային նոր հաջողություններով՝ հնգամյա պլանը ամբողջությամբ վերցրած կատարել 1970 թ. նոյեմբերի 1-ին, իսկ աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքն ավելի շուտ՝ ապրիլի 20-ին։ Այդ նպատակով ծավալված մրցությունն ավելի բորբոքվեց Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսների հրապարակումից հետո։ Կուսակցական կազմակերպությունները լայնորեն պրոպագանդելով այդ քաղաքական-տեսական փաստաթուղթը, աշխատավորների ստեղծագործական ուժերը մոբիլիզացնում և նպատակամղում են ստանձնած պարտավորությունների կատարմանը։

ՀԿԿ քաղկոմը, քիմկոմբինատի, քիմիական մանրաթելերի, ճշգրիտ հաստոցների, «Ավտոմատիկա»-ի և ավտոգենմաշ գործարանների, ինչպես նաև քաղաքի դպրոցների կուսկազմակերպությունները Կենտկոմի թեզիսները լայնորեն պրոպագանդում են նաև աշխատավորների բնակության վայրերում, կազմակերպում են դասախոսություններ, զեկուցումներ և քաղաքական զրույց-

ներ՝ այդ գործում ներգրավելով քաղաքի լավագույն պրոպագանդիստներին և ագիտատորներին։

Աշխարհում տեղի ունեցող վիթխարի փոփոխությունները, կոմունիստական շինարարության հարուստ առօրյան պահանջում են ընդլայնել գաղափարական աշխատանքի ոլորտը։ Դրան հասնելու համար քաղ-մասսայական աշխատանքը պետք է տանել ոչ միայն խորությամբ, այլև լայնությամբ, գնալ դեպի թաղամասերը, բազմապիսի հետաքրքիր միջոցառումներ կազմակերպել ըստ բնակության վայրի։

Հասկանալի է, որ բնակության վայրում տարվող աշխատանքն ունի իր առանձնահատկություններն ու դժվարությունները։ Այստեղ պահանջվում են գաղափարական աշխատանքի յուրահատուկ մեթոդներ ու ձևեր։ Ագիտատորը և պրոպագանդիստը պետք է գիտակցեն, որ իրենք բնակության վայրում գործ ունեն տարբեր խավերի՝ տնային տնտեսուհիների, տարեց կենսաթոշակառուների, ուսանողների և այլ տարիքի ու նախասիրությունների մարդկանց հետ։ Ուստի պետք է շերտավորված մոտեցում ունենալ լսարանի ունկնդիրների նկատմամբ, իմանալ նրանց կրթական մակարդակը, հոգևոր պահանջները։

Բնակավայրում տարվող քաղմասսայական ամբողջ աշխատանքը պետք է լինի կոնկրետ և նպատակասլաց, բնակչությանը պարզաբանի կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության քաղաքականությունը, նրա մեջ զարգացնի հասարակական ինքնագործունեությունը, կազմակերպվածությունը, կարգ ու կանոնի խիստ պահպանումը։

ՍՄԿԿ XXIII համագումարից հետո Կիրովականի կուսկազմակերպությունն այդ ուղղությամբ կատարել է որոշակի աշխատանք, որն այժմ ընդհանրացման կարիք ունի։ Քաղկոմն ուշի ուշով հետևում է ըստ բնակավայրի կուսկազմակերպությունների կատարած աշխատանքին, ժամանակին խրախուսում և մասսայականացնում լավ նախաձեռնությունները։ Որպես օրինակ կարող է ծառայել քաղաքում սկսված կոմունիստական կենցաղավարության շարժումը։ Այդ շարժման սկիզբը դրվեց Լենինի պողոտայի № 24 տան բնակիչների կողմից։ Նրանց օրինակով քաղաքի 50 բնակելի տներում ստեղծվել են կոմունիստական կենցաղավարության 43 խորհուրդներ, որոնցում ընդգրկված են 275 ակտիվիստներ՝ տնային տնտեսուհիներ, առաջավոր բանվորներ, ինժեներներ, մանկավարժներ, բժիշկներ, աշխատանքի և պատերազմի կենսաթոշակառու վետերաններ։ Տների բնակիչները իրենց ժողովներում ընտրում են կոմունիստական կենցաղավարության խորհուրդներ, խորհուրդներն ընտրում է իրենց նախագահը։ Խորհրդին կից ստեղծվում են 3—5 հոգուց բաղկացած զանազան սեկցիաները (կուլտ-մասսայական, բարեկարգման, երեխաների հետ տարվող դաստիարակչական աշխատանքի և այլն)։ Շատ տների ներքնահարկերում ստեղծվել են հարմարավետ ակումբներ։

Խորհուրդը և նրա սեկցիաներն աշխատում են իրենց մշակած պլանով։ Նրանք բնակիչների ուժերով կազմակերպում են դասախոսություններ, զրույցներ, կինոնկարների ցուցադրումներ, գեղարվեստական ինքնագործունեության համերգներ։ Այս միջոցառումները նպաստում են բնակիչների ակտիվության բարձրացմանը։ Շահումյան փողոցի № 142 տան բնակիչները լսել են «Մասնակցենք հարազատ քաղաքի բարեկարգմանը» թեմայով զեկուցում և միահամուռ որոշել սեփական ուժերով, առանց քաղսովետի գործկոմից գումար պահանջելու, բարեկարգել իրենց բնակելի շենքի շրջակայքը։ Այնուհետև սկսվել է իսկական աշխատանքային եռուզեռ, ամենուրեք հեռացվել են



հողակույտերը, հարթեցվել ընդարձակ տարածություն, որտեղ տնկվել են մոտ 50 պտղատու ծառ, 150 թուփ, կանաչապատվել շենքի չորս կողմը։ Այդ օրն աշխատեցին բոլորը, մեծից մինչև պատանին, իսկ աշխատանքից հետո, երեկոյան, նրանք կահավորված ակումբում լսեցին զրույց և դիտեցին կինոնկար։

Շահումյան փողոցի № 142 տան բնակիչները համակված են փոխօգնության զգացումով։ Այստեղ էլեկտրամոնտյորները օգնում են հարևաններին, կարգի գցում էլեկտրական սարքավորումները, հյուսները վերանորոգում են տան լուսամուտները և դռները։ Մանկավարժները բնակիչներին օգնում են ճիշտ կազմակերպելու իրենց երեխաների կրթության ու դաստիարակության գործը և այլն։

Լուրջ ուշադրություն դարձնելով քաղաքի բնակչության շրջանում տարվող քաղաքական-կազմակերպական աշխատանքին, կուսակցության քաղկոմը պարբերաբար հրավիրում է կոմունիստական կենցաղավարության խորհուրդների նախագահների խորհրդակցություններ, խորամուխ լինում նրանց գործունեության մեջ։ Կոմունիստական կենցաղավարության խորհուրդների լավ աշխատանքը խրախուսելու համար սահմանված է փոխանցիկ դրոշ։ Կենցաղավարության խորհուրդների անդամները, նրանց շուրջն համախմբված ակտիվը հաճախում են ժողովրդական համալսարանի պարապմունքներին։

Քաղաքային կոմիտեն սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների խորհրդակցություններում միշտ նրանց ուշադրությունը սրում է աշխատավորների բնակության վայրում քաղաքական-մասսայական աշխատանքների, հատկապես երեխաների դաստիարակության ուժեղացման հարցերի վրա։ Շնորհիվ այս ամենի վերջին ժամանակներս քաղաքում գրեթե լրիվին վերացել են առանձին երեխաների կողմից կատարվող հակահասարակական արարքները, անկարգությունները, անախորժ վեճերն ու տհաճ չարաճճիությունները։ Ամռան ամիսներին քաղաքի թաղամասերն ավելի են աշխուժանում։ Բակային պիոներական ճամբարներն վերսկսում են իրենց աշխատանքը։ Կոմունիստական կենցաղավարության խորհուրդները և նրանց համապատասխան սեկցիաները բակային ճամբարներին օգնելը, երեխաների կոմունիստական դաստիարակությունը, նրանց հանգստի կազմակերպումը համարում են իրենց հարազատ գործը։

Քաղաքի դպրոցներում սովորում են 20 հազար երեխա, որոնցից շատերի մայրերը չեն աշխատում, տնային տնտեսուհիներ են, ուստի և կտրված հասարակական կյանքից։ Հաշվի առնելով այդ, քաղկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները պլանաչափ աշխատանք են տանում տնային տնտեսուհիների հետ, որպեսզի վերջիններս ի վիճակի լինեն պատշաճ կերպով դաստիարակելու իրենց երեխաներին։ Նրանց համար կազմակերպվում են հատուկ դասախոսություններ, զեկուցումներ և քաղաքական զրույցներ՝ կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության որոշումների, երեխաների կոմունիստական դաստիարակության հարցերի շուրջ։

Առանձնապես ուսանելի է քաղաքի № 1 դպրոցի կուսկազմակերպության և դիրեկցիայի աշխատանքի դրական փորձը։ Նրանց նախաձեռնությամբ հաշվի են առնվել դպրոցում սովորող աշակերտների չաշխատող ծնողները և նրանց համար կազմակերպվել ծնողական համալսարան, ուր անց են կացնում հետաքրքիր միջոցառումներ ընտանիքում երեխաների դաստիարակության, դպրոցի և ընտանիքի համագործակցության ուժեղացման հարցերի շուրջ։ Ծնողների համար դասախոսություններ են կարդացվել «Ուլյանովների

ընտանիքը», «Սովետական Հայաստանի նվաճումները», «Վ. Ի. Լենինը կոմունիստական կուսակցության հիմնադիրն է» թեմաներով։ Սովորաբար դասախոսություններից ու զեկուցումներից հետո տրվում են համերգ կամ ցուցադրվում որևէ կինոնկար։

Այդպես է աշխատում նաև № 5 դպրոցի կուսկազմակերպությունը։ ՀԿԿ քաղկոմը որոշել է № 1 և № 5 դպրոցների կուսկազմակերպությունների աշխատանքի ուսանելի փորձը մասսայականացնել, դարձնել քաղաքի մյուս դպրոցների կուսկազմակերպությունների սեփականությունը։

Գաղափարական աշխատանքի արդյունավետ ձև է հարց ու պատասխանի երեկոները, որոնք անց են կացվում ինչպես առանձին թաղամասերում, այնպես էլ համաքաղաքային մասշտաբով։ Մեկ ամիս առաջ արկղներ են դրվում շենքերի շքամուտքերում՝ հետևյալ մակագրությամբ։ «Գրեցեք ձեզ հետաքրքրող հարցերի մասին և կստանաք պատասխանը»։ Բացում ենք արկղները և հարցերը շերտավորում, որից հետո այն տրվում է համապատասխան մասնագետներին ուսումնասիրելու և պատասխանելու։ Գրվում է հայտարարություն, հաղորդվում տեղական ռադիոյով, բոլոր բնակիչներն իմանում են անցկացվող միջոցառման օրը, ժամն ու կարգը։ Որոշված ժամին հավաքվում են բնակիչները և լսում իրենց հարցերի պատասխանները։ Վերջին երեկոյի համար ստացված հարցերի մեծ մասը վերաբերում էր քաղաքային տնտեսությանը, տրանսպորտի աշխատանքին, միջազգային իրադրություններին և տիեզերքի նվաճման մեր հաջողություններին։ Տասնյակ լրացուցիչ հարցեր տրվեցին բուն երեկոյի ընթացքում։

Իհարկե, լինում են հարցեր, որոնց պատասխանելը կամ լուծումը պահանջում է երկար ժամանակ։ Նման հարցերը հաշվի են առնվում և տրվում այն կազմակերպություններին, որոնք պարտավոր են լուծել դրանք։ Հարցի լուծումից հետո գրվում է քաղաքային «Կայծ» թերթում կամ հայտնվում բնակիչներին։

Հարց ու պատասխանի երեկոների այս ձևով անցկացումը մեծ հետաքրքրություն է առաջացնում բնակիչների շրջանում, բարձրացնում նրանց ակտիվությունը և մոբիլիզացնում կատարելու քաղաքի առջև դրված խնդիրները։ Այժմ նախապատրաստում ենք հարց ու պատասխանի երեկոներ կազմակերպել ևս հինգ թաղամասերում։

Գաղափարական աշխատանքի կարևոր ձև է ղեկավար աշխատողների հանդիպումները բնակիչների հետ։ Նախօրոք ուսումնասիրվում է թե տվյալ թաղամասի բնակիչներին ինչն է ամենից շատ հետաքրքրում, ինչ չլուծված հարցեր կան։ Հայտնվում է ղեկավարներին, այնուհետև գրվում է հայտարարություն և փակցվում շքամուտքում։ Այս ամենը մեծ հետաքրքրություն է առաջ բերում բնակչության շրջանում։ Վերջերս քաղաքի № 70 տան բնակիչների հետ հանդիպում ունեցան քաղաքի ղեկավար աշխատողները։ Որոշվեց սկզբում միջազգային դրության մասին զեկուցում լսել և ապա անցնել հարց ու պատասխանին։ Միջազգային դրության մասին զեկուցումով հանդես եկավ Կ. Միրզոյանը (քաղկոմի դասախոս), որից հետո քաղաքի զարգացման հեռանկարների մասին խոսեց քաղսովետի դեպուտատ Հ. Եսայանը։ Եղան բազմաթիվ հարցեր, որոնց մեծ մասը վերաբերվում էր քաղաքային տնտեսությանը։ Բնակիչները հարց դրեցին ավելի գեղեցկացնել քաղաքը, բարեկարգել թաղամասը, ստեղծել կոմունալ կենցաղային անհրաժեշտ հարմարություններ։

Այնուհետև քաղսովետի գործկոմի նախագահի տեղակալ Վ. Ավետիսյանը



հանգամանորեն պատասխանեց բնակիչների առաջադրած հարցերին։ Հաջորդ օրը կուսակցության քաղկոմի և քաղսովետի գործկոմի կողմից քաղաքի համապատասխան օբյեկտների ղեկավարներին հանձնարարություն տրվեց, թե նրանք ինչ աշխատանք պետք է կատարեն տվյալ թաղամասում։ Կարճ ժամանակում էլեկտրական լույս անցկացվեց թաղամասի բոլոր փողոցներում, բոլոր բնակիչները ապահովվեցին խմելու ջրով։

Ըստ բնակության վայրի աշխատանքը քաղկոմին և սկզբնական կուսկազմակերպություններին հնարավորություն է ընձեռում մոտիկից ծանոթանալ հայրենադարձ հայերին, որոնք քիչ չեն մեր քաղաքում։ Մեր այդ ազգակից եղբայրները երկար ժամանակ ապրել են բուրժուական երկրներում, ճաշակել կապիտալիստական «դրախտի» բոլոր գայթակղությունները։ Վերադառնալով հայրենիք, նրանք ճաշակել են իսկական ազատությունը, դարձել ՍՍՀՄ իրավահավասար քաղաքացի։ Այժմ նրանք ձգտում են լավ տիրապետել կոմունիստական աշխարհայացքին, մինչև վերջ ազատվել բուրժուական գաղափարախոսության ազդեցությունից։ Այստեղ է, որ առավել մեծ անելիքներ ունեն քաղաքի կուսակցական կազմակերպությունները։ Լավագույն պրոպագանդիստական կադրերը աշխատանք են տանում հայրենադարձ հայերի շրջանում։ Քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը կազմում է նրանց համար կարդացվելիք զեկուցումների և դասախոսությունների առանձին թեմատիկա։ Բացի մասսայական միջոցառումներից, նրանց հետ անց են կացվում անհատական զրույցներ։ «Դիմաց» թաղամասում, որտեղ մեծ թվով հայրենադարձներ կան, գործում է Կոմիտասի անվան ակումբը։ Այստեղ երեկոները բազմամարդ է լինում, կազմակերպվում են զեկուցումներ, տրվում են համերգներ, անց են կացվում հարց ու պատասխանի երեկոներ։

Ըստ բնակության վայրի տարվող գաղափարական աշխատանքին մասնակցում են նաև քաղսովետի դեպուտատները։ Նրանք սիստեմատիկաբար լինում են իրենց ընտրողների մոտ, հետաքրքրվում նրանց կյանքով, պատասխանում նրանց կողմից առաջադրվող հարցերին։ Այն հարցերի մասին, որոնք տեղում ի վիճակի չեն լուծելու, դեպուտատները հայտնում են քաղսովետի գործկոմին։

Քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը օգնում է դեպուտատներին ընտրել ընդհանուր քաղաքական զրույցների թեման, հուշում, թե որ թաղամասում ինչ հուզող հարցեր կան։ Իրենց լավ աշխատանքով բնակչության շրջանում մեծ հարգանք են վայելում դեպուտատներ՝ Ս. Ղարդաշյանը, Կ. Միրզոյանը, Ս. Գևորգյանը և մյուսները։

Ըստ բնակության վայրի տարվող գաղափարական աշխատանքը նպաստում է օպերատիվ կարգով լուծելու բնակչությանը հուզող շատ հարցեր, ամրապնդում կուսակցական և սովետական կազմակերպությունների կապը աշխատավորական մասսաների հետ։ Ուշագրավ է հետևյալ դեպքը։ Քաղաքի երրորդ մաս կոչվող թաղամասի բնակիչների համար կազմակերպված հերթական քաղզրույցի ժամանակ վերջիններս ցավով խոսեցին այն մասին, որ թաղամասի № 7 դպրոցում բարվոք չէ գործերի վիճակը, որի հետևանքով երեխաները կայուն գիտելիքներ չեն ստանում։ Անհրաժեշտություն առաջացավ մոտիկից ուսումնասիրել բարձրացված հարցը։ Քաղկոմը առանձնացրեց հատուկ բրիգադա և մանրամասն ուսումնասիրեց այդ դպրոցում ուսումնա-դաստիարակչական աշխատանքների վիճակը։

Բացահայտվեցին լուրջ թերություններ. պարզվեց, որ որոշ ուսուցիչներ

զբաղվում են բամբասանքով, չեն աշխատում իրենց վրա, անբարեխիղճ վերաբերմունք են դրսևորում իրենց պարտավորությունների կատարման գործում և այլն։ Քաղկոմի բյուրոն փոխեց դպրոցի ղեկավարությունը և միջոցներ ձեռնարկեց բացահայտված թերությունները վերացնելու համար։ Դպրոցի նոր ղեկավարությունն այժմ մեծ ջանքեր է գործադրում ուսումնա-դաստիարակչական աշխատանքի բարելավման համար, նրան մեծ օգնություն են ցույց տալիս ծնողական կոմիտեն և մյուս հասարակական կազմակերպությունները։

Ըստ բնակության վայրի ազգաբնակչության շրջանում կատարվող աշխատանքում կարևոր տեղ են գրավում կուլտմասսայական միջոցառումները, որը պլանավորվում և իրականացվում են քաղսովետի գործկոմի կուլտուրայի բաժնի կողմից։ Թաղամասերում սիստեմատիկաբար հանդես են գալիս ձեռնարկությունների և հիմնարկությունների գեղարվեստական ինքնագործունեության խմբերը։ Մեծ շուքով նշվեցին Հ. Թումանյանի և Կոմիտասի ծննդյան 100-ամյակները։ Գրականագետներ Մ. Սանթոյանը, Ա. Մատինյանը, գրող Նոր-Այրը, ժողովրդական դերասան, կոմպոզիտոր Էդ. Կզարթմյանը, Ջ. Կապլանյանը և երաժշտական ուսումնարանի դասատուները հոբելյանական օրերին հետաքրքիր զեկուցումներով հանդես եկան քաղաքի մի շարք թաղամասերում։ Դժվար է նկարագրել այն ոգևորությունը, որով այդ օրերին համակված էին կիրովականցիները։

Կարևոր նշանակություն ունեն պարբերաբար անցկացվող համաքաղաքային կուլտուր-մասսայական միջոցառումները, որոնք ջերմ ընդունելություն են գտնում աշխատավորների շրջանում։ Այսպես, արդեն լավագույն ավանդույթ դարձած «Երգի», «Ծաղկի», «Ջանգյուլումի», «Լոռվա ձմեռ» միջոցառումները, որոնց անցկացման ժամանակ կազմակերպվում են մասսայական զբոսանքներ, երգեր, պարեր, սպորտային խաղեր ու մրցումներ, մասնակցողների թիվը հասնում է 10—15 հազարի։ Նրանք ռադիոբարձրախոսների միջոցով լսում են լավագույն դասախոսների՝ քաղաքական թեմաներով ելույթները։

Մեր քաղաքում նշվում է նաև «Քիմիագործի», «Կարբիդագործի» և «Վարպետի» օրերը, որոնք ուղեկցվում են աշխատանքի վետերանների մեծարման հանդիսավոր երեկոների անցկացմամբ։

Բազմազան են ըստ բնակության վայրի կազմակերպվող քաղաքական-մասսայական աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Մեզ առայժմ հաջողվել է միայն որոշ աշխատանք կատարել այդ ուղղությամբ։ Կուսակցության քաղաքային կոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները դա համարում են մեծ անելիքների սկիզբը միայն։ Մենք դեռ շատ ջանքեր պետք է գործադրենք, որպեսզի քաղաքի բնակչությանը լիովին ընդգրկենք քաղաքական-մասսայական աշխատանքի ոլորտում, է՛լ ավելի բարձրացնենք աշխատավորական լայն զանգվածների քաղաքական ակտիվությունը, նրանց մոտ ավելի ևս զարգացնենք ստեղծագործական նախաձեռնությունները։





## ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ

ՍՄԿԿ XXIII համագումարը և Կենտրոնական կոմիտեի մարտյան (1965 թ.) պլենումը սովխոզների և կոլտնտեսությունների արտադրության մասնագիտացման և ինտենսիվացման համար ուրվագծեցին մի շարք կարևոր միջոցառումներ, որոնց մեջ կարևորագույն նշանակություն ունի գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազայի ամրապնդումը, այդ թվում կոմպլեքսային մեքենայացման ներդնումը։

Այդ հարցին լայնորեն անդրադարձավ նաև կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարը։ Համագումարում կոլտնտեսության նոր օրինակելի կանոնադրության մասին տված իր զեկուցման մեջ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահի առաջին տեղակալ ընկ. Դ. Ս. Պոլյանսկին ասաց.

«Գյուղատնտեսության զարգացման տեմպերն արագացնելու անհրաժեշտությունը պարտավորեցնում է զգալիորեն ուժեղացնել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի կոմպլեքսային մեքենայացման հարցերին ցույց տրվող ուշադրությունը, բարձրացնել գյուղատնտեսական մեքենաշինության, կոլտնտեսային և սովխոզային արտադրության էլեկտրիֆիկացման մակարդակը։ Արտադրության նյութատեխնիկական բազայի ուժեղացումը պահանջում է մշակել ավելի հզոր և հուսալի տեխնիկա, այն արագորեն յուրացնել»։ Այնուհետև, «...ամեն մի տնտեսություն պարտավոր է ավելի լավ օգտագործել հզոր տեխնիկան, գործի դնել իր բոլոր ռեզերվները»։

Գյուղատնտեսության ներկայիս էներգազինվածությունն արդեն հնարավորություն է տալիս ավարտել մի շարք կուլտուրաների մշակության կոմպլեքսային մեքենայացումը։ Պետք է նկատի ունենալ, որ վերջին տարիներս մեր գյուղատնտեսության մեջ գործող մեքենա-տրակտորային պարկն ավելացել է թե քանակապես և թե որակապես, արտադրության մեջ ներդրվել են նոր, ավելի բարձր տեխնիկա-տնտեսական ցուցանիշներ ունեցող մեքենաներ։ Առաջիկա ժամանակաշրջանում դրանց թիվը զգալիորեն կաճի։ Բավական է նշել, որ միայն ընթացիկ տարում տրակտորների արտադրությունը կհասնի 625 հազար հատի, այսինքն գրեթե երկու անգամ ավելի, քան 1964 թվականին։ Համարյա նույն հարաբերակցությամբ կավելանա նաև կոմբայնների, բեռնատար ավտոմեքենաների և այլ մեքենաների արտադրությունը։

Մեքենաների քանակի անընդհատ աճը, նրանց տեխնիկա-տնտեսական ցուցանիշների կատարելագործումը հնարավորություն է տվել թեթևացնել մարդու աշխատանքը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, գյուղատնտեսական աշխատանքները կատարել ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում, լավացնել արտադրանքի որակը։ Այդ ամենը, բնականաբար, մեծապես նպաստել են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացմանը, ներդրված ծախսերի կրճատմանը և տնտեսությունների ստացած եկամուտների ավելացմանը։

Սակայն, բավական չէ ունենալ մեծ քանակությամբ, բարձր տեխնիկա-տնտեսական ցուցանիշներ ունեցող նորագույն տեխնիկա. անհրաժեշտ է նաև այն օգտագործել նպատակին, ճիշտ կազմակերպելով շահագործումը, տեխնիկական սպասարկումը և նորոգումը։ Այլապես մեքենայից չի կարելի ստանալ այնպիսի արդյունք, որպիսին, համաձայն կոնստրուկտիվ կանխատեսումների, այն ի վիճակի է տալու։

Բացառիկ կարևոր նշանակություն ունի նաև ձեռնարկության պահանջին համեմատ մեքենաների առաքումը։ Մեքենաների քանակի և որակի անհամապատասխանությունը ձեռնարկության պահանջներին, հանգեցնում է աշխատանքների թերակատարմանը, աշխատուժի մեծ պահանջի, կապիտալ ներդրումների աննպատակ ծախսումների, միևնույն ժամանակ ավելանում են մեքենաների շահագործական ծախսերը՝ կապված նրանց նորոգման, տեխնիկական սպասարկման և պահպանման հետ։

Հանրապետության Թալինի շրջանում կատարած մեր ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ոչ բոլոր կոլտնտեսություններում է, որ մեքենա-տրակտորային պարկի օգտագործումը դրված է պատշաճ բարձրության վրա։ Կոլտնտեսություններում 1967 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, տրակտորների թիվը (15 ձիաուժանոց) ավելացել է 57 հատով և հասել 311-ի։ Ընդ որում թրթուրավոր տրակտորների աճի տեմպերը ավելին են, քան անիվավորներինը։ Այդպիսի վիճակը մասամբ բացատրվում է շրջանի կոլտնտեսությունների զարգացման ուղղությամբ (ոչխարա-հացահատիկա-տավարաբուծական)։

Եթե ընդհանուր առմամբ թրթուրավոր և անիվավոր տրակտորների քանակի փոխհարաբերությունը շրջանի կոլտնտեսությունում կարելի է ընդունելի համարել (թրթուրավորը 62 տոկոս, անիվավորը 38 տոկոս), ապա որոշ կոլտնտեսություններում (Ակունքի, Ահագչիի, Ոսկեթասի և այլն) այդ հարաբերությունը ոչ միայն ճիշտ չէ, այլև հանգել է ծայրահեղության։ Օրինակ՝ Բառոժի կոլտնտեսությունը ուսումնասիրած տարիներին (1965—1967 թթ.) անիվավոր ոչ մի տրակտոր չի ունեցել։ Դա հանգեցրել է թրթուրավոր տրակտորների ոչ ռացիոնալ օգտագործման, որովհետև գյուղատնտեսական արտադրության մեջ կատարվող շատ աշխատանքներ, այդ թվում, հատկապես, փոխադրական աշխատանքները, նպատակահարմար է կատարել անիվավոր տրակտորներով։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ Թալինի շրջանում անիվավոր տրակտորները բարձր արդյունավետությամբ օգտագործելու լայն հնարավորություններ կան։ Այսպես. եթե 1967 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, թրթուրավոր տրակտորների տված ընդհանուր արտադրանքի մեջ գրեթե փոփոխություն չկա (այն դեպքում, երբ վերջիններիս քանակն աճել է 34 տոկոս) ապա անիվավոր տրակտորների (որոնց քանակն ավելացել է 20



տոկոս) արտադրանքն աճել է 108 տոկոսով։ Փաստորեն 1965—1967 թվականներին թրթուրավոր տրակտորների ծանրաբեռնվածությունը իջել է, իսկ անիվավոր մեկ տրակտորի արտադրանքը 1967 թ. միջին հաշվով հասել է 239 հեկտարի (փափուկ վարի վերածած), կազմելով 1965 թ. տրված արտադրանքի նկատմամբ 175 տոկոս։ Անիվավոր տրակտորները լավագույն ձևով են օգտագործվում Նոր-Արթիկի, Ն. Բազմաբերդի, Զառինջայի, Կարմրաշենի, Ցամաքասարի և մի շարք այլ կոլտնտեսություններում։ Դրա ապացույցներից մեկը անիվավոր տրակտորներով համեմատաբար շատ փոխադրումների կատարումն է։ Այսպես, օրինակ՝ տրակտորային ընդհանուր աշխատանքներում փոխադրումները Նոր-Արթիկի կոլտնտեսությունում 1967 թ. կազմել է 21, Ն. Բազմաբերդի կոլտնտեսությունում՝ 22, Ցամաքասարի կոլտնտեսությունում՝ 35 տոկոս, շրջանի մասշտաբով միջին 9 տոկոսի դիմաց։

Բերված տվյալները հանգեցնում են հետևյալ եզրակացության. անիվավոր տրակտորների օգտագործումը Թալինի շրջանի կոլտնտեսություններում բավարար է, իսկ թրթուրավոր տրակտորներինը՝ հակառակը. սրանց թերբեռնվածությունը անթույլատրելի չափերի է հասել։ Մի՞թե կարելի է հաշտվել այնպիսի վիճակի հետ, երբ թրթուրավոր տրակտորի տարեկան միջին ծանրաբեռնվածությունը կազմել է ընդամենը 297, իսկ անիվավոր տրակտորինը՝ 239 հեկտար։ Թրթուրավոր տրակտորների օգտագործման ասպարեզում առանձնապես ցածր ցուցանիշներ ունեն Աշնակի, Բայսզի, Իրինդի, Ոսկեթասի կոլտնտեսությունները։ Այս տնտեսություններում թրթուրավոր տրակտորների արտադրանքը չի գերազանցում անգամ անիվավոր տրակտորների արտադրանքին։

Վերոհիշյալ վիճակը հիմնականում բացատրվում է նախ թրթուրավոր տրակտորների ոչ նպատակային առաքմամբ և, ապա, դրանց շահագործման և նորոգման ոչ ճիշտ կազմակերպմամբ։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ Թալինի շրջանի կոլտնտեսությունների մեքենա-տրակտորային պարկը տարվա հնարավոր աշխատանքային օրերին լրիվ կարողությամբ չի օգտագործվում և, բացի այդ, մեքենահերթափոխությունների ընթացքում տալիս է քիչ արտադրանք։ Այսպես. եթե հանրապետության կոլտնտեսություններում 1966 թ. տրակտորային պարկը 15 ձիաուժանոց տրակտորի հաշվով մեկ հերթափոխությունում ապահովել է 1,03 հեկտար արտադրանք (փափուկ վարի վերածած), ապա Թալինի շրջանում այն կազմել է ընդամենը 0,76 հեկտար։ Դրությունը հատկապես անբավարար է եղել Ակունքի կոլտնտեսությունում, ուր նույն հզորությամբ տրակտորի արտադրողականությունը մեկ հերթափոխությունում կազմել է 0,53, Դավթաշենի կոլտնտեսությունում՝ 0,5, Կաքավաձորի կոլտնտեսությունում՝ 0,44, Գառնահովտի կոլտնտեսությունում՝ 0,32, Վ. Բազմաբերդի կոլտնտեսությունում՝ 0,26 հեկտար (փափուկ վարի վերածած)։ Կատարված հաշվարկումներից երևում է, որ կոլտնտեսությունների 60 տոկոսը չի ապահովում թրթուրավոր ու անիվավոր տրակտորների՝ շրջանի մասշտաբով տրված միջին արտադրանքի չափը։ Իսկ այդ չափը, ինչպես վերը ցույց տվինք, հանրապետության կոլտնտեսությունների միջին ցուցանիշից 0,37 հեկտարով պակաս է։

Առանձնակի հետաքրքրություն է ներկայացնում շրջանի մասշտաբով կոլտնտեսությունների մեքենա-տրակտորային պարկի աշխատանքի հիմնական ցուցանիշների վերլուծությունը։ Այդ ուղղությամբ կատարված հաշվարկումները ամփոփված են հետևյալ աղյուսակում։

Կոլտնտեսությունների խմբավորումը ըստ մեքենա-տրակտորային պարկի աշխատանքի հիմնական ցուցանիշների *(1965, 1966 և 1967 թթ. միջին տվյալների հիման վրա)*

| Կոլտնտեսություն-ների խմբերը | Խմբի մեջ մտած կոլտնտեսություն-ների թիվը | Մեկ կոլտնտեսու-թյան միջին ցան-քատարածությունը (հեկ.) | 15 ձիաուժանոց մեկ տրակտորի տարեկան միջին արտադրանքը (հ. փ. վ.) | | Հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը (ց/հ) | | Մեկ հեկտարի փափուկ վարի ինքնարժեքը | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | | քանակը | %-ը 1-ին խմբի նկատմամբ | քանակը | %-ը 1-ին խմբի նկատմամբ | քանակը | %-ը 1-ին խմբի նկատմամբ |
| 1 | 9 | 208 | 105 | 100 | 7,28 | 100 | 9,23 | 100 |
| 2 | 10 | 395 | 150 | 143 | 9,24 | 127 | 7,25 | 78 |
| 3 | 5 | 576 | 169 | 161 | 10,38 | 143 | 7,11 | 77 |
| 4 | 2 | 958 | 249 | 237 | 14,94 | 205 | 6,57 | 71 |

*Աղյուսակում բերված տվյալներից դժվար չէ նկատել, որ հացահատիկային կուլտուրաների շատ ցանքատարածություններ ունեցող կոլտնտեսություններում համեմատաբար բարձր է ինչպես մեկ տրակտորի տված արտադրանքը, այնպես էլ մեկ հեկտարի բերքատվությունը: Նույն կոլտնտեսություններում, մյուսների համեմատությամբ, ցածր է մեկ հեկտար փափուկ վարի ինքնարժեքը:*

*Այդ ամենը խոսում է այն մասին, որ խոշոր կոլտնտեսությունները համեմատաբար ծանրաբեռնվածությամբ են օգտագործում մեքենա-տրակտորային պարկը, դաշտային աշխատանքները կատարում են որակով ու առաջավոր ագրոտեխնիկայի համաձայն, պահպանելով ագրոտեխնիկական ժամկետները և կրճատելով պարապուրդները:*

*Հետաքրքրական է նաև տրակտորային աշխատանքների վրա կատարված դրամա-նյութային ծախսումների վերլուծությունը: Դրանից պարզ երևում է, որ մեքենայացված աշխատանքների վրա կատարած ծախսումների կրճատման կարևոր ուղիներից մեկը ամորտիզացիոն հատկացումների փոքրացումն է, որը ինքնարժեքի մեջ զգալի տոկոս է կազմում:*

*Համաձայն գոյություն ունեցող նոր կարգի, մեքենաների ամորտիզացիոն հատկացումները մասնահանվում են յուրաքանչյուր տարի՝ որոշակի չափով, անկախ նրա տված արտադրանքից: Հետևապես, որքան շատ արտադրանք տա մեքենան, այնքան միավոր արտադրանքի ինքնարժեքի մեջ այդ գծով կատարված ծախսումների տեսակարար կշիռը փոքր կլինի: Այդ են ցույց տալիս հաջորդ էջի աղյուսակում բերված թվերը:*

*Բերված տվյալները պարզ ասում են այն մասին, որ տրակտորային աշխատանքների ինքնարժեքը և ամորտիզացիոն հատկացումները ցածր են այն կոլտնտեսություններում, ուր տրակտորները համեմատաբար տալիս են բարձր արտադրանք: Օրինակ, շրջանի 3 կոլտնտեսություններում (III խումբ) 15 ձիաուժանոց մեկ տրակտորով տարեկան 216 հեկտար հերկի (փափուկ վարի վերածած) դեպքում մեկ հեկտար փափուկ վարի ինքնարժեքը և տրակտորների վրա կատարված ամորտիզացիոն ծախսերը 36 տոկոսով պակաս են, քան առաջին խմբի 13 կոլտնտեսություններում, ուր նույն հզորությամբ տրակտորի տարեկան արտադրանքը կազմել է 79 հեկտար (փափուկ վարի վերածած):*



Տրակտորների տարեկան արտադրանքի ազդեցությունը տրակտորային աշխատանքների ինքնարժեքի և ամորտիզացիոն հատկացումների վրա *(1965, 1966 և 1967 թթ. միջին տվյալներով)*

| Ցուցանիշները | Կոլտնտեսությունների խմբավորումը ըստ 15 ձիաուժանոց տրակտորների տարեկան միջին արտադրանքի (փ. փ. վ.) | | |
|---|---|---|---|
| | I մինչև 100 | II 101-ից 200 | III 201-ից բարձր |
| Կոլտնտեսությունների թիվը | 13 | 10 | 3 |
| 15 ձիաուժանոց տրակտորների միջին արտադրանքը խմբում (հ. փ. վ.) | 79 | 140 | 216 |
| Նույնը տոկոսներով 1-ին խմբի նկատմամբ | 100 | 177 | 273 |
| Մեկ հեկտար փափուկ վարի ինքնարժեքը (ռուբ.) | 8,81 | 6,59 | 5,67 |
| Նույնը տոկոսներով 1-ին խմբի նկատմամբ | 100 | 74 | 64 |
| Ամորտիզացիոն հատկացումները (ռուբ.) | 2,19 | 1,41 | 1,12 |
| Նույնը տոկոսներով 1-ին խմբի նկատմամբ | 100 | 64 | 51 |

*Թալինի շրջանի կոլտնտեսությունների մեքենա-տրակտորային պարկի աշխատանքի վերլուծության և առաջավոր տնտեսությունների փորձի ուսումնասիրության հիման վրա կարելի է անել հետևյալ եզրակացությունը:*

*Մեքենա-տրակտորային պարկի արտադրողաբար օգտագործելու վրա ազդում են մի շարք գործոններ, որոնցից հիմնականները հետևյալներն են.*

*մեքենա-տրակտորային պարկի ռացիոնալ կոմպլեկտավորումը, որում պետք է բացակայեն տվյալ տնտեսության պայմանների համար ոչ պիտանի, քիչ արդյունավետ մեքենաները.*

*տարեկան աշխատանքային ժամանակի ֆոնդի արդյունավետ օգտագործումը, ունիվերսալ մեքենաների գործադրումը, տրակտորային աշխատանքի ծավալի ընդլայնումը, նրա օգտագործումը փոխադրական աշխատանքներում.*

*հերթափոխության ժամանակի ռացիոնալ օգտագործումը, զուտ աշխատանքային ժամանակի ավելացումը, պարապուրդների կրճատումը.*

*հերթափոխության գործակցի ավելացումը, հնարավորության դեպքում երկհերթ աշխատանքի ներդրումը.*

*տրակտորների և մյուս գյուղատնտեսական մեքենաների տեխնիկա-տնտեսական հնարավորությունների լիարժեք օգտագործումը, բարձր արագությունների տակ աշխատելը, արագություններով ժամանակին մանրելը, ընդգրկման լայնության ռացիոնալ օգտագործելը.*

*մեքենա-տրակտորային պարկի տեխնիկական սպասարկման ու նորոգման գործի ճիշտ կազմակերպումը և այլն:*

*Դժվար չէ նկատել, որ վերոհիշյալ միջոցառումները կազմակերպչական բնույթի են, հատկապես նրանց իրագործման համար անհրաժեշտ է նախապես ճիշտ պլանավորել մեքենա-տրակտորային պարկի աշխատանքը:*

Վ. Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ
Գ. Վ. ԴԱՎԹՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

# ՄԵՔԵՆԱՇԻՆԱԿԱՆ ՕԲՅԵԿՏՆԵՐԻ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԱՎԱՐՏԵԼ ԺԱՄԱՆԱԿԻՆ

Անցած տարվա հունիսին ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը քննեցին կապիտալ շինարարության պլանավորումը կատարելագործելու և շինարարական արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու հարցը։ Այդ առթիվ ընդունված որոշման մեջ ասված է. հնգամյա պլանը մնում է որպես կապիտալ շինարարության պետական պլանավորման հիմնական ձև, որը մշակվում և հաստատվում է սահմանված կարգով, ըստ ՍՍՀՄ մինիստրությունների, գերատեսչությունների և միութենական հանրապետությունների՝ բաժանելով ըստ տարիների։ 1971—1975 թթ. սկսած հնգամյա պլաններում արտադրական կարողությունների և հիմնական ֆոնդերի գործարկման, ինչպես նաև կապիտալ ներդրումների ու շինմոնտաժային աշխատանքների վերաբերյալ առաջադրանքները սահմանվելու են առանձին կառույցների շինարարության տևողության նորմատիվներին համապատասխան։

Կապիտալ ներդրումներն առավել արդյունավետ օգտագործելու և արտադրական կարողությունների գործարկումն արագացնելու նպատակով ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը անհրաժեշտ գտան ժողովրդա-տնտեսական պլանների նախագծերում նախատեսել անավարտ շինարարության ծավալի ցուցանիշը ըստ ՍՍՀՄ մինիստրությունների ու գերատեսչությունների և միութենական հանրապետությունների մինիստրների սովետների, որպեսզի առաջիկա 3—4 տարում անավարտ շինարարության ծավալը հասցվի նորմաներով սահմանված չափերին։

Կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետության բարձրացումը մեծ չափով պայմանավորված է արդյունաբերական օբյեկտների շինարարության ժամկետներով։ Որքան արագ կառուցվեն նոր և վերակառուցվեն գործող ձեռնարկությունները, այլ հավասար պայմաններում, այնքան ավելի քիչ կապիտալ ներդրումներ կպահանջվեն և կմեծանա ազգային եկամտից սպառման վրա ծախսվող բաժինը։

Կուսակցության և կառավարության նախանշած ուղիներից մեկը շինարարության ժամկետների կրճատումն է՝ կապիտալ ներդրումները ժողովրդական տնտեսության համար առավել կարևոր նշանակություն ունեցող օբյեկտների շինարարության վրա կենտրոնացնելով։ Մեծ է շինարարության ժամկետների կրճատման ժողովրդատնտեսական նշանակությունը։ Նախ՝ դրա շնորհիվ հնարավորություն է ստեղծվում արագացնելու շինարարության մեջ ներգրավված պետական հսկայական միջոցների շրջապտույտը և ավելի կարճ ժամկետներում արտադրելու ժողովրդական տնտեսության պլանով նախատեսված արտադրանքը ոչ միայն կառուցվող, այլև հարակից ձեռնարկություններում։ Բացի այդ, շինարարության տևողության կրճատմամբ կէժանանան օբյեկտները։ Հայտնի է, որ շինմոնտաժային աշխատանքների ինքնարժեքի տարրերից մի քանիսի մեծությունն ուղիղ համեմատական է ժամանակի տևողությանը։ Ուստի, որքան կարճ ժամկետում կատարվեն մեծ ծավալի աշխատանքներ, այնքան փոքր կլինի վերոհիշյալ ծախսերի հարաբերական մակարդակը։



Մեքենաշինությունն այն ճյուղն է, որը տեխնիկապես վերազինում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը։ Այստեղ են ստեղծվում հիմնական արտադրաֆոնդերի ակտիվ տարրերը՝ մեքենաները և սարքավորումները։ Դրանով իսկ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արտադրական հզորություններն ավելացնելու հնարավորությունը պայմանավորված է մեքենաշինությունով, որն ինչպես իր, այնպես էլ մյուս ճյուղերում կառուցվող օբյեկտները կոմպլեկտավորում է սարքավորումներով ու մեքենաներով։ Ահա թե ինչու մեքենաշինության օբյեկտների շինարարության փաստացի տևողությունը կրճատելու հարցը առավել կարևոր նշանակություն է ստանում և մղվում է առաջին պլանի վրա։

Անհրաժեշտ է նշել, որ ՀՍՍՀ մեքենաշինությունը կապիտալ ներդրումների ծավալով հանրապետության արդյունաբերության մեջ չորրորդ տեղն է, իսկ հաստոցաշինությունն իր արտադրած հաստոցների քանակով Միության մեջ գրավում է հինգերորդ տեղը։

Կապիտալ ներդրումների տեխնոլոգիական կառուցվածքի բարելավումը շինարարության ժամկետների կրճատմանը նպաստող գործոններից մեկն է. որը փոփոխվում և կատարելագործվում է տեխնիկական առաջընթացին համապատասխան։

Հանրապետության մեքենաշինության մեջ տարեցտարի փոփոխվում է այդ կառուցվածքը։ Զգալիորեն աճել է սարքավորումների՝ որպես աշխատանքի գործիքների ակտիվ տարրի, տեսակարար կշիռը, իսկ շինմոնտաժային աշխատանքներինը՝ իջել։ Այսպես, եթե 1961 թ. սարքավորումների տեսակարար կշիռը կազմել է 45,5 տոկոս, ապա 1968 թ.՝ 60, իսկ շինմոնտաժային աշխատանքներինը՝ համապատասխանաբար 46,7 և 35,7 տոկոս։

Հանրապետության մեքենաշինության ձեռնարկությունների շինարարության համար բնորոշ է գործող ձեռնարկությունների վերակառուցումն ու ընդլայնումը։ 1967 թ. (1965 թ. համեմատությամբ), վերակառուցվող և ընդլայնվող ձեռնարկությունների տեսակարար կշիռն աճել է ավելի քան 1,2 անգամ (80 տոկոս), այն դեպքում, երբ ամբողջ արդյունաբերության մեջ դրանց տեսակարար կշիռը 1968 թ. 48,2 տոկոսից չի գերազանցել։

Ինչպես հայտնի է, նոր շինարարության համեմատությամբ վերակառուցումն ու ընդլայնումը ունի այն առավելությունը, որ ապահովում է արտադրական կարողությունների գործարկումն ավելի էժան և կարճ ժամկետներում։ Սակայն անհրաժեշտ է նշել, որ վերակառուցվող ձեռնարկությունների զգալի մասի շինարարական պլանային և փաստացի ժամկետները մի քանի անգամ գերազանցում են նորմատիվային ժամկետներին։ Այդ են ապացուցում մեքենաշինության տասնմեկ խոշոր ձեռնարկությունների շինարարության տվյալները, որոնց նախահաշվային արժեքը կազմում է ամբողջ մեքենաշինության նախահաշվային արժեքի 78 տոկոսը։ Այսպես, Երևանի «Ալմաստ», Լենինականի էլեկտրատեխնիկական գործարանների շինարարության պլանային տևողությունը գերազանցում է սահմանված նորմաներին 3, Լենինականի «Ստրոմմաշինի» գործարանինը՝ 3,3 անգամ և այլն։

Մեքենաշինության մեջ շինարարության պլանային ժամկետների գերազանցումը նորմատիվայինից հիմնականում բացատրվում է նրանով, որ շինարարության ընթացքում ավելացվել է կառուցվող ձեռնարկության արտադրական կարողությունները, որի հետևանքով փոփոխվել են սկզբում հաստատված նախագծային առաջադրանքն ու նախահաշվային արժեքը։ Այսպես, օրինակ, Երևանի Լենինի անվան Հայէլեկտրամեքենաշինական գործարանի շինարարության պլանային տևողությունը կազմել է 84 ամիս, նախագծային կարողությունը՝ 34,2 միլիոն ռուբլի, շինարարության ընթացքում փոխվեց նախագծային առաջադրանքը, կարողությունը հասցվեց մոտ 87,9 միլիոն ռուբլու։ Շինարարության նախահաշվային արժեքը, հաստատվածի համեմատությամբ, ավելացավ ավելի քան 88 տոկոսով, իսկ կառուցման պլանային տե-

վողությունը՝ 1,4 անգամ։ Ընդ որում, այդ գործարանում առաջին անգամ կազմակերպվեց կենցաղային սառնարանների արտադրությունը։

Տարեցտարի լրիվ չեն կատարվում կապիտալ ներդրումների և հիմնական արտադրական ֆոնդերի գործարկման առաջադրանքները, որի հետևանքով ավելանում է անավարտ շինարարությունը։ 1968 թ. հանրապետության մեքենաշինության մեջ անավարտ շինարարության և կապիտալ ներդրումների հարաբերությունը կազմել է 121,2, իսկ անավարտ շինարարության և հիմնական արտադրաֆոնդերի գործարկմանը՝ 138,0 տոկոս։

Եթե հաջողվեր անավարտ շինարարությունը կրճատել կիսով չափ և ֆոնդերի արդյունավետության գործակիցը մնար 1965 թ. մակարդակին, ապա հանրապետության մեքենաշինության հիմնական արտադրական ֆոնդերը կավելանային 12,6 միլիոն ռուբլով, որը կտար 23,3 միլիոն ռուբլու լրացուցիչ համախառն արտադրանք։

Անավարտ շինարարության ծավալը, ըստ առանձին տարիների, որպես կանոն, գերազանցում է ինչպես կապիտալ շինարարության, այնպես էլ հիմնական արտադրաֆոնդերի գործարկման առաջադրանքներին։ Դա բացատրվում է նրանով, որ սիստեմատիկաբար չեն կատարվում հիմնական արտադրաֆոնդերի գործարկման պլանները և իրացված կապիտալ ներդրումները մնում են անավարտ շինարարության մեջ։

Կուսակցության և կառավարության վերջին տարիների ձեռնարկած միջոցների շնորհիվ մեծ ուշադրություն է նվիրվում կապիտալ ներդրումները ժողովրդական տնտեսության համար առավել կարևոր նշանակություն ունեցող կամ տվյալ տարում գործարկվող օբյեկտների շինարարության վրա կենտրոնացնելուն։

Հանրապետության մեքենաշինական ձեռնարկությունների անավարտ շինարարության մեջ նվազել է վերջնականապես և ժամանակավոր դադարեցված օբյեկտների տեսակարար կշիռը։ 1969 թ. հունվարի 1-ի դրությամբ, մեքենաշինական ձեռնարկությունների շինարարական օբյեկտներից միայն երկուսի՝ Լենինականի հղկող հաստոցների գործարանի ձուլման և Ստեփանավանի՝ բարձր հաճախականության էլեկտրասարքերի գործարանի արտադրական կորպուսների շինարարությունն է ժամանակավորապես դադարեցված։ Սակայն պետք է նշել, որ 1969 թ. տարվա սկզբներին անավարտ շինարարության մակարդակը կրկնակի գերազանցել է դրա նորմատիվին։ Անավարտ շինարարությունը կրճատելու, հետևաբար օբյեկտների գործարկումն արագացնելու համար նպատակահարմար կլիներ, մեր կարծիքով, որ հանրապետության պետպլանը յուրաքանչյուր տարի կապիտալ շինարարության պլաններում առանձնացներ փոխանցվող շինարարություն ունեցող այն օբյեկտները, որոնց տեխնիկական պատրաստականության աստիճանը 50 տոկոսից բարձր է և ենթակա են գործարկման տվյալ տարում։

Մեքենաշինության մեջ բավական մեծ թիվ են կազմում նոր կառուցվող և վերակառուցվող օբյեկտները։ 1968 թ. արտադրական օբյեկտների հաշվեհամարի տվյալներով, Հայաստանի արդյունաբերության շինարարական օբյեկտների $^1/_5$ մասը բաժին է ընկնում մեքենաշինությանը։ Այդ թվում տեսակարար մեծ կշռով աչքի են ընկնում հաստոցաշինությունը (35,5 տոկոս), էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը (34,3 տոկոս) և ավտոմոբիլայինը (11,3 տոկոս)։ Չնայած շինարարության մեջ գտնվող անավարտ օբյեկտների առկայությանը, 1969 թ. մեքենաշինման կապիտալ շինարարության պլանի մեջ է մտցվել բազմաթիվ նոր օբյեկտ, որոնց հատկացված կապիտալ ներդրումները կազմում էին ամբողջ ճյուղի կապիտալ ներդրումների 13,6 տոկոսը։

Եթե վերոհիշյալ կապիտալ ներդրումները տրամադրվեն այն օբյեկտներին, որոնց շինարարությունը տարեցտարի հետաձգվում է, ապա միայն այդ միջոցով հնարավոր կլիներ 14,4 տոկոսով կրճատել մեքենաշինական օբյեկտների շինարարության ժամկետները։ Կապիտալ շինարարության պլանների ոչ հիմնավորված լինելը մեկն է այն պատճառներից, որ նպաստում է միջոցների փոշիացմանը, հետևաբար կառուցվող օբյեկտների ձգձգմանը։ Երբեմն պլան-



ները կազմում են գոյություն ունեցող նորմատիվներից կամ շինարարական աշխատանքների կազմակերպման նախագծերից անկախ։ Արդյունքը լինում է այն, որ այդ ներդրումները կազմում են ինչպես ճյուղի, այնպես էլ իրենց նախահաշվային արժեքի չնչին մասը։ Օրինակ, Երևանի էլեկտրալամպերի գործարանը 1968 թ. կապիտալ ներդրումները կազմել էին 1,3 տոկոս նախահաշվային արժեքի և 3,3 տոկոս ճյուղի՝ կապիտալ ներդրումներում, այն դեպքում երբ շինարարությունը լրիվ ավարտելու համար մնացել էր իրականացնելու նախահաշվային արժեքի միայն 8,3 տոկոսը։

Վերջին երեք տարվա կապիտալ շինարարության պլանների վերլուծությունը ցույց է տալիս, որ դրանք ժամանակին չեն համաձայնեցվում կապալառուական կազմակերպությունների հետ և տարվա ընթացքում բազմիցս փոփոխվում են, որը բացասաբար է անդրադառնում շինարարության ընթացքի վրա։ Մի շարք մեքենաշինական կառույցներում կապիտալ շինարարության պլանները և ներտիտղոսային ցուցակները յուրաքանչյուր կառույցում փոփոխվել են 7—12 անգամ։

Ձեռնարկությունների արտադրամասերի գործունեությունը սերտորեն կապված է մեկը մյուսի հետ։ Այդ պատճառով, երբ մի տեղամասում ուշանում է արտադրական հզորությունների կամ օբյեկտի շահագործման հանձնումը, դա արգելում է նաև դրա հետ կապված մյուս կարողությունների գործարկումը կամ գործարկված կարողություններն աշխատում են ոչ լրիվ բեռնվածությամբ։ Այսպես՝ 1968 թ. Երևանի Հայէլեկտրագործարանի երկու հիմնական կորպուսներ (փորձարկվող ստենդների, ռադիատորի և թերմոսիֆոնների պատրաստման տեղամասը) ֆինանսական միջոցների սակավության պատճառով շահագործման չհանձնվեցին, որի հետևանքով շարք չմտան 0,125 միլիոն կվտ հզորությամբ ուժային սարքավորումների թողարկող արտադրական կարողությունները։ Եթե միջոցները հատկացվեին ժամանակին, ապա շարք կմտնեին ոչ միայն ուժային սարքավորումները, այլ լրիվ կգործարկվեին կենցաղային սառնարանների տեղամասի արտադրական հզորությունները (47,5 տոկոսի փոխարեն)։ Կամ 1968 թ. Լենինականի էլեկտրատեխնիկական գործարանի գլխավոր կորպուսի նախագծային փաստաթղթերն ուշացնելու հետևանքով կապալային աշխատանքների ծավալն իջավ 200 հազար ռուբլով։ Պլանով նախատեսված 15,5 միլիոն ռուբլու արտադրական կարողությունների փոխարեն, շինարարական վարչությունը շահագործման հանձնեց ընդամենը 2,8 միլիոն ռուբլու արտադրական կարողություն։ Երևանի տեխնիկական սարքավորանքի գործարանում կառուցվող օբյեկտը ժամանակին տեխնոլոգիական սարքավորումով չկոմպլեկտավորելու պատճառով արտադրական կարողությունների գործարկման պլանը կատարվեց 13,1 տոկոսով։

Եթե շինարարության գործում եղած թերությունների մի մասը հետևանք է կառուցող կազմակերպությունների անհոգության, ապա գործնականում քիչ չեն դեպքեր, երբ այդ թերությունները պատվիրատու ձեռնարկության անբավարար աշխատանքի արդյունքն են։ 1967 թ. «Երարդշին» տրեստի № 4 շինվարչությունը պետք է կատարեր Երևանի կոմպրեսորների գործարանի մի շարք կորպուսների շինարարական, այդ թվում №2 կորպուսի վերակառուցման աշխատանքները։ Սակայն ամբողջ տարվա ընթացքում գործարանի ղեկավարությունը չկարողացավ այդ կորպուսը ազատել տեղադրված սարքավորումներից, որի հետևանքով շինվարչությունը չսկսեց շինարարությունը։

Արտադրական կարողությունները ժամանակին շահագործման չհանձնելու պատճառները խմբավորելիս նկատելի է, որ դեռևս անբավարար է կազմակերպված որոշ շինանյութերի մատակարարման գործը։ Կառուցող և մոնտաժող կազմակերպությունները ժամանակին չեն ստանում պատվիրված սարքավորումները և տեխնիկական փաստաթղթերը։ Երբեմն էլ փոփոխվում են նախագծերը։

Շինարարական ժամկետների ձգձգման պատճառներից է նաև կառուցման նախահաշվային արժեքի թանկացումը, որն զգալի չափերի է հասնում։ Այսպես, 1968 թ. հունվարի 1-ի դրությամբ, սկզբնական հաստատված նախահաշվի համեմատությամբ, այդ թանկացումը հանրապետության արդյունա-

*բերության մեջ կազմել է 15,1։ Ընդ որում, այս թանկացումը տեղի է ունեցել վերակառուցվող և ընդլայնվող ձեռնարկությունների գծով։ Վերջինս մասամբ նախագծային կազմակերպությունների թույլ տված սխալների և վրիպումների արդյունք է։ Վերջին երեք տարվա տվյալների վերլուծությունը ցույց է տալիս, որ թանկացումը աճի տենդենց ունի։ Այսպես, 1968 թ. 1967 թ. համեմատությամբ, այն ավելացել է 3 տոկոսով (ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրության տարեկան հաշվետվության տվյալներից)։*

*Եզակի չեն դեպքերը, երբ շինարարությունն ավարտելիս պարզվում է, որ հիմնական արտադրամասերի կանոնավոր աշխատանքն անհնար է առանց օժանդակ օբյեկտների։ Այսպես, Երևանի էլեկտրալամպերի գործարանի նախագծային առաջադրանքը հաստատվել է 1960 թվականին։ 1965 թ., երբ իրացվել էր նախահաշվային արժեքի 70,4 տոկոսը, պարզվեց, որ նախագծային առաջադրանքում բացակայում են օբյեկտներ (ապակու կորպուսը, երկաթուղային հանգույցը, ճաշարանը, հակահրդեհային դեպոն և այլն), առանց որոնց հնարավոր չէ հիմնական արտադրամասերի նորմալ աշխատանքը։*

*Մյուս հանգամանքը, որ նույնպես պակաս դեր չի խաղում շինարարության ժամկետների ձգձգման գործում, դա գործարկվող կոմպլեքսի բացակայությունն է նախագծային առաջադրանքներում։ Ըստ գործող հրահանգի, գործարկվող կոմպլեքսի կազմի մեջ մտնում է հիմնական արտադրական և օժանդակ օբյեկտների ամբողջությունը, որը նպաստում է նախագծային առաջադրանքով նախատեսված արտադրական կարողությունների մի մասի գործարկմանը։ Դա հնարավորություն է տալիս գործարկվող կոմպլեքսի մեջ մտցնել միայն այն օբյեկտների շինարարությունը, առանց որի անհնար է հիմնական արտադրական օբյեկտների անխափան աշխատանքը։ Սակայն պրակտիկայում լինում են դեպքեր, երբ կոմպլեքսի մեջ են մտցվում այնպիսի օբյեկտների շինարարություն կամ աշխատանքներ, որոնք ոչ մի առնչություն չունեն հիմնական օբյեկտների շահագործման հետ և միայն կարող են ձգձգել շինարարությունը։*

*Կամ, ընդհակառակը, պատահում են դեպքեր, երբ չափազանց փոքրացվում է գործարկվող կոմպլեքսի ծավալը։ Հետևանքը լինում է այն, որ օբյեկտները շահագործման են հանձնվում մի շարք անավարտ մասերով, որոնց վերացման համար նույնպես պահանջվում է լրացուցիչ ժամանակ։ Ինչպես տեսնում ենք, գործարկվող կոմպլեքսի կազմի ոչ հիմնավոր ուռճացումը կամ փոքրացումը բացասական ներգործություն է ունենում շինարարության ընթացքի վրա։*

*Նպատակահարմար կլիներ, որ յուրաքանչյուր նախագծային առաջադրանք մշակելիս, նախագծային կազմակերպությունը սահմաներ գործարկվող կոմպլեքսի կազմը՝ ՍՍՀՄ կենտրոնական վիճակագրական վարչության կողմից հաստատված 1968 թ. Հրահանգի համաձայն։ Սա կնպաստեր այն բանին, որ կառուցվող ձեռնարկության ղեկավարները կոմպլեքսի կազմում չեն մտցնի այնպիսի օբյեկտներ կամ աշխատանքներ, որոնց հաշվին հեշտ է կատարել կապիտալ շինարարության պլանները։ Մյուս կողմից՝ հնարավորություն կստեղծվի սահմանափակ միջոցները և ռեսուրսներն իսկապես կենտրոնացնել տնտեսական անհրաժեշտությունից բխող օբյեկտների շինարարության վրա և արագացնի հիմնական արտադրաֆոնդերի գործարկումը։*

ԱԼԻՆԱ ԲԱԲԱՅԱՆ





# ՕԴԸ ՊԵՏՔ Է ՄԱՔՈՒՐ ԼԻՆԻ

Մեզ շրջապատող արտաքին աշխարհում կյանքի համար ամենակարևորը օդն է։ Քսանչորս ժամվա ընթացքում մարդը կլանում է քսան խորանարդ մետր օդ։ Եթե այդպիսի զգալի ծավալի մեջ պարբերաբար հայտնվեն նույնիսկ փոքր քանակությամբ գազեր և փոշի, ապա դրանք կարող են մարդուն հսկայական վնասներ պատճառել։ Ուրեմն, օդային միջավայրի և մարդու առողջության միջև գոյություն ունի փոխադարձ ամուր կապ։ Այս է պատճառը, որ բնության վերափոխման շտապ լուծում պահանջող պրոբլեմների շարքում՝ կարևորագույններից է օդային ավազանն արդյունաբերական գազերից պաշտպանելու հարցը։ Մթնոլորտի արհեստական ապականումը, որը հիմնականում կապված է մարդու արտադրական գործունեության հետ, կարող է հանգեցնել բնափոխման (դենատուրալիզացիայի), այլ կերպ ասած՝ օդային միջավայրի հավասարակշռության խախտման։ Հետևանքը կլինի այն, որ մարդու գոյության համար այնքան անհրաժեշտ օդը բացասաբար կազդի առողջության վրա։

Մարդու արտադրական գործունեության առաջադիմությունը մինչև այսօր էլ դեռ ուղեկցվում է վտանգավոր նյութերի արտամղմամբ։ Քիմիական, մետաղագործական, ցեմենտի, նավթամշակման ձեռնարկություններն ամեն օր օդ են բաց թողնում հսկայական քանակությամբ վտանգավոր, թունավոր նյութեր՝ ծծմբածխածին, ծծմբային անհիդրիդ, փոշի, ֆտորային միացություններ, օրգանական սինթեզի նյութեր։ Իսկ եթե դրանց ավելացնենք ավտոմոբիլային տրանսպորտի արտամղած գազերը, ապա կարող ենք պարզ պատկերացնել, թե ինչ է կատարվում արդյունաբերական խոշոր կենտրոնների մթնոլորտում։

Օդի ապականումը հաճախ առաջացնում է կլիմայական պայմանների փոփոխություններ. տարվա մեջ ավելանում է մառախլապատ օրերի թիվը, երկնքում տարածվում է հսկա, թունավոր մշուշաքող, որը «սմոգ» է կոչվում։ «Սմոգների» ժամանակ բորբոքվում են մարդկանց աչքերը, վերին շնչառական ուղիները, ոչնչանում է բուսականությունը։ Դրանք ամեն տարի ԱՄՆ-ում, Անգլիայում և Ճապոնիայում խլում են հարյուրավոր մարդկանց կյանք։

Մթնոլորտի անմաքրությունը կործանարար է բուսական օրգանիզմների համար։ Այն զգալի նվազեցնում է գյուղատնտեսական շատ կուլտուրաների սննդարարությունը և բերքատվությունը։ Ծառատունկերի ոչնչացումը խիստ թուլացնում է բնական ճանապարհով օդի մաքրման պրոցեսը։ Այս հանգամանքը, իր հերթին, նպաստում է օդում վտանգավոր նյութերի կուտակմանը։

Օդային միջավայրի ապականումը զգալի դժվարություններ է հարուցում արդյունաբերական նոր ճյուղերի (կիսահաղորդչային, ռադիո-էլեկտրոնային, օպտիկական, դեղագործական) զարգացման համար։

Վտանգավոր խառնուրդների ցրումը մթնոլորտում և օդի ներքին՝ կեղտոտված շերտի ու վերին՝ մաքուր շերտի միախառնումը բավականին դանդաղ է կատարվում: Այդ է պատճառը, որ արդյունաբերական շատ կենտրոններ ուղղակի ծածկված են ծխի հսկա կափարիչներով՝ հեղձուցիչ, թունավոր գազերով ու աէրոզոլներով ապականված օդի ամպերով:

Ժամանակակից արդյունաբերական տեխնոլոգիայի ուղղությունն ու զարգացման տեմպերը, տեխնոլոգիական գործողությունների ինտենսիվացման, հզորության մեծացման, շատ ձեռնարկությունների մի շրջանում կենտրոնացնելու ձգտումը հանգեցնում է արտանետվածքների անխուսափելի աճին: Եվ, չնայած գազերի մաքրման կատարելագործման համար ձեռնարկված միջոցառումներին, արտադրանքի աճին համապատասխան արտանետվածքի քանակն ավելանում է: Մթնոլորտի ապականման մասշտաբների մեծացումը հսկայական վնասներ է պատճառում: Ըստ ունեցած տվյալների՝ այժմ, ԱՄՆ-ում ամեն օր մթնոլորտ են նետվում ավելի քան 140 միլիոն տոննա վտանգավոր նյութեր: Անգլիայում միայն կոքսի և ածխի այրումից ամեն տարի օդ է բարձրանում 2,3 միլիոն տոննա ծծումբ: Բերենք տարբեր ժամանակներում հրապարակված տվյալները՝ արդյունաբերական արտանետվածքներով օդի ապականման հասցրած նյութական վնասների մասին: ԱՄՆ-ում, 1964 թվականին այն գնահատվեց 11 միլիարդ դոլար, 1965-ին՝ 12, իսկ 1967 թվականին մի քանի տասնյակ միլիարդ: ԱՄՆ-ում օդի ապականումն արդեն հասել է ծայրահեղ աստիճանի: Այն սպառնում է միլիոնավոր ամերիկացիների կյանքին: Վերջերս ԱՄՆ-ի առողջապահության, լուսավորության ու սոցիալական ապահովության մինիստրը հայտարարեց. եթե ամերիկացիներն ուզում են ապրել, պետք է շտապ միջոցներ ձեռնարկեն օդի ապականման դեմ:

Մեծ են օդում տարածվող քիմիական գազերի պատճառած վնասները: Արևի ճառագայթների ազդեցության տակ քիմիական նյութերն առաջացնում են նոր, գերթունավոր միացություններ, որոնք քայքայում են ամեն ինչ՝ մետաղյին շինվածքները, շենքերի ծածկերը և այլն:

Անհրաժեշտ է անուղղակի վնասների շարքը դասել նաև ժողովրդական տնտեսության արդյունաբերական թափոնների պատճառած նյութական վնասները. շենքերի պահպանման և վերանորոգման ծախսերի մեծացում, տասնյակ տոննաներով հազվագյուտ մետաղների և արժեքավոր նյութերի կորուստը օդում: Այդ վնասները զուգակցվում են տնտեսական մեկ այլ կարևոր խնդրի հետ՝ օգտագործել թափոնները, արտադրություն վերադարձնել կորցրած հումքն ու նյութերը: Օդում եղած արժեքավոր նյութերի որսումը և դրանք արտադրություն վերադարձնելը ոչ միայն առողջապահական, այլև ժողովրդատնտեսական խոշոր նշանակություն ունի: Արդյունաբերական ձեռնարկությունների արտանետվածքից արժեքավոր մետաղափոշիներ ձեռք բերելը և այդ գործի լայն կարգավորումը մթնոլորտի առողջացման հետ զուգընթաց, հնարավորություն կտան ստանալ զգալի քանակությամբ հազվագյուտ և թանկարժեք մետաղներ, որոնք ժողովրդական տնտեսության համար շատ անհրաժեշտ են:

Արդյունաբերական ձեռնարկությունները շահագրգռված են որսալ ու օգտագործել գազը և փոշին, որովհետև կորուստների նվազեցման հաշվին կըստանան ապրանքային արտադրանք:

Օդային ավազանի պահպանումը վտանգավոր նյութերի ապականումից ոչ միայն գիտատեխնիկական, այլև սոցիալական կարևոր խնդիր է: Մաքուր



օդի պրոբլեմի սոցիալական նշանակությունը լրիվ ու պարզ գիտակցվում է հատկապես մեր երկրում, որտեղ հոգատարությունը մարդու նկատմամբ մեր կուսակցության ու պետության հիմնական մտահոգությունն է: Սոցիալիստական պետությունը,— նշված է մեր կուսակցության ծրագրում,— միակ պետությունն է, որն իր վրա է վերցնում ամբողջ բնակչության առողջության պահպանման ու մշտական բարելավման հոգսը:

ՍՍՀՄ-ում մեծ ուշադրություն է հատկացվում մարդաբնակ միջավայրերի մաքրությանը: Բնական պաշարների խնայողաբար օգտագործումը,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— հոգատարությունը հողի, անտառների, գետերի, մաքուր օդի, բուսական ու կենդանական աշխարհի նկատմամբ հարազատ, իսկական կոմունիստական գործ է: Մենք պետք է պահպանենք և գեղեցկացնենք մեր երկիրը սովետական մարդկանց ներկա և գալիք սերունդների համար:

Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ գունավոր մետաղագործությունը և քիմիական արդյունաբերությունը հանդիսանում են առաջատար ճյուղեր: Գործող ձեռնարկությունների վերակառուցման և ընդլայնման, նոր գործարանների կառուցման, նորագույն ավելի կատարյալ և բարձր արտադրողականություն ունեցող սարքերի և մեխանիզմների տեղակայման շնորհիվ վերջին 10 տարում հանրապետությունում քիմիական արդյունաբերության արտադրանքն ավելացել է 4 անգամ, իսկ գունավոր մետաղինը՝ 3 անգամ: Միայն Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի առաջին հերթի գործարկումը հնարավորություն կտա արդեն այս տարի երկրին տալու 600 հազար տոննա ցեմենտ: Բնական է, որ գունավոր մետաղագործության և քիմիական արդյունաբերության այսպիսի աճի հետևանքով անխուսափելիորեն կավելանա օդում տարածվող վտանգավոր նյութերի քանակը: Չնայած նրան, որ սովետական պետությունը մեծ միջոցներ է հատկացնում օդային ավազանի մաքրման նպատակին, մեր հանրապետության արդյունաբերական առանձին կենտրոնների օդային ավազանները մաքուր պահպանելու հարցը դեռևս լիովին չի լուծված:

Արդյունաբերական մի շարք արտադրությունների հնացած տեխնոլոգիայի պատճառով ապականված օդը հսկայական տնտեսական վնասներ է հասցնում. օդում ցնդելով՝ անհետ կորչում է մեծ դժվարությամբ ձեռք բերված հումքը: Օրինակ, Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատը ամեն օր գազաթափոնների հետ դուրս է նետում հսկայական քանակությամբ ծծմբային անհիդրիդ: Միայն Արարատի ցեմենտի կոմբինատի ծխնելույզից դուրս թափված ցեմենտով կկառուցվեին մի շարք բնակավայրեր: Օդում տարածվում ու քամուն բաժին են դառնում այնպիսի հազվագյուտ, թանկարժեք մետաղներ, ինչպիսիք են մոլիբդենը, պղինձը, ցինկը և այլն:

Աննախանձելի վիճակում են գտնվում Երևանի, Կիրովականի, Ալավերդու, Արարատի օդային ավազանները: Դեռևս անբավարար աշխատանք է տարվում Երևանի քիմիական կոմբինատի և ալյումինի գործարանի առանձին արտադրամասերի արտանետվածքներն անվնաս դարձնելու, դրանց շրջակայքում վնասատու նյութերը սանիտարական նորմաներով նախատեսվածին հասցնելու համար:

Կիրովականի քիմիական, Ալավերդու պղնձաքիմիական և Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատներում, ինչպես և մի շարք այլ ձեռնարկություննե-

րում մինչև օրս լիովին չեն լուծված վտանգավոր արտանետվածքների մաքրման և օգտագործման հարցերը:

Գազամաքրման և փոշեմաքրման կառուցվածքների անբավարար շահագործման և արտադրության թերի, չկատարելագործված տեխնոլոգիայի հետևանքով մեր քաղաքների մթնոլորտային օդը, չնայած ձեռք առնված միջոցներին, շարունակում է ապականվել կարբիտի և ցեմենտի փոշով, ֆլորոպրենով, ֆտորաշրածնով, ծծմբային անհիդրիդով և այլ թունավոր նյութերով:

Իսկ եթե այս գործող ձեռնարկություններին ավելացնենք նաև Հրազդանում կառուցվող լեռնաքիմիական կոմբինատը՝ իր զգալի արտանետվածքներով, ապա բնականաբար պարզ կդառնա, որ օդային ավազանի ապականման հարցերի վրա անհրաժեշտ է շատ լուրջ ուշադրություն դարձնել:

Հանրապետության գրեթե բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները զինված են հատուկ փոշեգազամաքրման սարքերով (մրրիկային փոշեմաքրիչներ, վերազտիչներ և այլն): Սակայն այս սարքերի անհաջող տեղադրման, անփույթ շահագործման, դրանց գործողությունն անբավարար հսկելու հետևանքով արտանետվածքների որսը այնքան էլ լավ չի կատարվում: Թափոնների մեծ մասը օդն է դուրս գալիս:

Արտամղված գազերում վտանգավոր նյութերի քանակը նվազեցնելու էական միջոցառումներից են սարքավորումների հերմետիկացումը, դրանց ճիշտ շահագործումը, տեխնոլոգիական ռեժիմի պահպանումը, գազերի վերաշրջանառությունը, օդամաքրիչ սիստեմի ճիշտ նախագծումը:

Անհրաժեշտ է նշել, որ մեր քաղաքների սանիտարահիգիենիկ պայմանները վատանում են նաև այն վտանգավոր նյութերի պատճառով, որոնք օդ են բարձրանում ավտոմեքենաների արտամղած գազերից: Պետական ավտոտեսչությունը անբավարար է իրագործում երթուղի դուրս եկած ավտոմեքենաների շարժիչների աշխատանքը հսկելու գործը: Պլանավորման համաձայն, 1980 թվականին երկրի արդյունաբերական արտադրանքի աճը (2—3 անգամ) և ավտոմեքենաների թողարկման խիստ ավելացումը, արտամղված գազերով մթնոլորտի ապականման հետ կապված հարցերը դարձնում են առաջնահերթ: Այս պրոբլեմը հատկապես կարևոր է Երևանի համար, որի ռելյեֆը աչքի է ընկնում բարձունքների խիստ անկումներով: Այս հանգամանքը իր հերթին ստեղծում է անբարենպաստ պայմաններ շարժիչների նորմալ աշխատանքի և գազերի արտանետման համար:

Արդյունաբերական գազերից օդի մաքրումը տեխնիկայի յուրահատուկ, ինքնուրույն և շատ անհրաժեշտ ճյուղն է: Միաժամանակ, ինչքան էլ դա տարօրինակ թվա, մեզ մոտ՝ հանրապետությունում երբեք չի եղել (և այսօր էլ չկա) նրա զարգացման և տեխնիկական առաջընթացի համար հոգացող որևէ հաստատություն կամ կազմակերպություն:

Մթնոլորտը փոշու և գազերի հավաքման այժմ գործող մեթոդների կատարելագործման և նոր մեթոդների ստեղծման հետազոտական աշխատանքների ծավալն ու մասշտաբները անբավարար են և չեն համապատասխանում արդյունաբերական պահանջներին: Այս հարցով որոշ չափով զբաղվում է ՍՍՀՄ գունավոր մետաղագործության մինիստրության լեռնամետաղագործության գիտահետազոտական ինստիտուտի փոշեմաքրման լաբորատորիան: Չնայած նրա մշակած մի քանի մեթոդներին (փրփրային փոշեորսիչ՝ գազերից ռենիումը որսալու միջոց և այլն), այս լաբորատորիան ներկայումս իր կարողությամբ ի վիճակի չէ ընդգրկել և լուծել նույնիսկ մեր հանրապետության գու-



նավոր մետաղագործության հիմնական ձեռնարկությունների փոշեորսման հարցերը: Իսկ արդյունաբերության մյուս ճյուղերի մասին՝ ինչպես օրինակ քիմիական և այլն, արդեն խոսելու հարկ չկա:

Անհրաժեշտ է հանրապետությունում զգալիորեն ընդարձակել այս բնագավառի գիտահետազոտական և նախագծային աշխատանքները, մշակել տեխնոլոգիական անվտանգ պրոցեսներ և արդյունաբերական արտամղվածքները վնասազերծելու նպատակահարմար մեթոդներ:

Արդյունաբերության բուռն զարգացումը և դրանից բխող օդային ավազանն արդյունաբերական արտամղվածքների ու թափոնների ապականումից պաշտպանելու հարցն այժմ դարձել է պետական պրոբլեմ: Այժմ ակներև է, որ փոշեգազաորսման ասպարեզում պահանջվում է կազմակերպչական-տեխնիկական մի շարք խնդիրների անհետաձգելի լուծում: Մեր կարծիքով, անհրաժեշտ է Հայաստանում փոշեգազամաքրման մասնագիտացված տրեստ ստեղծել, որը պետք է կատարի օդն ապականումից զերծ պահելու նպատակով տարվող գիտահետազոտական, տեխնոլոգիական, նախագծային և մնացած բոլոր աշխատանքները:

Գազամաքրման միջոցների խելացի օգտագործումը օգտակար կլինի ոչ միայն սանիտարական տեսակետից, այլև հսկայական շահույթ կբերի՝ նախապես արտամղված թանկարժեք նյութերը նորից արտադրություն վերադարձնելով:

Օդային ավազանի մաքրության համար մղվող պայքարի անհետաձգելիության մասին բազմիցս նշվել է մեր կուսակցության ու կառավարության որոշումներում: Այդ խնդրի հաջող լուծումից է կախված օդի մաքրության պահպանության հարցը:

Մաքուր օդը մարդու ամենաթանկ սնունդն է:

Հ. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

*ՀԿԿ Կենտկոմի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի հրահանգիչ*



## ԲԱՐԵԿԵՑԻԿ ԿՅԱՆՔ

Հոկտեմբերյանի շրջանի աշխատավորները պատրաստվում են արժանավայել դիմավորելու մեծ Լենինի ծննդյան 100-ամյակը։ Հոկտեմբերյանցիները լավ են գիտակցում, որ նոր, երջանիկ կյանքի կառուցման իրենց հաջողությունները պարտական են մեծ Լենինին ու նրա ստեղծած կոմունիստական կուսակցությանը։

Սովետական իշխանության տարիներին գյուղատնտեսության, արդյունաբերության, շինարարության և աշխատավորության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման բնագավառում մեր շրջանը ձեռք է բերել ակնառու հաջողություններ։ Իսկ թե իրենից ինչ էր ներկայացնում նախասովետական շրջանի Ղուրդուղուլին (ներկայիս Հոկտեմբերյանը) և ինչ ժառանգեցինք մենք ու կարճ ժամանակամիջոցում ինչպիսի վիթխարի հաջողությունների հասանք, ցույց տանք կոնկրետ փաստերով։

Ավելի քան 49 տարի առաջ, Ղուրդուղուլին, իր մի քանի խղճուկ գյուղերով հանդերձ, թալանված, անդունդի եզրին կանգնած նահապետական մի շրջան էր։ 1920 թվականին այստեղ գործում էր ընդամենը տարրական 6 դպրոց՝ 380 աշակերտով և 20 ուսուցչով, որոնցից միայն երեքն ունեին միջնակարգ կրթություն։ Շրջանում կար 5 մահճակալանոց մեկ հիվանդանոց, մեկ բժիշկ և մի քանի բուժքույր։ Գյուղացու համար չարիք հանդիսացող տրախոմայի, մալարիայի և վարակիչ մյուս հիվանդությունների դեմ արդյունավետ պայքար չէր կազմակերպվում։ Շրջանը չուներ կուլտուր-լուսավորական ոչ մի օբյեկտ։ Գյուղերն անբարեկարգ էին, ծուռ ու մութ փոշոտ փողոցներով, կավաշեն, խղճուկ խրճիթներով. գյուղացիներն ապրում էին թոնրատներում, ծխի ու մրի մեջ։

Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո, երբ ազատության լույս ճառագեց նաև բազմաչարչար Հայաստանի վրա, վերջ տրվեց այդ բոլորին։ Սովետական իշխանության տարիներին ստեղծվեց նոր կյանք, նոր կենցաղ։ Այսօր ոչ միայն շրջանի և գյուղերի անուններն են փոխվել, այլև հնից ոչինչ չի մնացել։ Նախկին հողաշեն ու հողածածկ, մութ ու անհրապույր խրճիթներն իրենց տեղը զիջել են ունևոր կոլտնտեսականների տուֆակերտ, երկհարկանի շենքերին, գյուղերում վեր են խոյացել դպրոցական շենքեր, հիվանդանոցներ, կուլտուրայի հոյակապ պալատներ, հասարակական ու արտադրական բազ-



մաթիվ օբյեկտներ։ Արմատական փոփոխություններ են տեղի ունեցել շրջանի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման, գյուղական բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման բնագավառներում։

Սովետական իշխանության տարիներին անցյալում բոլորովին ամայի տեղում ստեղծվեց, հասակ առավ Հոկտեմբերյան քաղաքը, որն ունի շուրջ 25 հազար բնակիչ, քաղաքում գործող 14 արդյունաբերական ձեռնարկություններում աշխատում են մոտ 6000 բանվոր-ծառայող։ Միայն անցյալ տարի Հոկտեմբեր քաղաքի գործարաններն ու ֆաբրիկաները թողարկեցին 43 միլիոն ռուբլու համախառն արտադրանք։

Արդյունաբերության առաջընթացի հետ մեծ գործ է կատարված բնակչության կուլտուրական կենցաղային պահանջմունքները բավարարելու ուղղությամբ։ Քաղաքն ունի 6 միջնակարգ դպրոց (ուր սովորում են 6994 աշակերտ), գյուղատնտեսական տեխնիկում, տեխնոլոգիական, պրոֆտեխնիկական ուսումնարան, երեկոյան հերթափոխային ու հեռակա դպրոցներ։ Նախադպրոցական ցանցում ընդգրկված են 1300 երեխա, որը հնարավորություն է տալիս կանանց ընդգրկելու արտադրության և սպասարկման ոլորտը։

Այժմ քաղաքում գործում են բնակչության կենցաղային սպասարկման 5 տաղավար և 45 կետեր։ Միայն վերջին մի քանի տարում կառուցվեցին քաղաքային բաղնիքի, լվացքատան շենքերը, մոտ ժամանակում շահագործման կհանձնվի քիմիական մաքրման ֆաբրիկան, իր բոլոր հարմարություններով։

Ընդլայնվեց նաև կուլտուր-լուսավորական օբյեկտների ցանցը։ Քաղաքն ունի իր կուլտուրայի տունը՝ մի շարք ինքնագործ խմբերով։ Գործում են շրջանային, քաղաքային ու մանկական գրադարանները։ Երիտասարդության ֆիզիկական դաստիարակության գործին է ծառայում քաղաքային 5 հազար տեղանոց ստադիոնը, որի կառուցման աշխատանքները առաջիկայում լրիվին կավարտվեն։ Անցյալ տարի շահագործման հանձնվեց քաղաքի երկրորդ դպրոցի սպորտ դահլիճը, ընթացքի մեջ է պիոներ պալատի շինարարությունը։

Մեծ ուշադրություն է դարձվում քաղաքի բնակչության առողջապահության գործի կազմակերպման վրա։ Գործում են 250 և 30 մահճակալանոց հիվանդանոցներ, որտեղ աշխատում են 71 բժիշկ և 250 միջին բուժանձնակազմ։

Ընդլայնվել է նաև առևտրի և հասարակական սննդի ցանցը, գործում են ավելի քան 160 օբյեկտներ։

Արագ թափով առաջ է ընթանում բնակարանային շինարարությունը։ Պետության միջոցներով կառուցվել են ավելի քան 127 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Գյուղական բնակչության կուլտուրայի ու կենցաղի բարելավման համար, ամենից առաջ, անհրաժեշտ էր ստեղծել նյութական ամուր բազա, իսկ այդ աներևակայելի էր առանց կոլտնտեսային կարգերի։

Կոլտնտեսային կարգերի հաղթանակի շնորհիվ Սարդարապատի նախկին անապատում այժմ գոյություն ունեն 28 կոլտնտեսություն. կան նաև 10 սովխոզ։ Կոլտնտեսային գյուղի և սովետական տնտեսությունների աշխատավորներն իրենց ջանքերով տափաստանները վերածեցին ծաղկող այգեստանների։ Կազմակերպվեցին երեք մեքենատրակտորային կայաններ։ 1933 թվականին շահագործման հանձնվեց Սարդարապատի (Հոկտեմբերյանի) ջրանցքը, իսկ հետագա տարիներին՝ Սովետականի, Շախվառուտի, Սև ջրի, Կարակլայի ջրհան կայանները։ Գյուղում մուտք գործեցին մեքենաները։ Հողի

մշակության նահապետական ձևերին փոխարինեցին նոր, առաջավոր ձևերն ու մեթոդները։ Լայն հնարավորություններ ստեղծվեցին բոստան-բանջարանոցային կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակման, այգեգործության զարգացման, գյուղատնտեսության ինտենսիվացման համար։

Եթե 40 տարի առաջ շրջանում չկար ոչ մի տրակտոր, բեռնատար ավտոմեքենա, կոմբայն ու կալսիչ, ապա այժմ ունենք՝ 647 տրակտոր, 85 կոմբայն, 144 տրակտորային կալսիչ, 445 բեռնատար ավտոմեքենա և բազմաթիվ այլ գործիքներ ու սարքավորումներ։

Կոլտնտեսություններն ու սովխոզները տնտեսապես և կազմակերպչորեն ավելի ամրապնդվեցին։ Հզորացավ կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկան։ Միայն կոլտնտեսությունների եկամուտները Հայրենական պատերազմի նախօրյակին 1.922.500 ռուբլուց 1969-ին հասավ մոտ 21 միլիոն ռուբլու։ Նույն ժամանակամիջոցում, համապատասխանաբար, ավելացավ կոլտնտեսականների աշխօրի հասանելիքը։

Կոլտնտեսությունների և սովխոզների արտադրության վերելքը, կոլտնտեսականների ու բանվոր-ծառայողների եկամուտների անընդհատ աճը հնարավորություն տվին աշխատավորության նյութական, կուլտուր-կենցաղային պայմաններն արմատապես բարելավելու և բարեկեցիկ կյանք վարելու համար։

Կոլտնտեսականների համամիութենական երկրորդ համագումարում արտասանած ճառում ընկ. Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Գյուղատնտեսության զարգացման մեր նախատեսած ծրագրի կատարման հետ անմիջական առնչություն ունեն գյուղի սոցիալ-կենցաղային և կուլտուրական շինարարության հարցերը։ Այդ մասին մենք խոսել ենք XXIII համագումարում և կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումներում և վերջին տարիներս այդ ուղղությամբ քիչ բան չի արված։ Գյուղերում կառուցվել են շատ բնակելի տներ, դպրոցներ, ակումբներ, հիվանդանոցներ, առևտրական, կենցաղային ձեռնարկություններ»։

Այս տեսակետից, հատկապես վերջին տասնամյակում մեծ գործ է կատարված Հոկտեմբերյանի շրջանում։ Գյուղերում ու ավաններում ծավալվեց բնակելի տների, դպրոցների, ակումբների, կենցաղսպասարկման օբյեկտների շինարարությունը, փոխվեց գյուղերի ու ավանների տեսքը։ Այսօր մեր գյուղերն ու ավանները այցելուների վրա քաղաքի տպավորություն են թողնում։ Իրոք, դժվար է տարբերել մեր շրջանի շատ գյուղերի բնակիչների և մոտակա քաղաքների բնակիչների կուլտուր-կենցաղային պայմաններն ու ապրելակերպը։ Ինչպես քաղաքներում, այնպես էլ մեր շրջանի գյուղերում ու ավաններում վաղուց բնակչության կենցաղի մեջ է մտել ջրմուղը, ռադիոն ու հեռուստացույցը, հեռախոսն ու լվացքի, կարի մեքենան, շքեղ կահույքը, գազն ու էլեկտրականությունը, թերթն ու գրականությունը։ Այսպիսով, իրագործվում է Վ. Ի. Լենինի պատգամը՝ գյուղի և քաղաքի միջև եղած էական տարբերության վերացման մասին։

Անհամեմատ հաջողություններ են ձեռք բերվել ժողովրդական կրթության, առողջապահության, կուլտուրայի բնագավառներում։ Այսօր շրջանի 39 մասսայական, 4 երեկոյան ու հեռակա դպրոցներում և ուսումնական մյուս հաստատություններում սովորում են 18918 պատանիներ ու աղջիկներ։ Դպրոցներում աշխատող ավելի քան 900 ուսուցիչներից 640-ն ունեն բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն։ Ուրախալին այն է, որ ամեն տարի մոտ 850—900 պատանիներ ու աղջիկներ ավարտում են միջնակարգ դպրոցները և նրանց



մի մասն ընդունվում է հանրապետության և Սովետական Միության մյուս քաղաքների բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները։

Տարեցտարի զգալի գումարներ են հատկացվում դպրոցների ուսումնանյութական բազան ամրապնդելու, դպրոցական նոր շենքեր, լրացուցիչ կորպուսներ կառուցելու, լաբորատոր սարքավորումներ ձեռք բերելու համար։ Ընդլայնվում է նաև նախադպրոցական հիմնարկությունների ցանցը։ Շրջանում գործում են 82 ակումբ-գրադարաններ, կուլտուրայի տներ, բազմաթիվ ստացիոնար և շրջիկ կինոներ։

Ընդարձակվել է նաև բուժհիմնարկությունների ցանցը։ Շրջանային հիվանդանոցից բացի գյուղերում ու ավաններում գործում են 19 հիվանդանոց ու բաժանմունք, 18 ֆելդշերա-մանկաբարձական կետ, 17 ծննդատուն, 9 ամբուլատորիա, որտեղ աշխատում են 91 բժիշկ, 402 միջին բուժանձնակազմ։ Հիվանդանոցներն ու բժշկական տեղամասերն ապահովված են անհրաժեշտ հարմարություններով։ Իսպառ վերացվել են մալարիան, սուր վարակիչ հիվանդությունները։

Շրջանի գյուղերն ու ավանները ունեն իրենց դպրոցն ու մանկապարտեզը, կուլտուրայի տունն ու գրադարանը, բուժտեղամասը։ Գյուղերում ու ավաններում, կոլտնտեսականների ու բանվորների հետ միասին, ինտելիգենցիայի համար ստեղծվել են լավ ապրելու բոլոր պայմանները։ Մասնագետների 80—90 տոկոսից ավելին նույն գյուղում, ավանում ծնված, դաստիարակված, կրթություն ստացած մարդիկ են, որոնք ոչ մի ջանք չեն խնայում իրենց առջև դրված խնդիրների կատարման գործում։

ՍՄԿԿ ծրագրում նշված է. «Ֆիզիկական և էսթետիկական դաստիարակության նպատակով բոլոր դպրոցներում և արտադրական հիմնարկություններում կկազմակերպվեն մարմնամարզական դահլիճներ, սպորտային ավաններ... կընդլայնվի քաղաքային և գյուղական մանկական ստադիոնների, սպորտային դպրոցների, տուրիստական ճամբարների, դահուկային բազաների, ջրակայանների, լողավազանների և սպորտային այլ կառուցումների ցանցը»։

Ուղեցույց ունենալով կուսակցության ծրագրային այս դրույթը, շրջանային սովետի գործադիր կոմիտեն, գյուղական սովետները, կոլտնտեսությունների վարչություններն ու սովխոզների դիրեկտորները, բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման հետ կապված հարցերի լուծմանը զուգընթաց, ձգտում են ֆիզկուլտուրան և սպորտը աշխատավորական լայն զանգվածների սեփականությունը դարձնել։

Ներկայումս գյուղերում և ավաններում կան 103 ֆիզկուլտ կոլեկտիվներ, որտեղ ընդգրկված է 14180 մարդ։ Գործում են ֆուտբոլի 36, բասկետբոլի 74, վոլեյբոլի 83 և ուրիշ 20 հրապարակներ։ Շուտով շահագործման կհանձնվի շրջանային ստադիոնը։ Միայն վերջին երեք տարում շրջանում պատրաստվել են ՍՍՀՄ սպորտի 6 վարպետ, 110 I և 2500-ից ավելի II և III ու պատանեկան կարգային սպորտսմեններ։ Նշված ժամանակամիջոցում կազմակերպված սպորտային բոլոր միջոցառումներին մասնակցել են 53000 հոգի։ Աչքի են ընկել Մրգաշատ, Հոկտեմբեր, Սովետական, Բամբակաշատ, Արմավիր, գյուղերի, Լուկաշինի, Մյասնիկյանի անվան, Լենուղի սովխոզների և այլ սպորտային կոլեկտիվները։

Շրջսովետի գործադիր կոմիտեի ու տեղական մյուս կազմակերպությունների ամենօրյա ուշադրության կենտրոնում է շրջանի բնակչության անհրա-

ժեշտ ապրանքներով ապահովելու հարցը։ Այժմ շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում գործում են 190 առևտրական օբյեկտներ, մթերային և արդյունաբերական մասնագիտացված խանութներ, ունիվերմագներ, գաստրոնոմներ՝ նոր հարմարավետ շենքերով։ Ամեն տարի ավելանում է ապրանքաշրջանառության ծավալը։ Այն, միայն շրջանային սպառողական կոոպերացիայի գծով, 1969 թ. հասավ 13.300.000 ռուբլու։

Վերջին տարիներին ընդլայնվել է հասարակական սննդի ցանցը։ 10 սովխոզներում, 5 կոլտնտեսություններում, շրջանային սովետի ենթակայության 9 արդյունաբերական ձեռնարկություններում ու հիմնարկություններում և ուսումնական հաստատություններում գործում են 59 ճաշարան-բուֆետ։

Վերջին երկու-երեք տասնամյակներում բարեկարգվել, ասֆալտապատվել են շրջանի՝ տեղական նշանակություն ունեցող բոլոր ճանապարհները. կանաչապատվել ու ծառապատվել են ճանապարհների եզրերը։ Եզների ու ավանակների սայլակներին վաղուց փոխարինել են գեղեցիկ ու հարմարավետ ավտոբուսները, մարդատար ու բեռնատար տաքսի ավտոմեքենաները։

Շրջանային ավտոգրասենյակը այժմ սպասարկում է բոլոր գյուղերի ու ավանների բնակչությանը, ժամանակին փոխադրում ուղևորներին ու բեռները։ Ի դեպ, պետք է նշել, որ բացի կոլտնտեսությունների ու սովխոզների սեփական ավտոտնտեսություններից, շրջանում (չհաշված Հոկտեմբերյան քաղաքը) մոտ 800 քաղաքացիներ իրենց խնայված միջոցներով ձեռք են բերել սեփական մարդատար ավտոմեքենաներ։

Որոշակի հաջողություններ ունենք բնակչության կենցաղային սպասարկման ասպարեզում։ Միայն վերջին երեք տարում շրջանում կառուցվել են 3 տաղավար, 10 բաղնիք, բացվել կենցաղսպասարկման 48 կետ։ Գյուղերում ու ավաններում զգալիորեն ավելացել են կենցաղսպասարկման ծավալն ու տեսակները։ Շրջանի գրեթե բոլոր գյուղերում ու ավաններում գործում են հարմարավետ բաղնիքներ, շատ կոլտնտեսականներ ու բանվոր-ծառայողներ ունեն նաև իրենց սեփական բաղնիքները։ Շուրջ տասը տարի է, որ շրջանի գյուղական բնակչությունը օգտվում է հեղուկ գազից, որը գյուղի աշխատավորության վերջին տարիների ամենամեծ նվաճումներից մեկն է։

Այժմ գյուղերում, սովխոզներում և շրջկենտրոնում գործում են բնակչության կենցաղային սպասարկման 105 տարբեր կետեր։ Այդ աշխատանքները համեմատաբար լավ են կազմակերպված Արմավիրի, Նալբանդյանի, Հոկտեմբերի, Մրգաշատի գյուղական և Մայիսյան ու Լուկաշինի անվան սովխոզների ավանային սովետների գործկոմներին ենթակա գյուղերում ու ավաններում։

Ուշադրության արժանի են Արմավիր (նախկին Ղուրդուղուլի) գյուղում կատարված գործերը։ Կոլտնտեսականների անհատական բնակարանային շինարարության լայն թափի, դպրոցական, ակումբի, հիվանդանոցի, դեղատան, բաղնիքի, կապի հանգույցի և արտադրական բազմաթիվ շենքերի ու գյուղի փողոցների բարեկարգման, ծառատնկման ու կանաչապատման հետ միասին, այստեղ մի քանի տարի առաջ կառուցված տաղավարի հարմարավետ շենքում այսօր գործում են կենցաղ սպասարկման 11 կետեր՝ կարի արհեստանոց, կոշիկի անհատական պատվերների, փայտամշակման, լուսանկարչական, կոշիկի, ժամացույցների նորոգման, վարսավիրանոց և այլ արտադրամասեր։

Արմավիր գյուղը եզակի չէ։ Կենցաղ սպասարկման աշխատանքների կազմակերպման նույնանման օրինակներ կարելի է բերել շրջանի Հոկտեմբեր, Նալբանդյան, Մրգաշատ և այլ գյուղերից ու ավաններից։

Իրոք, մեծ են բարեկեցիկ կյանքի ստեղծման, բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման բնագավառում սովետական իշխանության տարիներին ձեռք բերած մեր հաջողությունները։ Սակայն սխալ կլիներ կարծել, թե մեզ մոտ բոլոր խնդիրները լուծված են ու այլևս անելիք չունենք։ Ոչ։ Շրջսովետի գործադիր կոմիտեն, գյուղական ու ավանային սովետների գործկոմները միշտ էլ իրենց ուշադրության կենտրոնում են պահում այդ հարցերը։ Տեղական սովետների սեսիաներում, գործկոմների նիստերում հաճախ քննարկվում են բնակչության կենցաղային սպասարկմանը, նրա կյանքի պայմանների առավել բարելավմանը վերաբերող բազմաթիվ հարցեր, որոնց լուծման համար հանրապետական գերատեսչական կազմակերպությունների օգնությամբ ձեռնարկվում են գործնական միջոցներ։

Մենք գիտենք, որ որոշ գյուղերում ու ավաններում կենցաղային սպասարկումը դեռևս չի բավարարում բնակչության ներկայիս պահանջը։ Որոշ գյուղերում բնակչության կենցաղսպասարկումը սահմանափակվում է հիմնականում մեկ-երկու ծառայություններով, ցածր է սպասարկման կուլտուրան և կատարվող աշխատանքների որակը։ Մարգարա, Արգավանդ, Սովետական գյուղերի ղեկավարները, չնայած եղած հնարավորություններին, լրջորեն չեն զբաղվում բնակչության կենցաղսպասարկման հարցերով։ Շրջանի գյուղերում ու ավաններում չկան ռադիո-հեռուստացույցների վերանորոգման ոչ մի կետ։ Այդ աշխատանքները կատարվում են շրջկենտրոնում կազմակերպված ռադիո-հեռուստացուցային տեխնիկական սպասարկման վարչության բաժանմունքի ու շրջիկ արհեստանոցների միջոցով։ Շրջանային կենցաղսպասարկման կոմբինատի տեխնիկական զինվածության աստիճանը չի համապատասխանում ներկայիս աճող պահանջներին։ Հաստոցներն ու սարքավորումները հին են։ Չնայած ամեն տարի ավելանում է արտադրության ծավալը, սակայն տեխնիկական սարքավորումների վիճակը գրեթե նույնն է։ Կոմբինատը չի ապահոված նաև որակյալ մասնագիտական կադրերով։

Գյուղերի ու ավանների բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկմանը հաճախ խանգարում է հարմարավետ շենքերի բացակայությունը։ Ձգձգվում է ստադիոնի, պիոներ պալատի և մի շարք գյուղերում ու ավաններում՝ Հայկական ՍՍՀ լուսավորության, գյուղատնտեսության, բնակչության կենցաղային սպասարկման մինիստրությունների ու այլ գերատեսչությունների գծով կառուցվող դպրոցական, կուլտուր-լուսավորական, կոմունալ-կենցաղային օբյեկտների շինարարությունը։

Հոկտեմբերյանի շրջանի բնակչության նյութական-կուլտուրական պայմանների բարելավման, գյուղերի ու ավանների բարեկարգման, ժամանակակից կենցաղի արմատավորման ուղղությամբ ձեռք բերած հաջողություններն ակնհայտ են։ Սակայն ավելի մեծ են նրանց վաղվա հեռանկարները։ Շրջանի կուսակցական կազմակերպություններն ու սովետական օրգանները ջանք չեն խնայի իրագործելու ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները և ավելի բարեկեցիկ դարձնելու գյուղի աշխատավորության կյանքը։

Գ. Պ. ԱԹՈՅԱՆ
Աշխատավորների դեպուտատների Հոկտեմբերյանի
շրջանային սովետի գործադիր կոմիտեի նախագահ

ընդլայնմանը զուգընթաց մեծանում են և ընթերցող լայն մասսաների պահանջները: Բացահայտելով գրադարանային գործի վիճակը, վերհանելով գրադարանային բարեկարգ շենքերի կառուցման, բիբլիոգրաֆիական ձեռնարկների հրապարակման գործում եղած թերությունները, նյութա-տեխնիկական բազայի անբավարարությունը, մասնագիտական կադրերի խիստ պակասը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն 1959 թ. հոկտեմբերին նշեց դրանց վերացման, այդ բնագավառի աշխատանքների բարելավման կոնկրետ միջոցառումները:

Ինչպես մեր երկրի բոլոր, այնպես էլ Հայաստանի գրադարանային աշխատողները ձեռնամուխ եղան ՍՄԿԿ ԿԿ-ի այդ որոշման կենսագործմանը: Որոշումից հետո գիրքն ավելի մեծ չափերով է օգտագործվում մարդու կոմունիստական դաստիարակության նպատակով, գրադարանների աշխատանքն զգալիորեն մոտենում է կյանքի պահանջներին:

Հանրապետության գրադարաններին ցույց տրվող մեթոդական աշխատանքում կարևոր դեր են խաղում Ալ. Մյասնիկյանի անվան գրադարանի կողմից պարբերաբար հրատարակվող **Հայկական ՍՍՀ գրադարանների աշխատանքի փորձից**, **Նյութեր մասսայական գրադարանների աշխատողների սեմինար պարապմունքների** ժողովածուները: 1960 թ. հրատարակվում է **Գրադարանավար** բյուլետենը, որը հետագայում վերանվանվում և կոչվում է **Կուլտուր-լուսավորական աշխատանք**: Այստեղ պարբերաբար լուսաբանվում են գրադարանային կյանքի առօրյան, մատենագիտության թեորիական հարցերը, առանձին գրադարանների աշխատանքի փորձը:

Գրադարանային առօրյա աշխատանքին զուգընթաց սկսեց զարգանալ նաև գրադարանագիտությունը: Մշակվեցին գրադարանագիտության և մատենագիտության պատմության տեսության ու մեթոդիկայի ակտուալ հարցերը: Այդ տեսակետից արժանի ներդրում են՝ Ռ. Իշխանյանի **Մատենագիտության պատմությունը**, պր. 1—3, Հր. Կոստիկյանի **Մատենագիտության հիմունքները**, **Հասարակական-քաղաքական գրականության մատենագիտությունը**, Հ. Սիլվանյանի **Մասսայական աշխատանքի կազմակերպումը գրադարանում**, պր. 1—3, Բ. Զաքարյանի **Աշխատանք երեխաների հետ մասսայական գրադարանում**, Ալ. Ծահազիզյանի **Ինչպես է օգնում գրադարանը կոլտնտեսային արտադրությանը**, Ե. Մարգարյանի **Գրականության կոմպլեկտավորումը մասսայական գրադարանում** և այլն:

Մեր հանրապետության գրադարանները ծավալուն աշխատանք են տանում հայ մատենագիտության զարգացման ուղղությամբ: Այսպես՝ հանրապետական գրադարանը պատրաստում է հայ տպագիր գրքի մատենագիտությունը, որն ընդգրկելու է հայ առաջին տպագիր գրքից (1512 թ.) մինչև 1960 թվականը հրատարակված գրքերը: 1963 թ. լույս է տեսել **Հայ հնատիպ գրքի մատենագիտական ցուցակը** (1512—1800): ՍՍՀՄ և սփյուռքի մի շարք գրադարանների, գրատների և անհատների կողմից լրացվել է այն և շուտով կվերահրատարակվի իբրև հայ հնատիպ գրքի ամբողջական մատենագիտություն: Հանրապետական գրադարանը հրատարակել է նաև Հ. Դավթյանի **Աշխարհաբար գիրքը հայ տպագրության սկզբից մինչև 1850 թվականը**, Ք. Կորկոտյանի **Հայ տպագիր գիրքը Կոստանդնուպոլսում (1567—1850)**, մատենագիտության բաժնի կազմած **Մատենագիտություն հայկական մատենագիտության** և այլն:

Հայ հին ձեռագրերի գիտական մշակման և մատենագիտության հարցերով զբաղվում է Մ. Մաշտոցի անվան Մատենադարանը: Միայն նրա ձեռագրերի հավաքածուն այսօր ընդգրկում է V դարից մինչև ուշ միջնադարի 10 հազարից ավելի ամբողջական ձեռագրեր և մոտ 1700 պատառիկներ: 1968 թ. լույս տեսավ Մատենադարանի ձեռագրացուցակի առաջին հատորը, որն ընդգրկում է 5000 ձեռագրի նկարագրություն: Առաջիկայում մատենադարանը ծրագրել է մշակել ու հրատարակել առանձին ցուցակներ ըստ պատմության, փիլիսոփայության, գեղարվեստական գրականության, բժշկության և գիտության այլ ճյուղերի:

Հայաստանի գիտությունների ակադեմիայի կենտրոնական (ֆունդամենտալ) գրադարանը հրատարակել է Արմֆանի և Հայկ. ՍՍՀ ԳԱ հրատարակությունների բիբլիոգրաֆիան: 1954 թվականից **Նյութեր հայ գիտնականների կենսագրության և բիբլիոգրաֆիայի համար** մատենաշարով հրատարակվել են ականավոր գիտնականներին նվիրված կենսամատենագիտություններ: Առողջապահության սիստեմի աշխատողներին օգնելու նպատակով մատենագիտական ցանկեր է հրատարակում նաև հանրապետական բժշկական գիտական գրադարանը:

Մասսայական գրադարանների գործունեության առավել բարելավման նպատակով կազմակերպվում են գրադարանային աշխատողների միջշրջանային գիտագործնական կոնֆերանսներ, որոնք հաճախ դառնում են առաջավոր փորձի տարածման, ընդօրինակման լավագույն դպրոց, որի նյութերը սովորաբար հրատարակվում են **Հայկ. ՍՍՀ գրադարանների աշխատանքի փորձից** բյուլետենում: Առանձին ուշադրություն է նվիրվում շրջանային գրադարաններին՝ որպես մեթոդական կենտրոնների: Դրանց մի մասը (Գորիսի, Էջ-



միածնի, Անիի, Արտաշատի, Հոկտեմբերյանի և այլն) իրոք այդպիսին է:

Շատ գրադարաններ անցել են սպասարկման նոր, առաջավոր սիստեմի՝ բաց դարակների, որը հնարավորություն է ընձեռում ընթերցողին՝ ինքնուրույն ընտրելու անհրաժեշտ գիրքը:

Երկար ժամանակ այն կարծիքն էր իշխում, թե գրադարանի հասարակական դերը, նշանակությունը որոշվում են գրքերի քանակով. երկրորդական նշանակություն էր տրվում գրքային հարստության օգտագործմանը, շրջանառությանը: Այդ էր պատճառը, որ շատ գրադարաններ արհեստականորեն ուռճացնում էին ֆոնդերը, դրան համապատասխան մեխանիկորեն մեծացնելով աշխատողների թիվը:

Ուսումնասիրությունները ցույց տվին, որ Հայաստանի գրադարանների 25 միլիոն գրքային ֆոնդի 60—70 տոկոսը չի մտնում շրջանառության մեջ, քանի որ դրանք հաճախ կոմպլեկտավորվում են ոչ պլանավորված ու նպատակային: Օրինակ՝ Երևան քաղաքի Ղարիբջանյանի անվան գրադարանում կան մոտ 108 հազար միավոր գիրք ու բրոշյուր: Գրադարանի ներսում առանձին տեղ է զբաղեցնում **Հասարակական գրադարանի** ֆոնդը: 1968 թ. գրադարանի գրքատացքը եղել է 67591 միավոր, առանձին գրքեր (20—30 օրինակով) շատ հազվադեպ են մտել շրջանառության մեջ: Անօգտագործելի գրքերի հարստությամբ նրան չի զիջում № 26 մասսայական գրադարանը (ֆոնդը՝ 104 հազար): Այստեղ նույնպես գրադարանի նկուղում կարելի է գտնել միևնույն գրքի տարբեր հրատարակությունների բազում օրինակներ, կրկնօրինակներ, որոնք երկար ժամանակ մնում են անօգտագործելի. մինչդեռ շատ գրադարաններ զգում են դրանց կարիքը:

Դեռևս 1913 թ., խոսելով կուլտուրական տրադիցիաների ու մինչհեղափոխական Ռուսաստանի գրադարանների, այսպես կոչված՝ գրապահոցային թեքման մասին՝ Լենինը կոչ էր անում. «...հանրային գրադարանի փառքն ու պարծանքը տեսնել ոչ թե այն բանում, թե ինչքան հազվագյուտ բաներ կան այնտեղ, ինչքան XVI դարի... հրատարակություններ կամ X դարի ձեռագրեր, այլ նրանում, **թե որքան լայն** շրջանառություն ունեն գրքերը ժողովրդի մեջ, ինչքան նոր ընթերցողներ են ներգրավված, որչափ արագ է բավարարվում գրքի ամեն մի պահանջը, ինչքան գիրք է դուրս տրված, ինչքան երեխաներ են ներգրավված ընթերցանության և գրադարանից օգտվելու համար» (Երկեր, հատ. 19, էջ 334):

Գրքի հասարակական օգտագործման կազմակերպման լենինյան պլանում առանձին տեղ է զբաղեցնում գրադարանների միջև գրականության խելացի բաշխման, այդ գործին անհրաժեշտ հսկողություն սահմանելու հարցը:

Չնայած վերջին տարիներս գրադարանային կոլեկտորի կողմից կատարվող կենտրոնացված կոմպլեկտավորման աշխատանքն զգալի չափով բարելավվել է, այնուամենայնիվ, կոմպլեկտավորումը հաճախ կատարվում է առանց մատենագիտության օգնության, հաշվի չառնելով գրադարանների պրոֆիլը: Գրադարանների պրոֆիլի և ընթերցողների հետաքրքրասիրությունների հաշվառումը, միջոցների կոորդինացիան ու նպատակային բաշխումը, փոխանակության ու միջգրադարանային աբոնեմենտի լայն օգտագործումը կբարելավեն կոմպլեկտավորման աշխատանքները:

Մեր կարծիքով անհրաժեշտ է պատշաճ ուշադրություն նվիրել գրականության համար նախատեսված գումարների բաշխմանը: Հանրապետության այնպիսի խոշոր գյուղերի գրադարաններ, ինչպիսիք են՝ Թումանյանի շրջանի Օձունի, Գուգարքի շրջանի Համզաչիմանի գյուղերի գրադարանները (որոնք ունեն մոտ 1000 տնտեսություն), ստանում են նույնքան գումարի գրականություն, որքան 100—300 տնտեսություն ունեցողները: Ակումբին կից գրադարանները տարեկան ստանում են ընդամենը 30 ռ. գրականություն: Այսպես, Աբովյանի շրջանի Մայակովսկի գյուղի ակումբին կից գրադարանի ֆոնդը 2300 միավոր է: 1968 թ. գրադարանը կոլեկտորից ստացել է 30 ռ. գիրք ու բրոշյուր. այսպես՝ **Մ. Աբեղյան** (գինը՝ 3 ռ. 95 կ.), **Հայաստանը VII—IX դարերում** (1 ռ. 80 կ.), Մ. Խորենացու, Փ. Բյուզանդի պատմությունները, մեթոդական նյութեր, տարեգրեր և այլն: Ինչ խոսք, դրանք անհրաժեշտ են, սակայն մասսայական ընթերցանության գրքերի համար մնացել է 20 ռ., մինչդեռ գյուղում գրադարանից օգտվում են 250 տնտեսություն: Անբավարար է նաև մանուկների գրադարանային սպասարկումը: Գրականությունը, հատկապես թարգմանչականը, քիչ է: Դպրոցներում գրականության ձեռք բերման համար նախատեսված գումարները ծախսվում են այլ նպատակներով:

Գրադարանային աշխատանքը դաստիարակչական պրոցես է, որն իրականացվում է գրքի պրոպագանդման, ընթերցանության ղեկավարման միջոցով: Ընթերցանության ղեկավարման նպատակն է՝ ներգործել ընթերցանության բնույթի, բովանդակության վրա, գրքերն ընտրել, ուսումնասիրելով ընթերցողների հետաքրքրասիրությունները, գրքի ակտիվ պրոպագանդման և հանձնարարման միջոցով խթանել ընթերցասիրությունը: Ղեկավարել ընթերցանությունը, նշանակում է հանդես բերել ընթերցողի նկատմամբ խնամակալություն (որը վանում է ընթերցողին) բացա-

վեց 1959 թվականի օգոստոսին։ Գործարանի կառուցմանը զուգընթաց ձեռնարկվեց թուրքական մասնագետների ուսուցումը և կատարելագործումը ՍՍՀՄ ապակու արդյունաբերության ձեռնարկություններում։ Թուրքական մասնագետների խումբը, բաղկացած 22 հոգուց, Սովետական Միություն ժամանեց 1959 թվականի դեկտեմբերի սկզբներին։ Նրանք վեցամսյա որակավորման դասընթացներ անցան Գուս-Խրուստալնի հռչակավոր ապակու գործարանում (Վլադիմիրի մարզ)։ Թուրքական մասնագետների մյուս մասն իր որակավորումը ստացավ տեղում, սովետական մասնագետների օգնությամբ։ 1961 թվականի հուլիսին գործարանը հանձնվեց շահագործման, իսկ 1963 թվականի հունվարից այն աշխատում է առանց սովետական մասնագետների տեխնիկական հսկողության։

Գործարանը սարքավորված է ժամանակակից բարձր արտադրողականություն ունեցող տեխնիկայով, այստեղ հիմնական արտադրական պրոցեսները մեքենայացված ու ավտոմատացված են։ Այն ամենամեծն է ո՛չ միայն Թուրքիայում, այլև ամբողջ Մերձավոր ու Միջին Արևելքում։ Գործարանի կառուցումը ՍՍՀՄ-ն իրականացրեց նախատեսված ժամկետում, բարձր որակով, իսկ դրա արտադրանքը սկզբից ևեթ արագ սպառվեց շուկայում։ Թուրքիան, որը ապակի ներմուծող երկիր էր, սկսեց այն արտահանել հարևան երկրները, նույնիսկ ԱՄՆ։

Սովետական Միության տնտեսական ու տեխնիկական օգնությամբ Թուրքիայում կառուցվեց և 1960 թվականի օգոստոսի սկզբներին շահագործման հանձնվեց նաև բետոնի գործարանը՝ Ստամբուլի մերձակայքում։ Այն լրիվ մեքենայացված է, իսկ բետոնի թողարկումը՝ ավտոմատացված։ Մեքենայական սարքավորման ղեկավարումը կատարվում է ընդամենը երեք օպերատորների կողմից։ Գործարանի տարեկան արտադրանքը կազմում է 50000 խմ բետոն։

1961 թ. ապրիլին Անկարայում համաձայնագիր ստորագրվեց երկու երկրների միջև երկաթուղային ուղղակի հաղորդակցության և հեռախոսային կապ ստեղծելու վերաբերյալ։ Ըստ պայմանի 1962 թվականին սկսվեցին սահմանային Արաքս գետի վրա (Մարգարա—Իգդիր հատվածում), ավտոճանապարհային կամրջի վերականգնման աշխատանքները։ Կամրջի վերականգնումը իրականացվեց երկու կողմերի համատեղ աշխատանքի միջոցով, որը ավարտվեց 1963 թ. հոկտեմբերին։

Սովետա-թուրքական տնտեսական և տեխնիկական համագործակցության մի այլ օրինակ է սահմանային Ախուրյան գետի վրա Անիի շրջանի Ներքին Ջրափի գյուղի մոտ կառուցվող ջրամբարտակը։

1963 թվականի ապրիլ—մայիս ամիսներին Անկարայում տեղի ունեցան սովետա-թուրքական խառը հանձնաժողովի նիստերը՝ ջրամբարտակի կառուցման հարցի շուրջը։ Ապրիլի 25-ին խառը հանձնաժողովը արձանագրություն ստորագրեց ջրամբարտակի շինարարության մասին։ Քննարկվեցին նաև առաջնահերթ նախագծահետախուզական աշխատանքների, ինչպես նաև երկու երկրների հողերի ոռոգման ու հարևան շրջանների կարիքների համար էլեկտրաէներգիայի արտադրության հարցերը («Правда», 7 մայիսի, 1963)։

Այնուհետև սովետական կողմը զբաղվեց ջրամբարտակի շինարարության հետ կապված բոլոր նախագծային և հետազոտական աշխատանքների ուսումնասիրությամբ։ 1964 թվականի օգոստոսին թուրքական պառլամենտը վավերացրեց արձանագրությունը Ախուրյանի գետի ջրերի համատեղ օգտագործման մասին։ Ջրամբարտակի շինարարության հետ կապված բոլոր նախագծային աշխատանքները ավարտվեցին 1965 թ. ամռանը։ Այդ նույն թվականի նոյեմբերի 24-ին Անկարայում, ՍՍՀՄ արտաքին առևտրական «Սելխոզպրոմէքսպորտ» համամիութենական միավորման և Թուրքիայի էներգետիկայի ու բնական ռեսուրսների մինիստրության ջրային տնտեսության գլխավոր վարչության միջև պայմանագիր ստորագրվեց Ախուրյանի ջրամբարտակի կառուցման նախագծային աշխատանքները ՍՍՀՄ կողմից կատարելու վերաբերյալ («Правда», 25 նոյեմբերի, 1965)։

1962 թվականի վերջերին, երկարատև միջկուսակցական պայքարից հետո, հաստատվեց Թուրքիայի տնտեսության զարգացման հնգամյա պլանը՝ 1963—1967 թթ. համար։ Այդ պլանը նախատեսում էր մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների շինարարություն (պետական սեկտոր)։ Բայց, քանի որ Թուրքիայի տնտեսական ու ֆինանսական վիճակը ռազմական անհամեմատ բարձր ծախսերի պատճառով խիստ ծանր էր, այդ ձեռնարկությունների շինարարությունը հնարավոր էր իրագործել միմիայն ուրիշ պետությունների միջոցներով։

Նման դեպքերում թուրքական կառավարողները պատրաստակամություն հայտնեցին ՍՍՀՄ-ից ներմուծելու արդյունաբերական կոմպլեքսային սարքավորում. դրա արժեքը արտահանության ավանդական ապրանքներով մարելու պայմանով։

1964 թվականը շրջադարձային եղավ ՍՍՀՄ և Թուրքիայի միջև տնտեսական ու տեխնիկական կապերի զարգացման ասպարեզում։ Արժանահիշատակ են 1964 թ. նոյեմբերին Թուրքիայի արտաքին գործերի մինիստր Ֆ. Ջ. Երկինի բանակցությունները Մոսկվայում, ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստր Ա. Գրոմիկոյի այցելությունը Թուրքիա (1965 թվականի մայիս) և Թուրքիայի պրեմիեր մինիստր Ս. Հ. Ուրգուփլյուի ժամանումը Մոսկվա (1965 թվականի օգոստոս)։ Բանակցությունների ընթացքում բազմակողմանիորեն քննարկվեցին երկու երկրների տնտեսական ու տեխնիկական կապերի զարգացման հարցերը։ Տնտեսական ու տեխնիկական կապերի ընդլայնման շուրջ սովետա-թուրքական բանակցությունները ավարտվեցին 1965 թվականի նոյեմբեր-դեկտեմբերին։ Կողմերը համաձայնեցին, որ Սովետական Միությունը Թուրքիային կտրամադրի ֆաբրիկա-գործարանային սարքավորում և տեխնիկական օգնություն ցույց կտա յոթ ձեռնարկության շինարարության— մետալուրգիական կոմբինատի, ալյումինի, նավթաթոր, ապակու երկրորդ, կաուստիկ սոդայի, օղու և փայտանյութակման գործարանների համար («Ak-sam», 21 սեպտեմբերի, 1965)։

Նախատեսվում էր ալյումինի գործարանը (200 հազ. տոննա) կառուցել Սեյդիշեհիրում (Քոնիայի վիլայեթ), նավթաթորինը (4 մլն տոննա)՝ Ալիաղայում (Իզմիրի մոտ), ապակու և ռուսական օղու գործարանները՝ Ստամբուլում, փայտանյութակմանը՝ Արթվինում, մետալուրգիական կոմբինատը Իսքենդերունի (Ալեքսանդրետտա) մոտ և այլն։

Այդ առթիվ «Միլլիյեթ» թերթը հատուկ շեշտում էր, որ կառուցվող ձեռնարկությունները կփրկեն Թուրքիային նավթային և ալյումինային օտարերկրյա կարտելների քմահաճույքներից։ 1966 թվականի հուլիսին ՍՍՀՄ ժամանեց թուրքական տեխնիկական խորհրդականների պատվիրակությունը, որը ծանոթացավ Վոլգոգրադի ալյումինի և Ուֆայի նավթաթոր գործարանների և ուրիշ արդյունաբերական ձեռնարկությունների հետ, որոնց նմանները նախատեսվում է կառուցել Թուրքիայում։ Պատվիրակությունը քննարկեց կառուցվող ձեռնարկությունների նախնական նախագծերը և այցելեց սովետական այն գործարաններն ու ֆաբրիկաները, որոնք պետք է սարքավորում մատակարարեն։

Միաժամանակ պայմանավորվածություն ձեռք բերվեց վարկավորման մասին։ ՍՍՀՄ-ը պարտավորվեց Թուրքիային տրամադրել արտադրական վարկ 15 տարի ժամկետով, 2,5 տոկոսի հաշվով։ Սովետական վարկը մարվելու է թուրքական ավանդական, ինչպես նաև արդյունաբերական որոշ ապրանքների արտահանման միջոցով։ Նույն թվականի օգոստոսին Թուրքիա այցելեց ՍՍՀՄ արտաքին առևտրի մինիստր Ն. Ս. Պատոլիչևը, որը բանակցություններ վարեց նաև տնտեսական ու տեխնիկական օգնության հարցերի շուրջ։

1967 թվականի մարտի 25-ին ՍՍՀՄ և Թուրքիայի միջև վերջնական համաձայնագիր ստորագրվեց վերոհիշյալ արդյունաբերական ձեռնարկությունների կառուցման պայմանների մասին։

Սովետական Միության տնտեսական ու տեխնիկական օգնությամբ Թուրքիայում կառուցվելիք ձեռնարկությունները մեծ նշանակություն կունենան նրա ազգային արտադրության ընդլայնման և արդյունաբերության զարգացման համար։ Բավական է ասել, որ կառուցվող ալյումինի գործարանի արտադրանքը ապահովելու է Թուրքիայի ներկայիս կարիքները («Hürriyet», 21 հունվարի, 1966)։

ՍՍՀՄ-ը օգնում է Թուրքիային նաև հանքային հանածոների շահագործման բնագավառում։ Դեռևս 1964 թվականի վերջերին Սովետական Միություն այցելած թուրքական մասնագետները գնեցին «Ուրալմաշ» տիպի նավթահորատող սարքավորում։ Այն արդեն հաջողությամբ գործածվում է Դարենդեի (կենտրոնական Անատոլիա) նավթահանքերում, ուր գործուղված սովետական մասնագետները միաժամանակ օգնում են թուրքական մասնագետներին տիրապետելու այդ բարդ տեխնիկային։

Բոքսիդների շահագործման համար ևս Սովետական Միությունը օգնություն է առաջարկում Թուրքիային. նա պատրաստ է տրամադրել լեռնահանքային սարքավորում՝ բոքսիդների մշակման համար, որից հետո կարող է ներմուծել դրա տեղում չսպառվող մասը, իր կողմից տրամադրված սարքավորման դիմաց («Известия», 31 օգոստոսի, 1966)։

Սովետական Միության ու Թուրքիայի միջև տնտեսական ու տեխնիկական կապերն արդեն մտել են կանոնավոր հունի մեջ, այն նպաստում է Թուրքիայի արդյունաբերական զարգացմանը, նրա տնտեսական անկախության ամրապնդմանը։ Այդ կապերը աշխարհի հզոր և արդյունաբերապես խիստ զարգացած և թույլ զարգացած երկրների միջև, անկախ նրանց քաղաքական-հասարակական կառուցվածքից, հնարավոր համագործակցության լավ օրինակ են։ Այդ կապերի հիմքում ընկած է ՍՍՀՄ անկեղծ ցանկությունն աջակցելու Թուրքիայի ազգային էկոնոմիկայի զարգացմանը։

Թուրքական մամուլում լայնորեն քննարկվում են ո՛չ միայն սովետա-թուրքական տնտեսական ու տեխնիկական կապերի, այլև ՍՍՀՄ արտաքին տնտեսական քաղաքականությունը թույլ զարգացած երկրների նկատմամբ հարցը։ Անդրադառնալով վերջինիս, «Քիմ» հանդեսը գրում է. «Սովետական օգնության առավել կարևոր առանձնահատկությունն այն է, որ դա ուղղված է արևմուտքի տնտեսական ազդեցությունից օգնություն ստացող երկրների ազատագրմանը։ Ռուսական (այսինքն՝ սովետական— Ռ. Կ.) օգնությունը ուղղված է այդ երկրների տնտեսական վերելքին։ Դա նշանակում է վարկեր արդյունաբերական ձեռնարկությունների կառուցման համար, որոնք տրամադրվում են շատ շահավետ պայմաններով՝ տարեկան 2,5 տոկոսի չափով և մարվում են ոչ թե վալյուտայով, այլ ապրանքներով, որի շնորհիվ մենք կարող ենք խուսափել վալյուտայի հետ կապված դժվարություններից»։

Թուրքական լրագրող Ս. Ջ. Բաղլասը այդ առթիվ նշել է. «Հայտնի է, որ Սովետական Միությունը շատ երկրների տնտեսապես օգնել է և շարունակում է օգնել: ՍՍՀՄ կառավարությունը նրանցից ոչ մեկին չէր պարտադրում ոչ մի քաղաքական պայման և ոչ էլ իր սիստեմը («Dünya», 14 նոյեմբերի, 1960):

ՍՍՀՄ տնտեսական ու տեխնիկական օգնությունը Թուրքիային բազմակողմանի է: Այն նախ՝ հնարավորություն է ընձեռում նրա ազգային արտադրության ընդլայնման համար. համապատասխանում է թուրք ժողովրդի կենսական շահերին, ստիպում իմպերիալիստական մոնոպոլիաներին նահանջել իրենց գրաված դիրքերից, ամրապնդում նրա էկոնոմիկան, հատկապես արդյունաբերության պետական սեկտորը, նեղացնում օտարերկրյա և ազգային խոշոր կապիտալի գործունեության ոլորտները, արագացնում Թուրքիայի տնտեսական զարգացումը, աջակցում նրա ազգային անկախ էկոնոմիկայի ամրապնդմանը: Օգնելով Թուրքիային, ՍՍՀՄ-ը այն չի պայմանավորում քաղաքական, ռազմական կամ ուրիշ նկատառումներով: Սովետական վարկերը, որպես կանոն, մարվում են ձեռնարկությունը շահագործման հանձնելուց հետո, իսկ շահույթների հաշվին և արտահանվող ապրանքների միջոցով:

Տնտեսապես ու տեխնիկապես օգնելով Թուրքիային, ՍՍՀՄ-ը ձգտում է, որ վերջինս կարճ ժամանակամիջոցում ստեղծի ու զարգացնի իր ժամանակակից արդյունաբերությունը: ՍՍՀՄ կողմից Թուրքիայում կառուցվող արդյունաբերական ձեռնարկությունները համապատասխանում են արդյունաբերության տվյալ ճյուղի նորագույն նվաճումներին: Սովետական մասնագետները Թուրքիայում հանդես չեն գալիս արտադրության ղեկավարի դերում, այլ աշխատում են ազգային մասնագետների հետ միասին, նրանց հաղորդելով իրենց գիտելիքներն ու փորձը: Օգնելով Թուրքիային, ՍՍՀՄ-ը հանդես է գալիս ոչ թե որպես օտարերկրյա կապալառու, այլ որպես մասնակից կողմ՝ թուրքական ազգային կազմակերպությունների հետ միասին: Շինարարության ավարտումից հետո ՍՍՀՄ-ը չի դառնում սեփականատեր, չի կառավարում և շահույթներ չի կորզում, այլ կառուցված ձեռնարկությունները լրիվ հանձնում է տեղական ազգային կազմակերպություններին: Կառուցելով արդյունաբերական ձեռնարկություններ, ՍՍՀՄ-ը միաժամանակ պատրաստում է ազգային կադրեր— բարձրորակ մասնագետներ ու բանվորներ, նա ստեղծում է բոլոր հնարավորությունները իր գիտության ու տեխնիկայի վերջին նվաճումներին նրանց ծանոթացնելու համար: Սովետա-թուրքական տնտեսական ու տեխնիկական կապերը խթանիչ գործոն են առևտրի հետագա զարգացման գործում, թեթևացնում են Թուրքիայի արտաքին առևտրային դժվարությունները:

Միայն ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների հետ զարգացնելով լայն առևտրական, տնտեսական ու տեխնիկական կապերը, Թուրքիան հնարավորություն կունենա կանգնել ազատ ու անկախ զարգացման ճանապարհի վրա:

Տրամադրելով իր տնտեսական ու տեխնիկական օգնությունը Թուրքիային, ՍՍՀՄ-ը չի զբաղվում սովորական բարեգործությամբ կամ կեղծ մարդասիրությամբ. այն հենված է արդարացի, գործարար սկզբունքների վրա, ուր երկու երկրները հանդես են գալիս որպես իրավահավասար գործակիցներ, կողմերի համար առանց որևէ վնասի: Պետք է նկատի ունենալ նաև, որ սովետական օգնությունը Թուրքիային տրամադրվում է ոչ թե ավելորդ, այլ իրեն անհրաժեշտ միջոցների հաշվին:

ՍՍՀՄ ու Թուրքիայի տնտեսական ու տեխնիկական կապերը ծավալվում են ՍՍՀՄ արտաքին-տնտեսական քաղաքականության ընդհանուր սկզբունքների համաձայն ու նրանց շրջանակներում և մի անգամ ևս ակնառու հաստատում են սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առավելությունները կապիտալիզմի նկատմամբ:

Բնութագրելով սովետա-թուրքական հարաբերությունների ներկա վիճակը ընկ. Ա. Գրոմիկոն Գերագույն սովետի 1969 թ. հուլիսի նստաշրջանում հայտարարեց. «Բոլոր հիմքերը կան ասելու, որ Թուրքիայի հետ Սովետական Միության հարաբերությունները ստեղծվում են բարի դրացիական նշանաբանով: Սովետական Միությունն իր կողմից մտադիր է շարունակել Թուրքիայի հետ լավ, բարեկամական հարաբերություններ զարգացնելու գիծը, համոզված լինելով, որ գոյություն ունի բոլոր բնագավառներում սովետա-թուրքական լայն համագործակցություն հաստատելու ասպարեզ, և, փոխադարձ ձգտման առկայության դեպքում, այդ բանը կարելի է օգտագործել ի շահ երկու երկրների» («Սովետական Հայաստան», 11 հուլիսի, 1969):

1969 թ. նոյեմբերին, պաշտոնական այցելությամբ, ՍՍՀՄ ժամանեց Թուրքական հանրապետության պրեզիդենտ Ջ. Սունայը: Սովետա-թուրքական կոմյունիկեում, որ հրապարակվեց բանակցությունների վերջում, երկու կողմերը գոհունակություն հայտնեցին սովետա-թուրքական առևտրա-տնտեսական կապերի ամրապնդման առթիվ:

Ռ. Պ. ԿՈՆԴԱԿՉՅԱՆ

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

## ԼԵՆԻՆԻ ՊԱՅՔԱՐԸ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԱՅԼԱՍԵՐՄԱՆ ԴԵՄ

(1914 թ. հուլիս—1917 թ. փետրվար)

Վ. Ի. Լենինի տեսական ժառանգության մեջ հատուկ տեղ են գրավում առաջին համաշխարհային պատերազմի տարիներին գրած նրա աշխատությունները: Այստեղ նա տվել է իմպերիալիզմի դարաշրջանի, մասնավորապես պատերազմի ժամանակաշրջանի, ռազմա-քաղաքական ու սոցիալական իրադարձությունների վերլուծությունը, բացահայտել ո՛չ միայն Ռուսաստանի, այլև ամբողջ միջազգային սոցիալ-դեմոկրատիայի հեղափոխական ու օպորտունիստական հոսանքների միջև եղած սկզբունքային տարաձայնությունների էությունը: Համակողմանիորեն ուսումնասիրելով իմպերիալիզմի էությունը, Լենինը գիտականորեն հիմնավորեց, որ «կապիտալիստական իմպերիալիզմի դարաշրջանը հասունացած ու գերհասունացած և իր խորտակման նախօրեին հասած, իր տեղը սոցիալիզմին զիջելու չափ հասունացած կապիտալիզմի դարաշրջանն է» (Երկեր, հ. 23, էջ 134):

Պատերազմի տարիներին գրած աշխատություններում Լենինը մեծ տեղ է հատկացրել պրոլետարիատի բուրժուական այլասերման դեմ մղվող պայքարին: Հայտնի է, որ ռուսական լիբերալ-միապետական բուրժուազիան ձգտում էր բանվորական շարժումը ուղղել արևմտաեվրոպական ու ամերիկյան կապիտալիստների մշակած հունով, գաղափարապես այլասերել բանվոր դասակարգին, թուլացնել նրա պայքարը կապիտալիստական կարգերի դեմ: Իմպերիալիզմը և սոցիալիզմի պառակտումը հոդվածում Լենինը կոչ էր անում կուսակցությանը, ...պատերազմի փորձը հաշվի առնել նացիոնալ-լիբերալ բանվորական քաղաքականության ամբողջ աղտեղությունը մերկացնելու համար» (Երկեր, հ. 23, էջ 151):

Վերլուծելով իմպերիալիզմի դարաշրջանի դասակարգային պայքարը, Լենինը հանգեց այն հետևության, որ բուրժուազիան, հեղափոխական բանվորական շարժման դեմ պայքարելիս, կիրառում է երկու գործելակերպ՝ բացահայտ բռնաճնշում և գաղափարական ներգործությամբ՝ բանվոր դասակարգի միասնության մասնատում: Այս կամ այն գործելակերպի կիրառումը միշտ պայմանավորվում էր ստեղծված սոցիալ-քաղաքական իրադրությամբ, երկրում դասակարգային ուժերի հարաբերակցությամբ, մասնավորապես, հեղափոխական շարժման լարվածության աստիճանով: Ռուսաստանում, օրինակ, մինչև 1905 թվականի հեղափոխությունը հիմնականում տիրապետում էր բանվորական շարժման բռնաճնշման գործելակերպը: 1905 թվականի հեղափոխությունը, որը սարսափեցրել էր ո՛չ միայն ռուսական, այլև ամբողջ եվրոպական բուրժուազիային, ստիպեց ռուսական լիբերալ-միապետական բուրժուազիային «նոր կուրս» մշակել բանվորական շարժման նկատմամբ, իր գաղափարական ազդեցությանը ենթարկել բանվոր դասակարգին: Այդ տենդենցն առանձնապես ցայտուն արտահայտվեց առաջին համաշխարհային պատերազմի տարիներին, երբ ցարական զորքերի պարտությունը ռազմաճակատում և երկրում դասակարգային պայքարի ծայրահեղ սրումը հասունացրին հեղափոխական ճգնաժամը: Ստեղծված իրավիճակում բուրժուազիան ավելի էր համոզվում, որ միայն ռազմա-ոստիկանական մեթոդով հնարավոր չէր պայքարել աճող հեղափոխական շարժման դեմ, որ հեղափոխությունը կանխելու համար անհրաժեշտ է անցնել պայքարի արևմտա-եվրոպական բուրժուազիայի մշակած ավելի նուրբ ու թաքուն մեթոդներին: Ռազմական մատակարարումներից հսկայական շահույթներ ստացած ռուսական կապիտալիստները հակված էին բանվորներին առանձին նպաստների ձևով աննշան զիջումներ անել ու դրանով նրանց ուշադրությունը շեղել կապիտալիզմի դեմ պայքարից:

Այդ հարցերը լայնորեն քննարկվում էին բուրժուական մամուլի էջերում: «День», «Речь»

բական-նարոդնիկական-կադետական», նկատի ունենալով, որ մենշևիկների-օպորտունիստների և էսեռների հետ լիբերալ-միապետական բուրժուազիայի դաշինքը ստեղծվեց այդ կուսակցությունների կողմից բուրժուական ռեֆորմիզմի ընդունման հիման վրա։

Բանվորական քաղաքականության մեջ ռուսական բուրժուազիային «նոր կուրսի» դրդող պատճառներից առավել գլխավորը Լենինը համարում էր անարգել շահագործման միջոցով գերշահույթ ստանալու կապիտալիստների ցանկությունը։ «Բուրժուազիայի տեսակետը պարզ է, — գրել է Վ. Ի. Լենինը,— «մենք» ուզում ենք իմպերիալիզմի քաղաքականություն, ուրիշի հողերը զավթելու քաղաքականություն։ «Մեզ» խանգարում են գործադուլները։ «Մենք» կորցնում ենք հավելյալ արժեքը «կորցրած» բանվորական օրերի համար։ «Մենք» ուզում ենք բանվորների նույնպիսի «նորմալ» շահագործում, ինչպես Եվրոպայում է» (Երկեր, հ. 18, էջ 679)։

Բանվոր դասակարգի գաղափարական այլասերման քաղաքականությունը ռուսական բուրժուազիան ռազմա-արդյունաբերական կոմիտեների միջոցով առավել լիակատար ու բացահայտ կիրառեց պատերազմի տարիներին։ Վերջինները բուրժուազիան ստեղծել էր համաշխարհային իմպերիալիստական պատերազմի թոհուբոհի շրջանում՝ 1915 թվականի ամռանը։ Այդ կոմիտեների առաջացումը պայմանավորված էր երեք գլխավոր գործոններով. ռազմաճակատներում ցարական զորքերի պարտությամբ, երկրում հեղափոխական ճգնաժամի հասունացմամբ և բուրժուազիայի ու ցարական կառավարության միջև հակասությունների սրմամբ։ Բուրժուազիան այդ կոմիտեները համարում էր երկու սոցիալական կողմերի՝ արդյունաբերողների և բանվորների միջև համաձայնության հասնելու շատ հարմար կազմակերպություններ, լավ պլատֆորմ։ Այսպես, ռազմա-արդյունաբերական կոմիտեների գլխավոր կազմակերպիչներից մեկը՝ վերոհիշյալ միլիոնատեր Կոնովալովը քաղաքների ներկայացուցիչների համագումարի կուլուարներում ասաց, որ այդ կոմիտեների դրոշի տակ բուրժուազիան ձգտում է ամբողջ երկրում ստեղծել լեգալ գործող բանվորական կազմակերպությունների լայն ցանց (տե՛ս «Буржуазия накануне февральской революции. Сборник документов». М.-Л., 1927 г. стр. 95)։

Պատահական չէ, որ բուրժուազիան ամեն կերպ ջանում էր մենշևիկյան-էսեռական համաձայնողականների օգնությամբ ռազմա-արդյունաբերական կոմիտեներում ներգրավել բանվորների ներկայացուցիչներ և ստեղծել, այսպես կոչված՝ «բանվորական խմբեր»։ Դա բուրժուազիայի կողմից բանվոր դասակարգի վերնախավի կաշառման յուրատեսակ քայլ էր։ Դրա համար Լենինը հատուկ ուշադրություն էր նվիրում այդ կոմիտեների «բանվորական» քաղաքականության մերկացմանը։ Խոսելով նպաստների ու եկամտավոր պաշտոնների մասին, որոնցով բուրժուազիան շարունակ կաշառում, ներգրավում և իր ազդեցությանն էր ենթարկում բանվորական արիստոկրատիային ու «բուրժուական բանվորական կուսակցությունների» կողմնակիցներին, Լենինը դրանք, ինչպես և պառլամենտների, «բուրժուականորեն հնազանդ» բանվորական միությունների զանազան հանձնաժողովներն ու վարչությունները անվանում էր նաև ռազմա-արդյունաբերական կոմիտեներ։ Ռազմա-արդյունաբերական կոմիտեներում բուրժուազիայի կողմից բանվորների ներկայացուցիչներ ներգրաված՝ իմպերիալիզմի մենշևիկա-էսեռական կամակատարներին Լենինը դասում է բանվոր-մինիստրների, պառլամենտների, բանվոր-դեպուտատների, բանվոր-չինովնիկների և բանվորական արիստոկրատիայի այլ կատեգորիաների շարքը, որոնք մշտապես սնվում են մոնոպոլիստների փշրանքներով։

Նա գտնում էր, որ ռազմա-արդյունաբերական կոմիտեներում մենշևիկների ու էսեռների առկայությունը հավասարազոր է Արևմուտքի բուրժուական կառավարություններում սոցիալիստների մասնակցությանը։ Բորիս Սուվարինին ուղղած բաց նամակում Լենինը գրել է. «Պետրոգրադում մեր բանվորները քվեարկում են ռազմա-արդյունաբերական կոմիտեներում մասնակցելու դեմ (մեզ համար ամենակարևոր գործնական հարցը. Ռուսաստանի համար դա նույնքան կարևոր է, որքան Ֆրանսիայում կառավարության մեջ մասնակցելու հարցը)» (Երկեր, հ. 23, էջ 265)։

Ռուսաստանի բանվորական գործիչներին, որոնք համաձայնության էին եկել բուրժուազիայի հետ, ռազմա-արդյունաբերական կոմիտեներում ստեղծել էին «բանվորական խմբեր», Լենինը անվանում էր բացահայտ օպորտունիստներ, որոնք ակնհայտորեն հանդես էին գալիս հեղափոխական շարժման ու հեղափոխական բռնկումների դեմ։ Բուն «բանվորական խմբերը» Լենինը համարում էր Իտալիայի Բիսսոլատիի սոցիալ-իմպերիալիստական կուսակցության տիպի կիսաձևավորված բուրժուական բանվորական կուսակցություն։

Լենինը ոչ միայն մերկացրեց ռազմա-արդյունաբերական կոմիտեների բանվորական քաղաքականության էությունը, այլև մշակեց կուսակցության և այդ կոմիտեների վերաբերյալ բանվոր դասակարգի տակտիկան։ Մի քանի թեզիս հոդվածում նա գրում էր, որ ռազմա-արդյունաբերական կոմիտեների ընտրությունների առաջին ստադիայում պետք է ակտիվ մասնակցություն ունենալ միմիայն ագիտացիոն և կազմակերպական նպատակներով» (Երկեր, հատ. 21, էջ 510), իսկ ընտրությունների երկրորդ փուլում՝ բոյկոտի ենթարկել այն։ Առաջնորդվելով Լենինի պարզորոշ դիրքորոշումով, կուսակցությունը կամպանիա ծավալեց բուրժուական կազմակերպություններում բանվորների մասնակցության դեմ, որի շնորհիվ երկրի համարյա բոլոր խոշոր արդյունաբերական կենտրոններում ռազմա-արդյունաբերական կոմիտեները բոյկոտի ենթարկվեցին բանվոր դասակարգի կողմից։

Ռուսական լիբերալ-միապետական բուրժուազիայի բանվորական քաղաքականության լենինյան քննադատական վերլուծությունը տեսական կռվան էր, որի շնորհիվ բոլշևիկյան կուսակցությունը կարողացավ ապահովել բանվոր դասակարգի ազատագրումը բուրժուական լիբերալիզմի և սոցիալ-իմպերիալիզմի գաղափարական ազդեցությունից։ Այսպես, բոլշևիկյան կազմակերպություններն ամենուր մերկացնում էին բանվոր դասակարգին սիրաշահելու բուրժուական քաղաքականությունը։ Բանվորական շարժման դեմ ռուսական բուրժուազիայի պայքարի «նոր» մեթոդները բնութագրելով որպես «եվրոպական» մեթոդներ, կուսակցության Պետրոգրադի կոմիտեի տպագիր օրգանը՝ «Пролетарский голос» թերթը գրեց. «Մեզ մոտ դեռ չկա եվրոպական ազատություն, եվրոպական կապիտալիզմ, իսկ ինչ վերաբերում է բանվորական շարժման դեմ մղվող պայքարին, ապա այդ բնագավառում կիրառվում են Եվրոպայում իսկ հնարված բոլոր նորագույն եղանակները» (№ 3, 1916 թ.)։

Բանվոր դասակարգի գաղափարական այլասերման բուրժուական քաղաքականության դեմ մղած հետևողական պայքարով բոլշևիկյան կուսակցությունը Լենինի ղեկավարությամբ խափանեց պրոլետարիատի միասնությունը պառակտելու ռուսական լիբերալ միապետական բուրժուազիայի քաղաքական պլանները։ Դրանով իսկ բոլշևիկյան կուսակցությունը լուրջ պարտության մատնեց բուրժուազիային։

Այսպիսով, թեև ռուսական բուրժուազիան կիրառում էր հեղափոխական բանվորական շարժման դեմ մղվող պայքարի «եվրոպական» մեթոդներ, բայց չկարողացավ բանվոր դասակարգին ենթարկել իր ազդեցությանը, կանխել հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում։ Դրանում վճռական դեր խաղացին բուրժուազիայի քաղաքական գործունեության ոլորտից դուրս գտնվող այլ գործոններ։ Բանն այն է, որ ռուսական բուրժուազիայի «Եվրոպական» բանվորական քաղաքականությունը լոկ լիբերալիզմ խաղալ էր, և, որ գլխավորն է, ռուսական բուրժուազիան բանվորական քաղաքականության իր «նոր կուրսով» շատ էր ուշացել։ Ռուսական պրոլետարիատն արդեն կազմակերպված էր, ուներ իր նոր տիպի մարտական մարքսիստական կուսակցությունը, որի ղեկավարությամբ անհրաժեշտ հեղափոխական կոփվածք ստացավ։ Դեռ 1912 թվականի մարտին Լենինը Կադետների բլոկը պրոգրեսիստների հետ և նրա նշանակությունը հոդվածում գրեց, որ «Ռուսաստանի բանվոր դասակարգն իրեն ցույց է տվել բավականաչափ ինքնուրույն և ընդունակ իրեն պաշտպանելու,— այդ դեռ քիչ է՝ ընդունակ ղեկավարելու դեմոկրատիային ընդդեմ լիբերալիզմի» (Երկեր, հ. 17, էջ 683)։ Բացի այդ, պետք է նշել, որ առաջին ռուսական հեղափոխության և 1914—1917 թթ. պատերազմի միջև ընկած ժամանակաշրջանում պրոլետարիատի և բուրժուազիայի ուժերի հարաբերակցությունը վերջինիս օգտին չէր։ Ուստի, «դասակարգային խաղաղության» և ռեֆորմիզմի քաղաքականությունը չէր կարող նպաստավոր հող գտնել ռուսական իրականության մեջ. «Մեր երկրում,— նկատել է Վլադիմիր Իլյիչը,— ընդհանուր դրությունը թշնամական է բանվորական մասսաների մեջ «սոցիալիստական» օպորտունիզմի ծաղկման նկատմամբ։ Մենք Ռուսաստանում տեսնում ենք ինտելիգենցիայի, մանր բուրժուազիայի և այլնի մեջ օպորտունիզմի և ռեֆորմիզմի մի ամբողջ շարք նրբերանգներ։ Բայց այն բանվորների քաղաքականապես ակտիվ խավերի մեջ չնչին փոքրամասնություն է» (Երկեր, հ. 21, էջ 405)։

Բանվոր դասակարգին բուրժուազիայի կողմից սիրաշահելու դեմ Լենինի և բոլշևիկների պայքարը գաղափարապես ու քաղաքականապես կոփում էր Ռուսաստանի պրոլետարիատին, նրա շարքերը զտում բուրժուական գործակալներից։ «Պրոլետարիատի համար վերին աստիճանի շահավետ է,— գրել է Լենինը,— որ նրա շարժման այդ նախնական զտումը պատմությունը սկսել է անել սոցիալիստական հեղափոխության նախօրյակին, և ոչ թե հենց նրա ընթացքում» (Երկեր, հ. 21, էջ 536)։

Վ. Ի. Լենինի տեսական ու տակտիկական դրույթները բոլշևիկյան կուսակցությունը հաջողությամբ կիրառեց առաջին համաշխարհային պատերազմի տարիներին՝ պրոլետարիատի գաղափարական այլասերման բուրժուական քաղաքականության դեմ մղված պայքարում։ Դրանք հրատապ նշանակություն ունեն միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ժամանակակից փուլում։ Մեր կուսակցության գործնական հարուստ փորձը օգնում է կապիտալիստական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցություններին պայքարելու պրոլետարիատի վրա բուրժուական գաղափարական ներգործության նրբին մեթոդների դեմ։ Լենինյան տեսական դրույթները կոմունիստական ու բանվորական կուսակցությունների գաղափարական զենքն են հակակոմունիզմի դեմ մղվող սուր պայքարում։

Բ. Ս. ՍԵՅՐԱՆՅԱՆ

## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՐԵՆ

# ԼԵՆԻՆԱՊԱՏՈՒՄԸ «ՓԱՐՈՍ» ԹԵՐԹՈՒՄ

Լենինի կյանքի ու գործունեության, նրա տեսական հարուստ ժառանգության պրոպագանդման, վսեմ գաղափարների կենսագործման լուսաբանման գործում լուրջ է նաև շրջանային թերթերի դերը: Այդ տեսակետից ուշագրավ գործ է կատարում ՀԿԿ Ստեփանավանի շրջկոմի, աշխատավորների դեպուտատների Ստեփանավանի շրջսովետի և Ստեփանավանի քաղաքային սովետի օրգան «Փարոս» թերթը: Այն պարբերաբար հրապարակում է Վլադիմիր Իլյիչի կյանքն ու գործունեությունն արտացոլող բովանդակալից նյութեր՝ սերտորեն միահյուսված կոմունիստական կուսակցության, Ռուսաստանի ժողովուրդների հեղափոխական շարժման պատմության հետ: Այդ ֆոնի վրա հառնում է մեծ առաջնորդի կերպարը՝ որպես մարքսիզմի խոշոր տեսաբան, հեղափոխության հանճարեղ կազմակերպիչ ու ղեկավար, քաղաքական ու պետական գործիչ: Դրանում համոզվեցինք՝ թերթելով այդ լրագրի 1969 թ. համարները:

Մարդու և քաղաքացու անզուգական օրինակ է նա սերունդների համար: Իլյիչի համեստ բնավորությունը հիացրել է բոլոր նրանց, ովքեր գեթ մի անգամ բախտ են ունեցել հանդիպելու նրան, լսելու նրա խորիմաստ, համոզիչ խոսքը: Այդ մասին են պատմում ժամանակակիցների հուշերը: Ց. Մախարաձեն *Ամենամարդկային մարդը* հոդվածում (№ 62), գրում է, «Նա պարզության ու համեստության պայծառ օրինակ է: Նրան բնորոշ են շատ աշխատելու, առանց թմբկահարման մեծ գործեր կատարելու, բոլորի հետ՝ մեծ թե փոքր, հասարակ ու համեստ վարվելու ունակությունը»:

Թերթն զգալի տեղ է հատկացնում լենինյան գաղափարների կենսագործմանը, բացահայտում գյուղում կատարված սոցիալ-տնտեսական ու քաղաքական արմատական վերափոխումները, ցույց տալիս, թե կոլտնտեսային օջախները, դպրոցները, կուսակցական, կոմերիտական և հասարակական կազմակերպությունները ինչպիսի միջոցառումներով են պատրաստվում դիմավորել Լենինի ծննդյան 100-ամյակը:

1969 թ. համարներից մեկում (№ 5) թերթը հիշեցնում է, որ Իլյիչի կարևոր պատգամներից է սոցիալիստական մրցության կազմակերպումը, որովհետև սոցիալիզմը «առաջինն է հնարավորություն ստեղծում լայնորեն կիրառելու այն, աշխատավորներին մասսայաբար ներգրավելու մի այնպիսի գործում, որտեղ նրանք կդրսևորեն իրենց, կծավալեն իրենց ընդունակությունները»: Այնուհետև թերթը գրեթե ամեն համարում ցույց է տալիս շրջանի աշխատավորության հաջողությունները սոցիալիստական մրցության ծավալման ասպարեզում:

*Լենինյան աշխատանքային հերթափոխում* խորագրով միշտ տպագրվում են ինֆորմացիաներ, ռեպորտաժներ, հոդվածներ, որոնք տեղեկացնում են առանձին կոլտնտեսությունների, սովխոզների, արդյունաբերական ձեռնարկությունների՝ սոցիալիստական մրցությամբ ձեռք բերած բարձր ցուցանիշների մասին: *Լենինյան հոբելյանին արժանավայել դիմավորում* (№ 121) խորագրի տակ զետեղված հոդվածներից մեկում դրվատանքի ջերմ խոսք է ասված Վարդաբլուրի կոլտնտեսության անվանի հովիվ Ս. Ղուկասյանի և Կողեսի կոլտնտեսության անասնապահ Ս. Տրանդաֆիլովի մասին:

«Փարոսը» հատուկ էջ է նվիրել շրջանի առաջավոր անասնապահական տնտեսություններից մեկի՝ Կույբիշևոյի սովխոզի առօրյային (№ 125): Կանգնելով լենինյան հերթափոխի, սովխոզի կոլեկտիվը հասել է արտադրական նոր հաջողությունների: Այդ մասին են պատմում սովխոզի մարդիկ իրենց ելույթներում: Սովխոզի կուսբյուրոյի քարտուղարը գրում է մրցությանը գործարար բնույթ տալու նպատակով սկզբնական կուսկազմակերպության ձեռնարկած կոնկրետ միջոցների մասին, որոնց շնորհիվ զգալի չափով գերակատարվել են կաթի, մսի հանձնման, մանր ու խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի ավելացման պարտավորությունները: Իրենց աշխատանքային փորձի մասին են պատմում տնտեսության առաջավորները, որոնք ամեն ինչ անում են պետական առաջադրանքները ժամկետից շուտ գերակատարելու համար:

Թերթում հաճախակի տպագրվող հաղորդումներից իմանում ենք, որ շրջանի երիտասարդությունը, դպրոցականները խնամքով են նախապատրաստվում մեծ առաջնորդի տարելիցին: Այդ նպատակով կազմակերպվում են ցուցահանդեսներ, զրույց-զեկուցումներ, գիտական կոնֆերանսներ, նրանք պայքարում են ուսման և աշխատանքի առաջավոր դառնալու համար:

«Փարոսի» էջերում պատշաճ տեղ են գրավում սովետական իշխանության տարիներին շրջանի կյանքում տեղի ունեցած խոշոր վերափոխումները թվերի ու փաստերի համոզիչ լեզվով ընթերցողին ներկայացնող նյութերը:

Երկրորդ և երրորդ էջերի նյութերն ամփոփված են *Կոմերիտմիության III համագումարում Վ. Ի. Լենինի տված պատգամները դարձել են իրականություն* խորագրի տակ: Ստեփանավանի № 1 դպրոցի դիրեկտոր Հ. Տոնոյանը խոսում է այդ կրթական օջախի տված շրջանավարտների մասին, որոնք դարձել են անվանի գիտնականներ, մասնագետներ և սիրով աշխատում են ժողովրդական տնտեսության ու գիտության տարբեր բնագավառներում: Նա նշում է, որ իրենց մանկավարժական կոլեկտիվը պայքարում է իր սաներին ժամանակակից պահանջներին համապատասխան խոր ու կայուն գիտելիքներ տալու համար, հավատարիմ լենինյան այն պատգամին, թե «...մեր դպրոցը երիտասարդությանը պետք է տա գիտելիքների հիմունքներ, տա կոմունիստական տեսակետներ մշակելու հմտություն, պետք է նրանցից կրթված մարդիկ պատրաստի»:

Գյուլագարակի դպրոցի տեսական սեմինարի պրոպագանդիստ Խ. Հարությունյանը, որ կյանքի 21 տարիները նվիրել է մատաղ սերնդի ուսուցմանն ու դաստիարակությանը, հպարտությամբ է խոսում իր նախկին սաների մասին, որոնք դարձել են բարձրորակ մասնագետներ, անվանի մարդիկ: Նա իրավամբ եզրակացնում է, որ գլխավորը մարդու համար աշխատանքն է, կոմունիստական վերաբերմունքը դրա հանդեպ. ողջ գործունեության ընթացքում նա երբեք չի մոռանում, որ «կոմունիստ լինել,— ինչպես ասել է Լենինը,— նշանակում է կազմակերպել և միավորել ամբողջ աճող սերունդը, դաստիարակության և կարգապահության օրինակ տալ այդ պայքարում»:

Մի այլ հոդվածում ԼԿԵՄ շրջկոմի քարտուղարը հաղորդում է, որ շրջանի երիտասարդությունը խնամքով է նախապատրաստվում լենինյան համամիութենական ստուգարքին:

*Կոմունիզմը գիտելիքների գումար է*— այսպես է վերնագրել իր հոդվածը Կուրթանի սովխոզի կուսբյուրոյի քարտուղար Հ. Խառազյանը. նա բնաբան է ընտրել Լենինի իմաստուն պատգամը, որն ավելի քան պարտավորեցնող և այժմեական է հնչում մեր օրերում. «Երբ կոմունիստը մտովին անցկացրեց պարծենալ կոմունիզմով, հենվելով իր ստացած պատրաստի եզրակացությունների վրա, առանց ամենալուրջ, ամենադժվարին մեծ աշխատանք գործադրելու, առանց փաստերն ըմբռնելու, որոնց նա պարտավոր է քննադատորեն վերաբերվել, այդպիսի կոմունիստը շատ ցավալի կոմունիստ է»:

Հայտնի է, որ լենինյան կոոպերատիվ պլանը մի յուրօրինակ հեղափոխություն էր գյուղատնտեսության բնագավառում: Նորաստեղծ սովետական իշխանության առաջնահերթ խնդիրներից մեկն էր՝ նախկին մանր, քայքայված տնտեսությունների փոխարեն հիմնել խոշոր, մեքենայացված կոլեկտիվ տնտեսություններ: *46 տարի լենինյան կոոպերատիվ պլանով* (№ 122) վերտառությամբ, երկու էջի վրա թերթը զետեղել է շրջանում այդ պլանի իրագործումն արտացոլող նյութերը, որպես բնաբան ընտրելով Լենինի համապատասխան ցուցումներն ու ասույթները: Հոդվածագիրները նախկին արտելականներ են: Նրանք նկարագրում են իրենց գյուղերում հանրային տնտեսությունների աստիճանական ձևավորման ու հզորացման ընթացքը, վերհանում այն սոցիալական հեղաբեկումները, որոնք գյուղացուն պարգևեցին ունևոր ու երջանիկ կյանք:

1917 թ. ՍՄԿԿ անդամ Հ. Հարությունյանը, կոմերիտմիության վետերանների շրջխորհրդի նախագահ Մ. Վարդանյանը, Վարդաբլուրի կոլտնտեսության անդամ Ա. Գյուլզադյանը նոր սերնդին պատմում են, որ կոոպերացումը դարձավ գյուղացու միակ փրկությունը, փաստերով ցույց տալիս, թե 20—30-ական թվականների համեմատությամբ ինչպես անճանաչելիորեն փոխվել է գյուղը: Հոբարձի գյուղի կոլտնտեսության նախագահ Ս. Ղուկասյանը խոսում է իրենց գյուղի մարդկանց հոգեբանության մեջ տեղի ունեցած խոր բեկման մասին, ուրախությամբ նշում, որ մանր սեփականատիրական ձգտումները երկրորդ պլանի վրա են մղվել, «իմի» փոխարեն իշխող է դարձել «մերի» զգացումը: Թերթը հաճախ է անդրադառնում Լենինի այն խորիմաստ ասույթներին, որոնք պատմական կարճ ժամանակամիջոցում դարձել են իրականություն:

«Փարոսի» մայիսյան համարներից մեկում (№ 59) հանդես եկող պրոպագանդիստը, կուսկոմիտեի քարտուղարը, գործարանի դիրեկտորը, գյուղսովետի գործկոմի նախագահը ցույց են տալիս Իլյիչի ցուցումների դերը իրենց առօրյա գործունեության մեջ: Ելույթների վերնագրերի թվարկումն իսկ հեղինակների շոշափած հարցերի բազմազանության վկայությունն է— *Կոնկրետ և հասկանալի խոսքը տոգորող է, Անձնուրաց աշխատանքը վճռող գործոն է, Վեհ կոչումը պարտավորեցնում է, Աշխատավորը կառավարման ղեկի մոտ*:

Լենինյան գաղափարների կենսագործման բնագավառում շրջանը խոշոր հաջողությունների է հասել: Սակայն, պետք է ասել, որ թերթը դեռևս ինչպես հարկն է չի արտացոլում, լուսաբանում դրանք:

Ա. Գ. ՅԱՎՐՅԱՆ

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Պրոլետարական հեղափոխությունը և ռենեգատ Կաուցկին: *Եր., «Հայաստան» հրատ., 1969, 253 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Վերջին նամակները և հոդվածները: *Եր., «Հայաստան» հրատ., 1969, 125 էջ:*

*Ներկա ժողովածուում զետեղված են Վ. Ի. Լենինի ներկուսակցական հարցերին նվիրված նամակները և հոդվածները (23 դեկտեմբերի 1922—2 մարտի 1923 թ.):*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մարքսիզմի ծաղրանկարի և «Իմպերիալիստական էկոնոմիզմի» մասին: *Եր., «Հայաստան» հրատ., 1969, 120 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Դոնի և Հյուսիսային Կովկասի մասին: *Ռոստով, 1969, 507 էջ:*

*Այս ժողովածուում ամփոփված են Դոնին և Հյուսիսային Կովկասին վերաբերող Վ. Ի. Լենինի հոդվածները, նյութերը, հեռագրերը, գրությունները, բանաձևեր և այլ փաստաթղթեր:*

ԿԱՍՅԱՆԵՆԿՈ Վ. Ի.— Վ. Ի. Լենինը սովետական երկրի տնտեսական անկախության համար մղվող պայքարի գլուխ: *Մ., «Знание» հրատ., 1969, 40 էջ:*

ԿԱԼԻՆԻՆ Ա. Ֆ. և ՄԱՆԴԵԼ Ս. Զ.— Լենինը և Պետերբուրգի համալսարանը: *Լ., Լենհրատ, 1966, 271 էջ:*

*Հեղինակները ներկայացրել են Լենինի կյանքի՝ Պետերբուրգի համալսարանում քննություններ հանձնելու շրջանը, նրա կապերը համալսարանի առաջադեմ ուսանողական կազմակերպության հետ և այլն:*

ՌՈՄԱՆՈՎ Վ. Վ.— Վ. Ի. Լենինի պայքարը «դեմոկրատական ցենտրալիզմ» հակակուսակցական խմբի դեմ: *Մ., «Мысль» հրատ., 1969, 216 էջ:*

*Այստեղ ցույց է տրված, թե որքան անողոքաբար էր Լենինը պայքարում հիշյալ խմբի դեմ, քննադատում նրա ավանտյուրիստական, էսեռա-մենշևիկյան հայացքները:*

Ն. Կ. Կրուպսկայայի մանկավարժական հայացքները և գործունեությունը: *Մ., «Просвещение» հրատ., 1969, 400 էջ:*

*Ներկա աշխատությամբ հեղինակային կոլեկտիվն ընթերցողին է ներկայացրել Կրուպսկայայի հասարակական, մանկավարժական գործունեությունը:*

Պետրոպավլովյան բերդի կալանավորները: *Լենհրատ, 1969, 439 էջ:*

*Այս ժողովածուում զետեղված հոդվածները նվիրված են մինչև 1917 թ. փետրվարյան հեղափոխությունն այդտեղ կալանավորված ու տառապած գործիչներին— Ա. Ի. Ժելյաբովին, Ն. Ա. Մորոզովին, Վ. Ն. Ֆիգներին, Ա. Ի. Ուլյանովին, Ն. Է. Բաումանին, Մ. Գորկուն, Մ. Նալբանդյանին, Գ. Ա. Լոպատինին, Յ. Վ. Լենգնիկին և այլոց:*

ԻՈՖՖԵ Ա. Ե.— Սովետական Միության ինտերնացիոնալ, գիտական և կուլտուրական կապերը: *1928—1932: Մ., «Наука» հրատ., 1969, 200 էջ:*


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции. — Ереван-33
Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

*ՎՖ 03047 Պատվեր 119 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 12700: Գինը 25 կոպ.:*

*Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 20/II-1970 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյանի փող. № 28:*





## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԱՄՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՈՒԼՏՐԱՁԱՅՆԸ

*Երկաթբետոնե հավաքական սալիկները շոգեհարում են խցիկում, և բետոնն ամրանում է: Ինչպե՞ս որոշել՝ դրա ամրությունը հասե՞լ է նորմայով սահմանվածին, թե ոչ: Խցիկում շոգեհարելիս հնարավոր չէ այդ ստուգել որևէ գործիքով: Ահա թե ինչու սովետական ինժեներներ Ռ. Բոյկոն, Վ. Վասլավսկին, Մ. Օրդելին և Լ. Տրետյակովը որպես ամրության հսկիչ կիրառեցին ուլտրաձայնը, որի տարածման արագությունն անմիջական կապ ունի արտադրանքի ամրության հետ: Արդյունքը եղավ այն, որ սալիկների շոգեհարման ժամկետը կրճատվեց երկու ժամով:*

### ՆՈՐ ԿՑԱՆ

*Խոտ, ծղոտ և գյուղատնտեսական այլ բեռներ փոխադրելու համար «Ռոստսելմաշ» գործարանը թողարկել է* ТПС—6 *մակնիշի տրակտորային ունիվերսալ կցանք, որի բեռնատարողությունը 6 տոննա է: Ագրեգատի արտադրողականությունը մեկ ժամում 26 տոննա-կիլոմետր է: Այսպիսի մեկ մեքենան տալիս է տարեկան 7300 ռուբլի օգուտ:*

### D ՍՈՒՊԵՐՎԻՏԱՄԻՆԸ

*Պարզվել է, որ ոսկրային հիվանդությունների և ռախիտի դեմ պրոֆիլակտիկ միջոց է ոչ թե ինքը՝* D *վիտամինը, այլ այն, ինչի փոխարկվում է վիտամինը օրգանիզմում, այսինքն՝ նրա ակտիվ ածանցյալները: Դրանց գոյության մասին հայտնի է դեռևս 1964 թվականից: Սակայն մաքուր վիճակում ակտիվ ածանցյալներ ստանալու փորձերն անհաջող են անցել: Միայն վերջերս Վիսկոնսի համալսարանի մի խումբ գիտնականների հաջողվեց խոճկորի արյունից զատել վիտամինի ակտիվ ածանցյալը: Ոսկրային հիվանդությունները բուժելիս այն 40 տոկոսով ավելի ներգործուն է, քան ինքը՝* D *վիտամինը: Հույս կա, որ դրանով հնարավոր կլինի բուժել հատկապես այն հիվանդներին, որոնք չեն ընդունում* D *վիտամինը: Մոտ ժամանակներս կկատարվեն առաջին թերապևտիկ փորձարկումները:*

### ՋՈՒՐԸ ԼԱՎԱԳՈՒՅՆ ՄԵԿՈՒՍԻՉ

*Ժամանակակից բարձրավոլտ կաբելներում մինչև օրս օգտագործվող մեկուսիչ յուղը, որը հրաշալի է կատարում իր դերը, կարելի է փոխարինել ջրով: Ճիշտ է, դրա համար անհրաժեշտ է փոխել կաբելի կառուցվածքը, բայց այդ լրացուցիչ ծախսը փոխհատուցվում է նոր կառուցվածքի առավելությամբ: Կաբելի՝ պլաստմասսայից մեկուսիչով ծածկված երակագծերը տեղավորվում են պլաստմասսայից խողովակում, գծերի միջև եղած տարածությունը լցվում է թորած ջրով: Քանի որ ջրի էլեկտրանհաղորդունակությունը մի քանի անգամ բարձր է յուղից, երակագծերի միջև առաջացող էլեկտրական դաշտի լարվածությունը նույնքան անգամ ցածր է: Հետևաբար, կարելի է փոքրացնել կաբելի ընդհանուր տրամագիծը և երակագծերի միջև եղած տարածությունը, այսինքն՝ կաբելը պատրաստել ավելի էժան: Հունգարացի ինժեներների գյուտը մեծ հետաքրքրություն հարուցեց ամբողջ աշխարհում:*

### ՀԱՐԲՈՒԽԸ ՉԲՈՒԺԵԼ ԱՆՏԻԲԻՈՏԻԿՆԵՐՈՎ

*Աթենքի համալսարանի գիտնական Գ. Կ. Դայկոսի հետազոտությունից պարզվել է, որ անտիբիոտիկների նույնիսկ կարճատև օգտագործումից հիվանդի աղիքների ֆլորայում հայտնվում են բակտերիաների շտամներ, որոնք անզգայելի են կայուն անտիբիոտիկների նկատմամբ. հիվանդն ակամա դառնում է այդպիսի բակտերիաների սկզբնաղբյուր: Իսկ ինչպես հայտնի է, նման դեպքերում անվնաս բակտերիաները փոխարկվում են, դառնում ախտածին: Այս փաստը մեկ անգամ ևս հաստատում է, որ թեթև հիվանդություններ բուժելիս ցանկալի չէ անտիբիոտիկների օգտագործումը:*